Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

4 ԱՊՐԻԼ · 1965
ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 44-րդ ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
**«Ленинян угиов»-теоретический и политический журнал ЦК КП Армении**

## Բովանդակություն



### Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԾՆՆԴՅԱՆ 95-ԱՄՅԱԿԸ



### ՀՈԴՎԱԾՆԵՐ



### ՆՇԱՆԱՎՈՐ ՏԱՐԵԹՎԵՐ



### ԳԻՏՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԿՅԱՆՔԸ



### ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ



### ՕՐՎԱ ՀՈԳՍԵՐ



---

# Содержание

### 95-летие со дня рождения В. И. Ленина



### Статьи



### Знаменательные даты



### Наука и жизнь



### Критика и библиография



### Заботы дня



---



# Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԾՆՆԴՅԱՆ 95-ԱՄՅԱԿԸ

## ՌԵՎՈԼՅՈՒՑԻՈՆ ՄՏՔԻ ՈՒ ԳՈՐԾԻ ՏԻՏԱՆԸ

Իր կյանքի բոլոր ակնթարթներում Լենինն ամբողջապես մարտի մեջ է: Նրա բոլոր խոհերն անբաժանելի են այն ամենից, ինչ նա, որպես բանակի կորավար, մարտի ժամանակ նկատել է դիտակետից, ինչ նպաստել է կռվի հաջողությանը: Նա, ինչպես ոչ մի մարդ, իր մեջ է մարմնացնում մարդկային պատմության ու գործունեության այն դարաշրջանը, որը կոչվում է պրոլետարական ռևոլյուցիա: Ո՛չ մի բան չի կարող նրան հեռու պահել ռևոլյուցիոն պայքարից. ո՛չ անձնական շահը, ո՛չ դադար առնելու կարիքը, ո՛չ էլ միտքը՝ հանուն մտքի: Նա աներեր է ու անսասան: Այս է նրա ուժի ու մարմնացրած գործի հաղթության աղբյուրը:

Մտքի ամբողջ պինապահեստը՝ արվեստը, գրականությունը, գիտությունը՝ ամեն ինչ, նույնիսկ մարդու ամենատարերային ավյունը, նրա ենթագիտակցականի խորքերը, մինչև անգամ պատրանքները, նա մոբիլիզացնում է գործողության համար: Պայքարն օրենք է նրա համար և իր կյանքի կոչումը: Գործողության այնպիսի մի վարպետ, ինչպիսին Լենինն է, ձուլվում է հասարակական կյանքի օրենքներին, նրա ռիթմին և նրա պոռթկումին, որն առաջ է մղում ու գոտեպնդում մարդկության հարատև ու վերընթաց երթը:

Մեր դարաշրջանի մեծագույն հանճարին՝ Լենինին տրված Ռոմեն Ռոլանի սույն ճշմարտացի ու դիպուկ գնահատականը կարիք ունի մի էական լրացման: Լենինին՝ այդ անկրկնելի հեղափոխականին հատուկ գործնականության արմատները իրենց սնունդն էին առնում նրա խորագույն մտքի ակունքներից: Ո՛չ միայն պրոլետարական ռևոլյուցիայի բացառիկ ստրատեգն ու տակտիկն էր նա, այլև XX դարի **ամենահամապարփակ մտածողներից** մեկը: Նրա հարուստ գործունեությունը կարմանալի ներդաշնակությամբ միշտ էլ ներհյուսվել է հարազատ պարտիայի փառավոր պայքարին, պայքար, որը պսակվեց սոցիալիզմի համաշխարհային հաղթանակներով: Լենինը պարտիայով էր անպարտելի, լենինյան անմար ջահը ուղենիշ փարոսն է պարտիայի:

Այո՛, հանձին Լենինի ռուսական և միջազգային պրոլետարիատը, ինչպես և ամբողջ աշխարհի կեղեքված մարդկությունը գտան իրենց անմահ առաջնորդին և ուսուցչին: Եվ այսօր, երբ համայն պրոգրեսիվ մարդկությունը խոր երախտագիտությամբ նշում է մեծ Լենինի ծննդյան 95-ամյակը, մի անգամ ևս մեր առջև հառնում են նրա այնքան հմայիչ կերպարը և նրա կոփած ՍՄԿՊ-ի ղեկավարությամբ ձեռք բերված դարակազմիկ նվաճումները: Լենինի անմահու-

թյան հիմքը մեր երկրում շահագործողական հասարակության կործանումը և
նոր, ազատ հանրակարգի ստեղծումն է:

Դժբախտաբար Սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի հաղթանակից հետո
Իլյիչին կարճ ժամանակ վիճակվեց անմիջականորեն կանգնելու նոր, սովե-
տական պետության ղեկի մոտ. ընդամենը վեց ռազմալի, սովի ու կրկանքների
դժվարին տարիներում նա կարողացավ պարտիայի ու ժողովրդի վիթխարի
ջանքերի լարումով ստեղծել նորոգ կյանքի ղեկավարման ու կառավարման
գրեթե **բոլոր հիմնական** ձևերը: Ավելին, նրա մահից հետո առ այսօր սոցիա-
լիստական լագերի մեջ մտնող յուրաքանչյուր երկրի քաղաքական, սոցիալ-
տնտեսական և մյուս մարզերում, կյանքը վերակառուցվում է մեծ Լենինի գա-
ղափարների ազդեցության ներքո, նրա մտահղացումներին համապատասխան,
նրա ոգով: Լենինյան վեհ իդեաների կենսագործմամբ, նրա գործունեության
ոճի կիրառմամբ է այսօր մեր պարտիան կանգնել նոր կյանքի ղեկի մոտ:
ՍՄԿՊ-ի նոր ծրագիրը մեծ Լենինի գաղափարների անմիջական շարունակու-
թյունն է ու կարգացումը՝ պատմական նոր ժամանակաշրջանում:

Հիրավի, այսօր ամենուր Լենինի հանճարի կնիքն են կրում բուրժուական
կարգերի դեմ ծառացած ժամանակակից միջազգային ռևոլյուցիոն և բանվո-
րական շարժումները, իմպերիալիզմի դեմ ուղղված ազգային-ազատագրական
ճակատամարտերը, արդի առաջավոր մտքի հոսանքների գաղափարամարտը՝
հակակոմունիզմի բոլոր նրբերանգների դեմ: Լենինյան մտքի ու գործի հաղթա-
կան դրոշն է ծածանվում այսօր մարդկության մեկ երրորդի սոցիալիստական
անսասան երկրների վրա: Մեծ առաջնորդի անմահության մեծագույն հուշար-
ձանը սոցիալիստական երկրների կուռ միությունն է:

Տակավին երիտասարդ Լենինը խորապես յուրացնելով մարքսիզմի այն
միտքը, թե գաղափարներն ուժ են ստանում, երբ նրանք տիրապետում են
մասսաներին և հետևողականորեն ձգտելով աշխարհը **կոմունիստորեն վերա-
փոխելու** վեհ նպատակի կենսագործմանը, նա ստեղծեց, կոփեց ու մարզեց
մեծ գաղափարների խիզախ իրագործողին՝ Ռուսաստանի բոլշևիկների պար-
տիային: Եվ այդ պարտիայի միջոցով, նրա շնորհիվ նա ապահովեց սոցիա-
լիստական ռևոլյուցիայի հաղթանակը Ռուսաստանում: Լենինին ենք պար-
տական իմպերիալիզմի և սոցիալիստական ռևոլյուցիայի դարաշրջանի հասա-
րակական բոլոր կենսական հարցերի գիտական մշակումն ու ճշմարտացի
լուծումը: Կիրառելով ու կարգացնելով մարքսիզմը նոր դարաշրջանում, նա հիմ-
նավոր և ճիշտ ելք ցույց տվեց ռևոլյուցիոն պրոլետարիատին:

Երկարամյա և հետևողական պայքար մղելով II Ինտերնացիոնալի ավգ-
յան ախոռներում ծվարած օպորտունիստների դեմ, մերկացնելով նրանց սոցիալ-
շովինիզմի նողկալի բուրժուական էությունը, Լենինը միջազգային մասշտաբով
կատաղի մարտեր վարեց հանուն մարքսիզմի անաղարտության:

Ինչպես մինչև սոցիալիստական մեծ ռևոլյուցիան, նույնպես և նրան հա-
ջորդող շինարարության տարիներին, Վ. Ի. Լենինը հոյակապ օրինակներ է
տվել այն բանի, թե ինչ է ստեղծագործական մարքսիզմը, որի կատարյալ
մարմնացումն ու կարգացումը գտնում ենք նրա բազմաթիվ երկերում, որոնք
կազմում են ամբողջ միջազգային ռևոլյուցիոն մտքի ամենաթանկագին գանձը:
Իրականում 50-ից ավելի հատոր կազմող իր վիթխարի ժառանգությամբ,
պրոլետարիատի անմահ առաջնորդն ամբողջ մարդկությանը ցույց տվեց ռևո-
լյուցիոն մարքսիզմի վեհությունը, ճշմարտացիությունը և անպարտելիությունը:



Խոսքի ու գործի անխզելի միասնությամբ Վ. Ի. Լենինը էականորեն տար-
բերվում է նախորդ դարաշրջաններում երբևէ հանդես եկած պատմական խո-
շոր գործիչներից: Անձնական անբասիր կյանքով, անօրինակ աշխատասիրու-
թյամբ, բացառիկ համեստությամբ, բարեկամների նկատմամբ ցուցաբերած
ջերմ հոգատարությամբ, մտքի տիտանական ճկունությամբ և էրուդիցիայով
Լենինն իրոք մասսաների անգերազանց առաջնորդ էր: Նրա բազում խոհերի ու
գործերի բոլոր թելերը մեկ տանում են միլիոնավոր և հարյուր միլիոնավոր աշ-
խատավորների հոգիների ու սրտերի խորքերը: Մարդկանց՝ նրա նկատմամբ
տածած բուռն համակրանքի ու ջերմ սիրո գաղտնիքն այն է, որ նա, ինչպես
ոչ ոք, իր արծվենի սրատեսությամբ կարողանում էր ճիշտ պահին նկատել,
ընկալել և գիտականորեն հիմնավորել ժամանակի առաջընթաց նկրտումները
և ապահովել դրանց իրագործումը:

Իր առօրյա գործունեության ընթացքում նա համախոհներին անդուլ սո-
վորեցնում էր մասսաներին ղեկավարելու նրբագույն արվեստը: Ղեկավարել,—
ասում էր նա,— նշանակում է համառորեն պրոպագանդել ու կենսագործել այն
գաղափարները, որոնք բխում են իրականության հաճախ ներթաքուն, բայց
առաջավոր շարժառիթներից, որոնք համապատասխանում են բանվոր դա-
սակարգի շահերին ու գաղափարական ձգտումներին: Ղեկավարել, նշանա-
կում է հաշվի առնել բոլոր «մանրուքները», համոզիչ պատասխան տալ այ-
րող հարցերին, կշռադատել հուսալի ազդակները, ստուգել կատարման ըն-
թացքը, ստուգել մի քանի անգամ:

Եվ այսպես, օր-օրի, տարիներ շարունակ կոփելով ու դաստիարակելով
Ռուսաստանի ռևոլյուցիոն պրոլետարիատին, ինքը՝ ռևոլյուցիայի քաջահմուտ
ստրատեգ ու բացառիկ կազմակերպիչ Լենինը, վարում էր պատմության երթը
սոցիալիզմի հաղթության ուղիով:

Խորապես ուսումնասիրելով քսաներորդ դարի կապիտալիզմի նոր փուլը,
Վ. Ի. Լենինն իր **Իմպերիալիզմը որպես կապիտալիզմի բարձրագույն ստադիա**
ծրագրային նշանակություն ունեցող երկում քանդեց կապիտալիզմի ներքին
հակամարտությունների կծիկը և գիտականորեն հիմնավորեց, որ մարդկու-
թյունը կանգնած է սոցիալիզմի նախադռանը: Գլխավորելով Ռուսաստանի մի-
լիոնավոր կեղեքվածների կռիվը ցարիզմի և միջազգային իմպերիալիզմի դեմ՝
Լենինը պատմական հաղթանակ տարավ: Բայց, միաժամանակ, նա ուսուցա-
նում էր, որ իմպերիալիզմի պայմաններում միջազգային պրոլետարիատի
առաջ ծառացած են մեծ դժվարություններ: Իմպերիալիզմի էպոխայի բազմա-
բարդ իրադարձությունների ու բախումների խոր ըմբռնումից ելնելով, Լենինը
վարպետորեն մշակեց և գիտականորեն հիմնավորեց մեր պարտիայի ազգային
քաղաքականության ճշմարտացի սկզբունքները, որոնց կիրառմամբ միայն լե-
նինյաններին հաջողվեց իրականում լուծել ազգային հարցի գորդյան հանգույցը:
Սոցիալիստական ազգերի բարգավաճումը ինտերնացիոնալիզմի հիմքերի վրա՝
դրա լավագույն ապացույցն է: Իր «արագաթռիչ մտքի ընթացքով անցնելով ան-
հուն ասպարեզներով», Լենինը սքանչելիորեն վարեց Ռուսաստանի պրոլետա-
րիատի գլխավորած ցասումնալի մարտերը բռնակալության դեմ: Այդ իսկ մարտե-
րի օրինաչափությունների ու վերջնական ելքի տեսական հիմնավորումը տվեց նա՝
պարտիայի, ագրարային շարժման, պրոլետարիատի դիկտատուրայի ու ռևոլյու-
ցիոն դեմոկրատիայի, ազգային հարցի ու սովետների կառուցման բարդ պրոբ-
լեմների մշակմամբ: Իր բազմաբեղուն մտքի գանձերով նա հարստացրեց ու

զարգացրեց մարքսիզմը. և այն, ինչ նա մուծեց մարդկային մտքի գանձարանը՝
դարեր կապրի:

***

Իր տիտանական մտքի և գործնական պայքարի բոլոր միջոցներով Վ. Ի.
Լենինը ծառացավ իմպերիալիզմի դարաշրջանում բանվոր դասակարգի քաղաքա-
կան այլասերման դեմ: Նա նշում էր, որ միջազգային սոցիալ-դեմոկրատիայի աջ
թևը, հանդես գալով որպես կավթողական հայրենիքի պաշտպան, բացահայտորեն
դավաճանում է պրոլետարիատին, օգնում իմպերիալիստներին՝ կեղեքելու ճնշ-
ված ժողովուրդներին, վերաբաժանելու աշխարհը: Առաջին համաշխարհային
պատերազմը հռչակելով որպես բացահայտ իմպերիալիստական սպանդ, մեր-
կացնելով գիշատիչ իմպերիալիզմի կերպարանքը, Լենինն ու նրա համա-
խոհները ազդարարում էին միակ ճշմարտությունը. պատերազմող բուրժուա-
զիան, որպեսզի վերաբաժանի աշխարհը, ձգտում է հիմարացնել և պառակտել
միջազգային պրոլետարիատին, մի ազգի վարձու ստրուկներին մյուս ազգի
վարձու ստրուկների դեմ հանելու միջոցով:

Իմպերիալիզմի, «սվինների դարում» Լենինի պարտիան ու նրա համախոհ-
ները միակ մարդիկ էին, որ առաջադրեցին և հետևողականորեն կիրառեցին
իրենց հումանիստական, գերազանցապես ազատարար և զաղութային կեղեք-
ված ժողովուրդների փրկության ելքը մատնանշող՝ ռեալիստական ծրագիրը:
Ճնշված ազգերի դեմոկրատական, արդարացի ընդվզումն ու դարավոր ցասու-
մը անհրաժեշտ է ուղղել կեղեքող ու նվաճողական ազգերի իշխողների դեմ:
Այսպիսին էր լենինյանների մատնանշած իրական ուղին, բոլոր ճնշվածներին
վերջնական ազատություն և բարօրություն խոստացող ճանապարհը:

Անխնա խարազանելով ցարական և միջազգային նվաճողների թալանչիա-
կան-անեքսիոնիստական քաղաքականությունը, պատռելով բոլոր կեղծ բարե-
գործների փարիսեցիական դիմակը՝ Լենինի զինակիցներն ու համախոհները իմ-
պերիալիստական առաջին պատերազմի ծանր տարիներին իրենց մատչելի
բոլոր միջոցներով պայքար ծավալեցին ճնշված ազգերի, այդ թվում և այնքա՜ն
տառապած մեր ժողովրդի ազատագրման համար: Կանգնելով ճնշված ազգե-
րի ինքնորոշման և ընդհուպ նրանց պետական անջատման իրավունքի մարք-
սիստական տեսակետին, Լենինը և նրա հայ զինակիցները գտնում էին, որ
հայ ժողովրդի ազատագրական բաղձանքները կարող են իրականանալ, օս-
մանյան բռնակալների, ցարական սատրապների նյութած դժոխքից հայերը
կարող են փրկվել միայն այն դեպքում, երբ աշխատավորությունը միահամուռ
ուժերով, կռթնած բարեկամ ռուսական պրոլետարիատի անպարտ բազուկին,
դիմադարձ լինի օտար և հայրենի բռնակալներին:

Հայաստանի լենինյանները, հետևողականորեն կիրառելով իրենց մեծ
ուսուցչի ճշմարիտ ցուցումները, հասարակական պայքարի բոլոր միջոցներով կո-
րավիգ եղան արևմտահայությանը՝ օսմանյան գերության լծից ազատագրվելուն:
Սակայն իմպերիալիստական մեծ տերությունների թողտվությամբ երիտթուր-
քական կառավարող ռեակցիոն կլիկը հրեշային դաժանությամբ իրականացրեց
արևմտահայության բնաջնջման իր ցեղասպան մտահղացումը: Երկար տարիներ
«երիտասարդ թուրքերի» հետ դաշն կռած դաշնակցության տակտիկայով վի-
ժեցին հայ ժողովրդի ազգային-ազատագրական ճիգերը. արևմտահայությունը



օսմանյան մարդակեր ռեժիմների, իմպերիալիստական տերությունների ոտքի
կոխան դարձավ: Հիսուն տարի առաջ, ճիշտ այս ամսին սկսվեց արևմտահա-
յերի անպատում ողբերգության վերջին գործողությունը՝ մեկ ու կես միլիոն
հայերի բնաջնջումը:

Հարազատ ժողովրդի ողբերգական կացությունն էր ցոլացնում վշտահար
Վ. Տերյանը, երբ գրում էր.

> Որտե՞ղ է խոցում այնպես չար ու խոր
> Սիրտը մարդկային դաշույնը բիրտ.
> Որտե՞ղ է հոգին այնպես վիրավոր,
> Եվ անպարտ երկիրն այնպես արյունոտ...

Ամայացան Արևմտյան Հայաստանի հայաբնակ նահանգները, ոչնչացվե-
ցին հայ ժողովրդի հանճարի հազարավոր կոթողները, և տեղահան արված աշ-
խատավորության բեկորներն անզոր ու անպաշտպան, իրենց գերեզմանը գտան
Ասիայի ավազուտներում: Երբ արդեն վաղուց բանը բանից անցել էր, անգ-
լիական իմպերիալիզմի ոչ անհայտ գայլերից մեկը՝ Լլոյդ Ջորջը ցինիկորեն
խոստովանում էր, թե իրենց թողտվությամբ հայ ժողովուրդը մի շարք տարի-
ների ընթացքում մորթվել է օսմանյան վայրագ բռնակալների կողմից. «Մենք
հնարավորություն տվինք թուրքերին այդ հանցագործությունը կատարելու՝ Հա-
յաստանը մատուցելու մեր հաղթական կոհասեղանին», գրել է նա:

Հայ ժողովրդի շահերը ստորադասելով իմպերիալիզմի մարդակուլ ձգտումին
ու դրա վրա կառուցելով իր սին պատրանքը, դաշնակցությունը և հայ հասարա-
կական բուրժուական մյուս հոսանքների ղեկավարները երկար տարիներ
փաստորեն խաղալիք դարձան իմպերիալիստների ձեռքին: Եվ, մինչև վերջ էլ
ոչինչ չհասկանալով իմպերիալիզմի դարաշրջանի դաժան օրենքներից, նրանք
ընթացան մեռնող կապիտալիզմի քաղաքական կուրսը խնկարկելու ճանապար-
հով: Տանուլ տալով հայ դատը, դաշնակցությունը հանդես եկավ որպես միջազ-
գային իմպերիալիզմի անսքող կամակատար: Եվ բնավ պատահական չէ, որ
մինչև օրս էլ այդ մի խումբ բախտախնդիրները, Արևմուտքի հետնախորշե-
րում ծվարած, իրենց գոյությունն են քարշ տալիս, սերտորեն համագործակ-
ցելով ՆԱՏՕ-ի տնօրենների և հակակոմունիզմի պրոպագանդայի սայլին լծված
ռեակցիոն ուժերի հետ:

Պատմական այն պահին, երբ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևո-
լյուցիան ի լուր ամբողջ աշխարհի, իր պատմական մեծ ծրագրերն էր հրապա-
րակում, հատուկ դեկրետով սովետական Ռուսաստանը հանդես եկավ ի
պաշտպանություն արևմտահայության արդար իրավունքի՝ ճանաչելով նրա քա-
ղաքական ազատությունը և նրա տերիտորիաների անձեռնմխելիությունը: Բայց
իմպերիալիստական խմբավորումները, ձգտելով բոլոր կողմերից պաշարել
միջազգային ռևոլյուցիայի միջնաբերդը՝ այն կործանելու նպատակով, խափա-
նեցին արևմտահայության վերաբերյալ սովետական դեկրետի կենսագործումը:
Թուրքական անողոք յաթաղանից փրկված մի քանի հարյուր հազար հայերը
կյանք ու օթևան գտան Ռուսաստանում և Անդրկովկասում: Լենինյան կենսա-
հորդ արևով վերածնված Հայաստանը դարձավ նրանց վերջնական հանգըր-
վանը:

Ռևոլյուցիոն ճանապարհով տապալելով դաշնակների անարգ լուծը, հայ
ժողովուրդը հասարակական և ազգային ազատագրումն ապրեց շնորհիվ սո-
վետական Ռուսաստանի եղբայրական անշահախնդիր օգնության: Այժմ, երբ

քառասունչորս տարի է անցել սովետական կարգերի հաստատման օրից, մեր երկիրը և երբեմնի հյուծված ու բազմաչարչար հայ ժողովուրդը անճանաչելի են դարձել: Անցած քառասունչորս տարիները դարձան հայ ժողովրդի սոցիալ-տնտեսական ու կուլտուրական վերածննդի աննախընթաց տարիներ: Եվ այսօր, որպես ՍՍՌՄ մեծ ընտանիքի հավասարազոր անդամ, եղբայրական մյուս ռեսպուբլիկաների հետ միասին, վերածնված հայ ժողովուրդն իր պայքարով նվաճած երջանիկ բախտն է կռում ու կոփում: Վայելելով սովետական կարգերի անգնահատելի բարիքները, Հայաստանի աշխատավորությունն իր երկիրը դարձրել է անառիկ ու ծաղկած մի բաստիոն՝ Արևելքի շեմին, իր կարգացմամբ, բարգավաճմամբ ու կուլտուրայով անհամեմատ ետ թողնելով հարևան Իրանը, Թուրքիան:

Ընթանալով մեծ Լենինի պարտիայի գծով, Հայաստանի աշխատավորությունը քառասունչորս տարում իր երկիրը դարձրեց ինդուստրիալ ու բարգավաճ մի ռեսպուբլիկա, որը վայելելով Սովետական Միության եղբայրական ժողովուրդների անկեղծ համակրանքն ու աջակցությունը, շարունակում է առաջ ընթանալ դեպի կոմունիզմի բարձունքները: Ահա թե ինչու հայ ժողովրդի մեծատաղանդ պոետ Եղիշե Չարենցը, դիմելով իր ժողովրդին՝ հպարտությամբ ասում էր.

Քեզ տրված է արդ այն ամենը, որ
Կարող է ըղձալ ժողովուրդ մի վեհ.
Տրված է երկիր մի արևավոր,
Տրված է ուղի, որ տանում է վեր.—
Դու մասն ես անխախտ նոր աշխարհի,
Որ բերդն է անպարտ լենինյան դարի:

Ստեղծագործ հայ ժողովրդի անկեղծ ապրումներն էր արտահայտում մեծ պոետը, երբ իր ժողովրդի բարօրության ու կարգացման առհավատչյան նոր աշխարհի ժողովուրդների բարեկամության մեջ էր տեսնում: Առհասարակ պետք է նշել, որ հայ ժողովրդի բազմաթիվ լավագույն կավակները, հանձինս լենինյանների, ժողովրդին պատած ցավի թոթափման ռեալ ուղին համարում էին մեր աշխատավորության մաքառումների և ազատագրական ճիգերի համաձուլումը Ռուսաստանի առաջավոր պրոլետարիատի մեծագործ և աշխարհափոխ պայքարին, որի ղեկի մոտ կանգնած էր մեծ Լենինը: Այն, ինչ երեկ ցնորք էր թվում հայ ժողովրդին, լենինյան արևի ճառագումով դարձավ կյանք ու հաղթանակ: Եվ այդ հաղթանակը՝ մեր ժողովուրդն ընդունեց գրկաբաց, իր սրտում ունենալով մեծ Լենինի անմար կերպարը:

Հիրավի, հայ ժողովրդի, ինչպես և եղբայրական շատ ժողովուրդների համար լենինյան էպոխան փրկության դար հանդիսացավ: Այդ դարում է, որ առնացավ սոցիալիստական հայ ազգը և փարթամորեն աճելով սովետական արևի տակ, ամբողջ աշխարհին ցուցադրեց իր հանճարի փայլատակումները: Զուլվելով լենինյան դարի սոցիալիստական ազգերի եղբայրության երթին, մեկընդմիշտ ազատագրված հայ ժողովուրդը այսօր հասել է կոմունիզմի նախադռանը: Եվ այժմ սրտի խոր կսկիծով նշելով 50 տարի առաջ մեր ժողովրդի հետ պատահած ահավոր եղեռնը, մի անգամ ևս պետք է ասել, որ այժմ, ինչպես և երբեք, ոչ մի ժողովուրդ չի կարող վերջնականապես ազատագրվել սոցիալական և ազգային կեղեքումից, եթե չի ընթանում սոցիալիզմի և պրոլետարական ինտերնացիոնալիզմի ճանապարհով:



Սովետական կարգերի շնորհիվ Հայաստանը դառնալով առաջավոր սոցիալիստական ռեսպուբլիկա, հնարավորություն ստացավ մայր հողի վրա ընդունելու կապիտալիստական աշխարհի օտար երկրներում դեգերող չարքաշ հայ աշխատավորներին: Սովետական հայրենիք եկած երկու հարյուր հազար մեր եղբայրներն ու քույրերը այսօր ունեն լուսավոր հայրենիք, մշտական աշխատանք և երջանիկ կյանք: Քաղաքում թե գյուղում, արդյունաբերության բազմաթիվ ճյուղերում, գյուղատնտեսության առաջավորների շարքերում, կուլտուրայի հարյուրավոր օջախներում աչքի են ընկնում մեր հայրենադարձ քաղաքացիներն իրենց արդյունավետ աշխատանքով և սովետական կարգերին անսահման նվիրվածությամբ:

Առաջիկա տարիներին ևս Սովետական Հայաստանի կառավարությունը շարունակելու է հայրենադարձության իր արդյունավետ գործունեությունը: Հայրենի հողի վրա տուն և աշխատանք կգտնեն սփյուռքահայ այն բոլոր աշխատավորները, որոնք վեր են դասում վերածնված սովետական հայրենիքի կենսական շահերը ամեն կարգի այլ նկատառումներից: Հայրենադարձների քարավանները ջերմ և պատշաճ ընդունելություն են գտնում Սովետական Հայաստանի բոլոր կազմակերպությունների և աշխատավորական մասսաների կողմից: Դաշնակցության հայրենադավ ջանքերը՝ կասեցնելու սփյուռքահայ աշխատավոր զանգվածների հայրենադարձության ձգտումները, սկզբից ևեթ ձախորդության են դատապարտված:

Մեծ Լենինի պատգամները Սովետական Հայաստանի աշխատավորները հաջողությամբ կենսագործում են մեր կյանքի բոլոր մարզերում, իրենց ստեղծագործ և անդուլ աշխատանքով: Արդյունաբերության նորանոր ճյուղերի և գործարանների ու ֆաբրիկաների ցանցի ընդարձակումով, գյուղատնտեսության ինտենսիվ կարգացմամբ, վերածնված Սովետական Հայաստանը ընթանում է ՍՍՌՄ եղբայրական ժողովուրդների առաջավորների շարքերում: Տնտեսական և կուլտուրական մեր հոյակապ նվաճումները լավագույն ապացույցն են այն բանի, որ միայն լենինյան կենսահաստատ դրոշին փարելով, հայ ժողովուրդը կարողացավ գտնել իր վերջնական ազատագրության ելքը:

***

Լենինն անդուլ սովորեցնում էր, որ կախյալ և իրավազուրկ ազգերի հոգում դարերով կուտակվել է անվստահություն ու ցասում մեծապետական և իրենց ճնշող ազգերի դեմ: Մեր նպատակն է՝ լիովին հաղթահարել այդ անվստահությունը, որը մնացել է կալվածատերերի ու կապիտալիստների ճնշումից: Մենք,— ասում է Լենինը,— ազգային թշնամանքի, ազգային բախումների և ազգային մեկուսացումների հակառակորդ ենք, մենք **միջազգայնական, ինտերնացիոնալիստներ ենք:**

Ահա լենինյան այս սկզբունքների վրա խարսխելով սովետական բոլոր ժողովուրդների եղբայրական դաշնադրությունը, ՍՍՌՄ-ը վիթխարի հաջողությունների է հասել:

Շարունակելով և կարգացնելով Լենինի սկսած մեծ գործը, Սովետական Միության կոմունիստական պարտիան այժմ միջազգային կոմունիստական հզոր բանակի հետ միասին ընթանում է ողջ պրոգրեսիվ մարդկության ավանգարդում՝ պատվով կատարելով ինտերնացիոնալիստական իր պարտքը: Ամբողջ աշխարհին

այժմ իր հայացքն է հառել Լենինի լայնածավալ հայրենիքին, որի բազմազգ ժո-
ղովուրդները միահամուռ ուժերով շարունակում են լենինյան մեծ կառուցումնե-
րի պատմական գործը: Նրանք մեծագույն ջանքերով կերտում են կոմունիզմի
նյութատեխնիկական բազան. խորապես գիտակցելով այդ բազայի ստեղծման
դժվարությունները, ամեն ինչ անում են իրագործելու համար լենինյան այն
պատգամը, որն ասում է. վերջին հաշվով աշխատանքի արտադրողականու-
թյամբ է որոշվելու պատմական ճակատամարտը կապիտալիզմի և սոցիալիզմի
միջև: Վերջինս պետք է անհամեմատ առաջ անցնի կապիտալիզմից աշխատան-
քի գիտական կազմակերպմամբ, արտադրողականության բարձրացմամբ և մաս-
սաների կենսամակարդակով:

Սովետական ողջ ժողովուրդը՝ մեկ մարդու պես, այսօր հետևողականորեն
իրագործում է ՍՄԿՊ XX և XXII համագումարների պատմական որոշումները,
որպեսզի մեր երկրում ավելի շուտ ավարտվի հասարակական նոր հարաբե-
րությունների կատարելագործման պրոցեսը, որպեսզի ավելի դյուրին դառնա
նոր մարդու երկունքը: Միլիոնավոր ու տասնյակ միլիոնավոր կոմունիստական
աշխատանքի հերոսները ոչ մի ջանք չեն խնայում, որպեսզի առաջիկա տարի-
ներին մեր կյանքի բոլոր բնագավառներում ամենուր իշխի կոմունիստական,
միայն կոմունիստական սկզբունքը: Մեր աշխատավորները խորապես գիտակ-
ցում են մեծ Լենինի այն պատգամը, թե այժմ Սովետական Միությունը մարդ-
կության բախտի վրա կարող է ներգործել առավելապես իր տնտեսական նվա-
ճումներով: Անձնուրացորեն կենսագործելով ՍՄԿՊ նոր ծրագրի պատմական
դիրեկտիվները, մեր ժողովուրդը մեծագույն հաջողությունների է հասել կապի-
տալիզմի հետ մղվող խաղաղ պայքարում: Մեր կյանքում չկա մի բնագավառ,
ուր մարմնացած չլինեն մեծ Լենինի գաղափարները:

Լենինի մահից հետո շատ բան է փոխվել աշխարհում: Ընթանալով լենին-
յան ուղիով՝ մեր պարտիան մեծ հաղթանակներ է տարել ներքին և արտաքին
քաղաքականության ասպարեզներում: Այժմ սոցիալիստական համաշխարհային
սիստեմը հաջողությամբ զարգանում, ամրապնդվում և դառնում է մարդկային
հասարակության առաջադիմության **որոշիչ գործոնը:** Այսօր ոչ թե իմպերիա-
լիզմը, այլ **սոցիալիզմն է որոշում համաշխարհային զարգացման գլխավոր ուղ-
ղությունը:** Ազգային ազատագրական շարժման հուժկու հարվածների տակ **փուլ
է եկել գաղութային սիստեմը:** Ամերիկյան իմպերիալիզմի և ռեակցիայի հա-
մաշխարհային ռեակցիայի ջանքերը՝ կասեցնելու սոցիալիզմի առաջընթացը,
ձախողման են դատապարտված:

Լենինյանների միջազգային բանակն այսօր հզոր է և անպարտելի, այնքան
հզոր, որ ի վիճակի է ժողովուրդների խաղաղասեր ձգտումների կուգորդ-
մամբ կանխելու պատերազմի վտանգը: Այսօր սոցիալիստական լագերի հզո-
րության հետ հաշվի է նստում ջրածնային և ատոմային զենքերով զինված գա-
ռամյալ իմպերիալիզմը: Դառնալով համաշխարհային որոշիչ ուժ, կոմունիզմը
միջազգային մասշտաբով սերմանում է այն գաղափարները, որոնց համար իր
կյանքը տվեց մեծ Լենինը:

Յուրաքանչյուր գործարանում և ֆաբրիկայում, ամեն մի կոլտնտեսու-
թյունում ու սովխոզում, սովետական բոլոր հիմնարկություններում աճում ու
բարձրանում է սովետական մի նոր սերունդ, աշխատանքի հերոսների, տեխնի-
կայի և գիտության առաջավորների, տիեզերք ու օվկիանոս նվաճողների մի
փառավոր սերունդ: Հենված առաջավոր գիտության ու տեխնիկայի նորագույն



նվաճումների վրա, Սովետական Միության կոմունիստական պարտիան հետե-
վողականորեն առաջնորդում է ժողովրդին լենինյան մեծ ծրագրի կենսագործ-
ման ուղիներով:

Այդ ծրագիրը պահանջում է մեկնից լենինյաններ լինել ո՛չ միայն խոսքով,
այլև գործով: Իսկ այդ նշանակում է, որ սովետական քաղաքացին այժմ պետք
է հատուկ ուշադրություն դարձնի արտադրանքի որակի վրա, բարեխղճորեն
կատարելով իր պլանները՝ այնպես անի, որ **լավագույնը լինի այն ամենը, ինչ
սովետական է:** Ո՛չ միայն ժամանակին և բարձր որակով կատարել պլանները,
այլև հասնել այն բանին, որ գնալով իջնի արտադրանքի միավորի ինքնար-
ժեքը: Առանց աշխատանքի արտադրողականության բարձրացման, ինքնար-
ժեքի իջեցման, առանց առավելագույն խնայողության և պլանայնության՝ հնա-
րավոր չէ բարձրացնել մասսաների կենսամակարդակը: Հիրավի, կոմունիզմի
շինարարության մեջ ներգրավելով բոլոր աշխատավոր մասսաներին, պարտիան
այսօր իր առջև դրված խնդիրները լուծում է լենինաբար՝ լուծում է մասսա-
ների ջանքերով, նրանց գիտակցականությամբ և մասնակցությամբ:

Հաջողությամբ առաջ մղելով արդյունաբերական և բնակարանային շինա-
րարությունը, պարտիան շարունակում է մշակել գյուղատնտեսության բարդ
հարցերի արդյունավետ լուծման եղանակներ: Պարտիայի նպատակն է՝ մոտակա
տարիներին վերջնականապես հաղթահարել գյուղատնտեսության որոշ ճյու-
ղերի ետ մնալը և մի շարք արմատական միջոցառումների կենսագործմամբ
ապահովել ամբողջ գյուղատնտեսության ինտենսիվ զարգացումը:

Հաղթահարելով անձի պաշտամունքի բացասական հետևանքները կյանքի
տարբեր բնագավառներում, պարտիան այսօր հետևողականորեն կիրառում է
աշխատանքի լենինյան ոճը, որը բնորոշվում է առավելագույն գործնականու-
թյամբ, զարգացման առաջավոր տենդենցներին ընդառաջելով, տնտեսական և
կուլտուրական շինարարության կարևորագույն պրոբլեմների լուծմամբ, ինչպես
և պարտիական-պետական կյանքին միլիոնավոր մասսաների հաղորդակից
անելով:

Լենինը մշտապես ուսուցում էր, որ կոմունիստական շարժման անպար-
տելիության նախապայմանը համայն աշխարհի ռևոլյուցիոն ուժերի անքակ-
տելի միասնությունն է, միասնություն, որը պետք է հիմնված լինի լիակատար
գաղափարայնության և սկզբունքայնության վրա: Կոմունիստները կոչված են
խստորեն հաշվի առնելու հասարակական կյանքի բոլոր փոփոխություն-
ները և ըստ այդմ մշակելու իրենց տակտիկան: Ոչ թե կառչել տեսության տա-
ռից կամ ֆորմուլայից, այլ մշտապես առաջնորդվել մարքսիզմի ոգով՝ դիալեկ-
տիկայով, իսկ կյանքի դիալեկտիկան,— ասում էր պրոլետարիատի մեծ ուսու-
ցիչը,— հաճախ ավելի խոր, ավելի բարդ և բազմակողմանի փոփոխություններ է
հրամցնում քաղաքական պարտիաներին, քան որևէ իմաստուն կարող է կռա-
հել: Կոմունիստական պարտիայի տակտիկայի հիմքում պետք է դրված լինի
դիալեկտիկայի իմացությունը և ոչ թե սերտած ֆորմուլաների կամ հնացած
դոգմաների շարահյուսությունը: Կարողանալ կիրառել մարքսիզմը սոցիալա-
կան շարժման **օրվա պահանջների** համեմատ. ահա թե որն է լենինյան պար-
տիայի գործունեության բնորոշ գիծը: Մերկացնելով ռևոլյուցիոն ֆրազաբա-
նության վտանգավորությունը կոմունիզմի համար, մեծ Լենինը ուսուցում էր
իր համախոհներին՝ համառ պայքար մղել ռևոլյուցիոն ֆրազաների դեմ և կո-
մունիստական շարժումը առաջ մղել միայն և միայն պատմական կոնկրետ սի-

տուացիայի և սոցիալական ուժերի փոխհարաբերության ճշգրիտ հաշվառման հիման վրա:

Ելնելով լենինյան այս ըմբռնումից՝ ՍՄԿՊ-ն անում է ամեն ինչ համաշխարհային ռևոլյուցիոն շարժման միասնությունն ապահովելու և խաղաղության գործը ամրապնդելու համար:

Հավատարիմ մնալով մեծ առաջնորդի ուսմունքի ոգուն, մեր պարտիան ջանք չի խնայում խաղաղության հաղթության համար, քաջ գիտակցելով, որ աշխատավորության կենսամակարդակի բարձրացումը, մթերքների առատության ստեղծումը, ամբողջ ժողովրդի կուլտուր-կենցաղային պայմանների արմատական բարելավումը հնարավոր են միայն խաղաղության դեպքում: Այն հանգամանքը, որ անցած ժամանակաշրջանում մեր ժողովուրդը ձեռք է բերել մեծ նվաճումներ, չի կարող մեզ հանգստացնել դափնիների վրա: Կյանքը պահանջում է առաջ մղել կոմունիզմի վեհ շենքի կառուցումը, մի կառուցում, որը մեզնից պահանջում է ուժերի առավելագույն լարում, միջոցների մաքսիմում խնայողություն և առաջավոր գիտության ու տեխնիկայի նվաճումների համարձակ կիրառում:

Օրերս էր, որ լենինյան պարտիայի դաստիարակած խիզախ բազեներ Պ. Բելյաևը և Ա. Լեոնովը համարձակորեն ճեղքելով տիեզերքի անհունները, մի նոր, փառավոր էջ գրեցին մարդկային հանճարի երազանքների իրագործման ոսկե գրքում: Եվ դա օրինաչափ է: Չէ որ տակավին մեծ Լենինն էր ասում, որ մենք ոչ միայն պետք է կարողանանք անվեհեր պայքարել մեծ գաղափարի կենսագործման համար, այլև երազել: Միայն սոցիալիստական կարգերում լիակատար հիմքեր ստեղծվեցին հազարավոր և միլիոնավոր մարդկանց լուսաշող երազների ու անօրինակ սխրանքների իրականացման համար:

Նշելով մեծ Լենինի ծննդյան 95-ամյակը, Սովետական Միության ժողովուրդները քաջ գիտակցում են, որ այդ տոնը մի խթան պետք է հանդիսանա մեր կյանքում չլուծված բազմաթիվ հարցերը հաջողությամբ լուծելու համար: Լենինի անմահ կերպարը մեզ կոչ է անում՝ աշխատել լենինաբար և ապագային նայել լենինաբար: Ամբողջ առաջավոր մարդկությունը ակնդետ նայում է լենինյանների բանակի փառավոր երթին: Եվ վեր է կասկածից, որ Լենինի կոփած պարտիան այսուհետև ևս անվարան կառաջնորդի ժողովրդին դեպի երջանիկ կյանքի արևանիստ գագաթները:

Ստորև հրապարակում ենք ականավոր բոլշևիկ, 1898 թվականից կոմունիստական պարտիայի անդամ, սոցիալիստական աշխատանքի հերոս Վ. Ա. Կարպինսկու՝ Վ. Ի. Լենինին նվիրված հուշերից մի հատված, որը գրված է «Պրավդա» թերթի համար:

Վ. Ա. ԿԱՐՊԻՆՍԿԻ

## ԼԵՆԻՆԻ ՆԱՄԱԿԸ

Մոսկվա: 1920 թվականի աշնանային մի առավոտ:

Կրեմլի Սպասկյան աշտարակից ղողանջում է մանր զանգակիկների քաղցրալուր ձայնը: Ապա ամբողջ Մոսկվայի վրա տարածվում են մեծ զանգի ինը հզոր հարվածները:

Սովետական հիմնարկություններում սկսվում է աշխատանքը:

Կրեմլի երրորդ հարկում Վ. Ի. Լենինը մտնում է իր առանձնասենյակի դուռը, գրպանից հանում բանալին, դուռը բացում, ներս է մտնում և նստում իր գրասեղանի առաջ:

Նրա հետևից առանձնասենյակ է մտնում հողագործության ժողովրդական կոմիսար Ս. Պ. Սերեդան: Միջին տարիքի մի մարդ էր նա, որ ակտիվ արձագանքում էր կառավարության ղեկավարի առջև կանգնած բոլոր նոր հարցերին, բայց մի քիչ շտապում էր եզրակացություններ անել: Նա բարևեց և ասաց.

— Այսօր, Վլադիմիր Իլյիչ, շատ հետաքրքիր մի փաստաթուղթ է ստացվել:

— Ի՞նչ փաստաթուղթ:

— «Սկնեմվարի» կանոնադրությունը:

— Ինչպե՞ս, ինչպե՞ս: Կրկնեցեք:

— «Սկնեմվարի» կանոնադրությունը:

— Դա՞ ինչ բան է:

— Գյուղատնտեսական կոմունայի անուն... Ուրալում ինչ-որ մի տեղ...

— Ա՜, դա իսկապես որ շատ հետաքրքիր է: Հապա մի տվեք այդ կանոնադրությունը:

— Համեցեք, Վլադիմիր Իլյիչ: Կոմունայի անունը կազմված է նրա կազմակերպիչների ազգանունների սկզբնատառերից: Մտահղացումը լավ է, բայց ահա, ստացվել է մի տեսակ...

— Ոչինչ: Այդ իրենց գործն է...

— Վլադիմիր Իլյիչ, տեղական իշխանությունը՝ թե՛ գավառական և թե նահանգական, հաստատել է կոմունայի կանոնադրությունը:

— Լավ էլ արել են:

— Ուրեմն հաստատո՞ւմ եք:

— Անպայման:

Վլադիմիր Իլյիչը կոմունայի կանոնադրությունը վերցրեց, մի քանի անգամ աչքի անցկացրեց, կանգ առնելով ինչ-որ մի բանի վրա, որն իր կարծիքով ամենակարևորն էր և մակագրեց. «Հաստատում եմ: Վ. Ի. Լենին»:

Հետո իր ծոցատետրում գրեց կոմունայի հասցեն: Ժողկոմը նույնպես իր ստորագրությունը դրեց կանոնադրության վրա:

***

ԿՐԵՄԼԻ կարմիր դահլիճում, որ Վ. Ի. Լենինի առանձնասենյակի կողքին է, տեղի է ունենում սովետական կառավարության նիստը: Դահլիճը մեծ չէ, երկու լուսամուտ ունի: Առաստաղի տակ վառվում են էլեկտրաջահերը: Ժամացույցը ցույց է տալիս գիշերվա մեկը: Խոսում է Վ. Ի. Լենինը:

— Ընկերնե՛ր, մեր նիստը ավարտվում է: Վերջում ես ուզում եմ մի քանի խոսք ասել գյուղատնտեսական արտելների օրինակելի կանոնադրությունը կազմելու առաջարկության մասին, որ արվեց այստեղ: Այդ առաջարկությունը ես շատ կարևոր եմ համարում: Գյուղատնտեսական արտադրական միավորումների օրինակելի կանոնադրություն մշակելու համար հատուկ հանձնաժողով կկազմվի:

Ժողովը հայտարարում եմ փակված:

Վլադիմիր Իլյիչը նստում է սեղանի մոտ և ինչ-որ բան գրում: Դահլիճն աստիճանաբար դատարկվում է: Ջահերը մարում են:

Վլադիմիր Իլյիչը հողագործության ժողովրդական կոմիսարին պահում է իր մոտ:

— Սեմյոն Պաֆնուտևիչ, իմ մտքից ոչ մի կերպ դուրս չի գալիս այն «Սրկնեմվար» կոմունան: Ես նույնիսկ նամակ եմ գրել նրանց...

— Իսկ ի՞նչ եք գրել:

— Առանձնապես ոչինչ... Շնորհավորել եմ լավ նախաձեռնությունը, խոսել նրա նշանակության մասին, ցանկացել եմ հետագա հաջողություններ... իսկ դուք նոր տեղեկություններ չունե՞ք կոմունայի մասին:

— Ունեմ, Վլադիմիր Իլյիչ...

— Էլ ինչո՞ւ եք լռել:

— Շատ լավ տեղեկություններ: Կոմունայի անդամ ընտանիքների թիվը բավական մեծացել է. 9-ից հասել է 47-ի:

— Օհո՛, այդ հո հինգ անգամից ավելի է:

— Կոմունայի անդամները շինանյութերի պատրաստություն են տեսնում. ծառ են կտրում, կոճղերն են հանում, ընդարձակում են իրենց դաշտերը:

— Կեցցե՛ն, կեցցե՛ն:

Վլադիմիր Իլյիչը վեր կացավ և սկըսեց սենյակում քայլել...

— Գիտե՞ք ինչ, Սեմյոն Պաֆնուտեվիչ, հարկավոր է օգնել նրանց:

— Ճիշտ 'է, բայց ինչպե՞ս, ինչո՞վ:

— Չէ՞ր կարելի, ասենք, տրակտոր ուղարկել նրանց:

Տեսնելով, որ ժողկոմը լուռ է, Վլադիմիր Իլյիչն ավելացրեց.

— Այնքան էլ մեծը չէ, իհարկե...

— Տրակտոր կուղարկենք:

— Հետն էլ մի քիչ պահեստի մասե՞ր: Ախր առանց դրան մեկ էլ տեսար՝ մի դատարկ բանի համար տրակտորը կանգ առավ:

— Գրում եմ՝ պահեստի մասեր:

— Դե, իհարկե, հարկավոր կլինի տրակտորի համար տրակտորիստ էլ գտնել: Երկաթուղով տրակտորը կհասնի մինչև Եկատերինբուրգ (Սվերդլովսկ), իսկ նրանից դենը երկու-երեք հարյուր վերստ ինքն իրեն պիտի գնա...

— Տրակտորիստ էլ կհրավիրենք:

— Դուք ներեցեք ինձ, Սեմյոն Պաֆնուտևիչ, որ ժողկոմին անպատշաճ բաներով եմ զբաղեցնում ձեզ:

— Ինչպե՞ս թե «անպատշաճ»: Կոմունային օգնություն ցույց տալը իմ



ուղղակի պարտականությունն է, ընկեր Լենին:

Նրանք բաժանվեցին իրարից շատ գոհ:

***

ՁՄԵՌՎԱ մի առավոտ «Սկնեմվար» կոմունան եկավ բոժոժավոր մի փակ սահնակ: Սահնակից դժվարությամբ դուրս եկավ մի պատկառելի մարդ՝ մորթե մուշտակի մեջ փաթաթված, սամույրե փափախը գլխին: Նա մոտ վազող երեխաներին հարցրեց.

— Որտե՞ղ է ձեր նախագահը:

— Ա՛յ, էնտեղ, էն խրճիթում, քեռի, էն, որ ավելի մեծ է:

Եկվորը շարժվեց դեպի խրճիթը, իսկ այնտեղից արդեն նրան ընդառաջ էր դուրս գալիս կոմունայի նախագահը:

— Այս ո՞ւմ է աստված ուղարկել մեզ մոտ,— հարցրեց նախագահը ժըպտալով:

— Նահանգական կոմիսար Իվան Պետրովիչ Պուշկարյով:

— Շատ հաճելի է: «Սկնեմվար» կոմունայի նախագահ Մուրզին: Համեցեք ներս:

Կոմիսարը երկար ժամանակ հանվում էր, ապա պորտֆելը ձեռքին մոտեցավ սեղանին և ծանր-ծանր նստեց աթոռին:

— Այ թե ինչ, նախագահ,— ասաց նա,— հապա մի ժողով հրավիրիր: Շատ կարևոր գործ կա:

— Վա՛նյա, լսեցի՞ր: Վազիր տները, ասա, որ բոլորը ժողովի գան:

Կոմունարներն իրար անցան... Այդ ինչի՞ համար այս ձյուն-ձմռանը հարյուրավոր վերստ հեռվից՝ Եկատերինբուրգից մեզ մոտ է եկել կոմիսարը: Քի՞չ հաց ենք տվել: Որևէ բան սխա՞լ ենք կատարել:

Նրանք իսկույն հավաքվեցին, հետաքրքրությամբ նայում 'էին պատկառելի կոմիսարին, սպասելով, ինչ-որ անախորժ բանի:

Բայց կոմիսարի տրամադրությունը բարձր էր: Նա ժիլետի գրպանից մի քողավոր պստիկ բանալի հանեց, նրանով բացեց իր պորտֆելը և այնտեղից հանեց մի մեծ ծրար, որի վրա տպագիր տողեր կային: Այդ ծրարը նա ցույց տվեց ժողովին և մատը տպագիր տողերի վրայով սահեցնելով կարդաց.

«ՌՍՖՍՌ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԿՈՄԻՍԱՐՆԵՐԻ ՍՈՎԵՏ»:

— Մեր սովետական կառավարությունը,— պարզաբանեց նա:

Հետո կոմիսարը ծրարից հանեց մի թուղթ, բաց արեց այն և ժողովին ցույց տալով՝ ազդու ձայնով ասաց.

— Սա նամակ է, որ ձեզ, կոմունարներիդ է ուղարկել Վլադիմիր Իլյիչ Լենինը:

Կոմունարներն այդ անակնկալից հուզված՝ իրար անցան...

— Հանդա՜րտ,— գոչեց կոմիսարը:

Եվ սկսեց դանդաղ կարդալ նամակը: Կոմունարները լսում էին շունչները պահած:

Երբ կոմիսարն ընթերցումն ավարտեց, խրճիթում քար լռություն էր տիրում... Հետո հանկարծ որոտացին ծափերը, այնպիսի բուռն ծափահարություններ, որ ասես խրճիթը փուլ պիտի գար... Եվ հնչեցին հուզումնալից բացականչություններ.

— Ահա ինչպիսին է մեր Իլյիչը, ինչպե՛ս է գրել մեզ:

— Երբեք չենք մոռանա:

Կոմունայի նախագահն ասաց.

— Իր նամակում Լենինը գրում է, որ մեր կոմունան բոլոր չքավոր ու միջակ գյուղացիներին երջանիկ կյանքի ուղիղ ճանապարհ է ցույց տալիս:

Կոմունարներն ուզեցին վերցնել իրենց հասցեագրված Լենինի նամակը:

— Աշխարհիս երեսին այդ նամակից թանկ բան չկա մեզ համար,— ասում էին նրանք:

Բայց կոմիսարն ասաց, որ Լենինի նամակը նրանց մոտ թողնել ոչ մի կերպ չի կարող և բացատրեց, թե ին-

չու: Շուտով Եկատերինբուրգում ժողովրդական մի մեծ ժողով է գումարվելու, որտեղ ինքը՝ կոմիսարը, ժողովրդի առաջ կարդալու է Լենինի նամակը: Կոմունայի անդամներին էլ կհրավիրեն այդ հավաքին:

Կոմունիստները նախանձով հետևում էին, թե ինչպես կոմիսարը Լենինի նամակը չորստակ ծալեց, դրեց ծրարի մեջ, ապա՝ ծրարը պորտֆելի, և փականքը չխկացրեց:

Հետո կոմիսարը հագնվեց, հրաժեշտ տվեց կոմունարներին, դժվարությամբ մտավ սահնակը ու գնաց:

Իսկ կոմունարները դեռ երկար ժամանակ լուռ նստած խորհում էին պատահածի մասին...

Վերջապես Սոֆրոն պապը, որ սովորաբար լուռ ու մունջ մեկն էր, ծանր հառաչելով ասաց.

— Է՛հ, տղերք, մենք Լենինի նամակը զուր թողեցինք կոմիսարի մոտ... հանկարծ մի բան չպատահի այդ նամակին:

***

ԵԿԱՏԵՐԻՆԲՈՒՐԳ նահանգական քաղաքի լայնարձակ հրապարակը լեփլեցուն է մարդկանցով: Ոմանք նույնիսկ լապտերների սյուներին են բարձրացել, որ ավելի լավ տեսնեն ու լսեն:

Հրապարակի մեջտեղում կա մի բեմահարթակ, որի վրա նստարաններ են շարված նահանգի ղեկավարների, և մի ամբիոն՝ զեկուցողի համար:

Նահանգական կոմիսար Պուշկարյովն ընդարձակ զեկուցում է տալիս: Սկզբում նրան լսում են շատ ուշադիր, բայց հետո սկսում են գոռալ:

— Պատմեցե՛ք Լենինի նամակի մասին:

Եվ շուտով ամբողջ հրապարակը վանկարկում է.

— Լե-նի-նի նա-մա-կը, Լե-նի-նի նա-մա-կը...

Այդ ժամանակ կոմիսարը գրպանից հանում է մի ծրար և թափահարելով գոռում.

— Ահա՛ այն, ահա՛ այն, Լենինի նամակը:

Հրապարակը վայրկենապես լռում է: Քար լռություն... Կոմիսարն սկսում է բարձրաձայն ու բառ-բառ կարդալ...

Իսկ երբ կոմիսարն ավարտեց նամակի ընթերցումը, հրապարակում պայթեց անվերջ ծափահարությունների որոտը:

Կոմիսարը Լենինի նամակը ծալեց, գրպանը դրեց և նույնպես սկսեց ծափահարել...

Միտինգը վերջանալուն պես կոմունարները շրջապատեցին կոմիսար Պուշկարյովին և ասացին.

— Դե, հիմա արդեն, ընկեր, մեզ տըվեք Լենինի նամակը: Հո ձեզ այլևս պետք չէ:

Կոմիսարը խիստ բարկացավ ու գոռաց նրանց վրա.

— Դուք ի՞նչ է, կատա՞կ եք անում ինձ հետ: Թե՞ կարգ ու կանոն չգիտեք: Լենինի նամակը շատ կարևոր փաստաթուղթ է: Այն պետք է պահվի հավերժ:

— Ա՜յ քեզ բան,— դողդոջուն ձայնով ասաց Սոֆրոն պապը:— Ախր ես ասում էի ձեզ, տղերք, ասում էի, չէ՞:

Կոմիսարը մեղմացավ:

— Լսեցեք, ընկերնե՛ր: Վաղը դուք գնացեք նահանգային կոմիտե և խընդրեք, որ ձեզ տան Լենինի նամակի պատճենը: Ահա ձեզ հասցեն...

Հետևյալ օրն առավոտյան կոմունարները գնացին նահանգային կոմիտեի ընդունարանը: Մուրզինը մոտեցավ սեղանին, հերթապահին բարևեց ու ասաց.

— Մենք «Սկնեմվար» կոմունայի անդամներն ենք: Ուզում ենք ստանալ այն նամակի պատճենը, որ Լենինը գրել է մեր կոմունային:

— Այդպիսի փաստաթուղթ առայժմ մեզ մոտ չկա,— ասաց հերթապահը,— մի քիչ ավելի ուշ եկեք:

— Բայց մենք պետք է անմիջապես ճանապարհ ընկնենք: Աշխատանքը մեզ է սպասում:

— Այդ դեպքում,— ասաց հերթապահը,— մի խնդրագիր ուղարկեք նահանգային կոմիտե, որ Լենինի նամակի պատճենը ձեզ տան...

— Այդպես մի՞թե կարելի է,— ուրախ գոչեց Մուրզինը:

— Իհարկե կարելի է: Միայն թե տեսեք, խնդրագիրը գրված լինի ինչպես հարկն է, կոմունայի բլանկի վրա, կնիքով և ստորագրությամբ:

Տուն վերադառնալուց մի քանի օր անց Մուրզինը մի նամակ գրեց նահանգային կոմիտեին, խնդրելով ուղարկել իրենց այն նամակի պատճենը, որ Լենինն ուղղել էր «Սկնեմվար» կոմունային:

Շատ օրեր անցան, իսկ պատասխանը չկար ու չկար: Բայց ահա մի առավոտ փոստատարը Մուրզինի առանձնասենյակն ընկավ գոռալով.

— Նամա՜կ նահանգային կոմիտեից:

Մուրզինը ծրարը խլեց նրա ձեռքից, հուզմունքից դողացող մատներով պատռեց այն և հանեց «Սկնեմվար» կոմունային Լենինի գրած նամակի պատճենը: Ուրախությունից նա երեխայի պես վեր-վեր ցատկոտեց:

Նույն օրը երեկոյան կոմունայի ընդհանուր ժողով գումարվեց: Երկար ժամանակ կոմունարները չէին ցրվում, նորից ու նորից էին կարդում Լենինի նամակը:

Կոմունան Լենինի նամակը խնամքով պահում էր իր չհրկիզվող պահարանում: Ամեն տարի կոմունայի հիմնադրման օրը նամակը հանում էին պահարանից և կարդում կոմունարների ընդհանուր ժողովում: Բայց ահա բանդիտները հարձակվեցին կոմունայի վրա և չհրկիզվող պահարանը տարան: Թանկարժեք պատճենը կորավ: Իսկ նահանգային կոմիտեից նոր պատճեն խնդրելն անհարմար էին համարում...

ՇԱՏ տարիներ են անցել:

Վ. Ի. Լենինի նամակը, որ գրել էր նա Ռուսաստանի առաջին կոմունարներից մեկին, մինչև այժմ էլ գտնված չէ: Սակայն արտելային աշխատանքի փարոսը, որ վառել էին առաջին կոմունարները, չի մարել, այլ բորբոքվելով պայծառ լույս է արձակում: Նրան ուժ է տվել Վլադիմիր Իլյիչի անմահ միտքը կոոպերացիայի, գյուղացիության մասին, նրա կյանքը համայնական նոր հիմունքներով վերակառուցելու մասին:

1964 թվականի գարնանը, կոմունայի հիմնադրման 45-րդ տարեդարձի նախօրյակին նրա կազմակերպիչներն ու առաջին կոմունարները՝ Պ. Ռազբոյնիկովը, Ե. Մուրզինան, Մ. Նելյուբինը, Ա. Նելյուբինան, ինչպես և նախկին կոմունայի հողերի վրա գործող Ռասսվետ կոլտնտեսության հինգերորդ «Հարվածային» բրիգադայի բրիգադավար, ավագ Ե. Շչերբակովը և կոլտնտեսության ներկա նախագահ Ա. Սոչնեը մի նամակ գրեցին Պրավդայի խմբագրությանը: Այդ նամակում նրանք պատմում են.

«Երկար տարիներ «Սկնեմվար» կոմունան առաջավոր ու օրինակելի տընտեսության մի փարոս էր և Մոսկվայի 1923 թվականի համառուսաստանյան առաջին ցուցահանդեսի մասնակիցը: Մեր արտելային աշխատանքի ու տընտեսության համբավը Ուրալի սահմաններից էլ շատ հեռու էր տարածվել: Մեզ մոտ զանազան պատվիրակություններ էին գալիս, հաճախ լինում էին պատվիրակները, իսկ 1929—1930 թվականներին մեզ այցելեցին նաև արտասահմանյան բանվորական պատգամավորներ: Երբ արդեն կատարվել էին տնտեսական ու քաղաքական այն խընդիրները, որ այդ տարիներին դրված էին կոմունայի առաջ, նրա բազայի վրա կազմակերպվեց մի կոլտնտեսու-

թյուն, որն այժմ կրում է «Ռոսիա» անունը: Այժմ դա նորագույն տեխնիկայով հագեցած մի հզոր, օրինակելի տնտեսություն է: Եթե «Սկնեմվար»-ի դաշտերում առաջին տրակտորը երևաց 1921 թվականին, իսկ 1926 թվականին արդեն Կրասնի պուտիլովեց տիպի վեց տրակտոր ուներ, ապա այժմ արտելը տասնյակներով զանազան մեքենաներ ունի: Աշխատունակ գյուղացիների մի երրորդ մասը մեխանիզատորներ են:

Վլադիմիր Իլյիչը երազում էր գյուղի էլեկտրիֆիկացում: Մեր տնտեսության մեջ տեղադրված է 160 էլեկտրամոտոր և կոլտնտեսությունը ամբողջությամբ էլեկտրիֆիկացված է:

Կոմունայում գրագետ մարդկանց մատների վրա կարելի էր հաշվել: Այժմ կոլտնտեսությունում աշխատում են մի քանի տասնյակ մասնագետներ, որոնք բարձրագույն, միջնակարգ և մասնագիտական կրթություն ունեն: Կոլտնտեսությունն Ուրալի և Անդրուրալի բուհերում իր թոշակառուներն ունի»:

Ահա թե ինչ են գրել կոլտնտեսականները: Այս օրինակը համոզիչ հաստատումն է լենինյան ուղու ճշտության, որով մեր պարտիան տանում է ժողովրդին:

«Правда» № 16, 1965 г.

Մեկ համար անսահման թանկ է Լենինի պատկերի ամեն մի նրբերանգը: Լենինը բազմակողմանի է ինչպես ինքը՝ կյանքը: Նրա մեջ միավորվել են կազմակերպչի ու հրապարակախոսի, փիլիսոփայի ու սլետական գործչի մեծ ընդունակությունները: Այսօր մենք պատմում ենք ընթերցող և հանճարեղ գրքերի հեղինակ Լենինի մասին: Լենինը գիրքը ձեռքին, մտածող ու էնցիկլոպեդիստ՝ լավագույն օրինակն է բոլոր նրանց համար, ովքեր գիտության են ձգտում: Խոսքը տանք Շուշանիկ Նիկիտիչնա Մանուչարյանցին՝ Լենինի գրադարանապետուհուն: Ձեր առջև է մի քանի էջ նրա «Վլադիմիր Իլյիչի գրադարանում» գրքից, որ մոտ օրերս լույս է ընծայելու քաղհրատը:

Շ. Ն. ՄԱՆՈՒՉԱՐՅԱՆՑ

## ԻԼՅԻՉԸ ԳԻՐՔԸ ՁԵՌՔԻՆ

1920 թվականի մարտի 14-ին, ուղիղ նշանակված ժամին սրտի թրթիռով ես ոտք ներս դրի Ժողկոմսովետի նիստերի դահլիճի շեմքից: Եվ իսկույն էլ տեսա Վլադիմիր Իլյիչին: Նա հենց նոր էր դուրս եկել իր առանձնասենյակից, վերարկուն հագին էր և, ըստ երևույթին, պատրաստվում էր ինչ-որ տեղ գնալ: Ես կանգ առա ու չգիտեի ինչ անեմ: Դրությունը փրկեց Ն. Գ. Կրասինան՝ Ժողկոմսովետի քարտուղարի օգնականներից մեկը:

— Վլադիմիր Իլյիչ,— ասաց նա,— գրադարանապետն է եկել՝ աշխատանքի մասին Ձեզ հետ խոսելու:

Իսկ Լենինը, որ արդեն իմ կողմն էր գալիս, ժպտալով ձեռքը մեկնեց.

— Բարև Ձեզ: Ուրեմն դո՞ւք եք գրադարանապետուհին:

Իմ ամբողջ հուզմունքը չքացավ: Վլադիմիր Իլյիչն ինձ առաջարկեց նստել և սկսեց հարցուփորձը.

— Դուք մասնագե՞տ եք: Գիտե՞ք գրադարանային գործը:

Ես պատասխանեցի, որ հատուկ դասընթաց չեմ անցել, բայց գիրք սիրում եմ և նրա հետ աշխատանքի որոշ փորձ ունեմ:

— Իսկ կարո՞ղ եք ամեն րոպե ինձ հարկավոր գիրքը ճարել:

— Կաշխատեմ:



Վլադիմիր Իլյիչը նայեց ինձ, մի վայրկյան մտածեց, ասես ինչ-որ ծանր ու թեթև անելով, ապա ասաց.

— Լավ, ուրեմն ծանոթացեք իմ գրադարանին:

ԱՌԱՋԻՆ երկու տարին ես աշխատում էի Վլադիմիր Իլյիչի գրադարանում և պետհրատում: Ժողկոմսովետի նիստերի օրերին Վլադիմիր Իլյիչը ճաշվա հանգստից հետո իր առանձնասենյակն էր գալիս սովորականից հինգ-յոթ րոպե առաջ: Անհրաժեշտ նյութերի հետ միասին նա իր հետ վերցնում էր նաև նոր գրքեր ու ամսագրեր, որոնք հասցնում էր նիստերի ժամանակ ո՛չ միայն աչքի անցկացնել, այլև իր նշումներն անել դրանց մեջ:

Արագ կարդալու սովորությունն, ըստ երևույթին, վաղուց էր մշակվել Վ. Ի. Լենինի մոտ:

Հին բոլշևիկ Օ. Բ. Լեպեշինսկայան իր հիշողությունների մեջ բերում է հետևյալ էպիզոդը: Սիբիրյան աքսորում նա առիթ է ունեցել Լենինի հետ միասին Ենիսեյ գետով Կրասնոյարսկից նավարկել մինչև Մինուսինսկ: Միաժամանակ Ենիսեյի չքնաղ տեսարանները դիտելուց հետո Վլադիմիր Իլյիչն սկըսում է ընթերցել, Լեպեշինսկայան նույնպես մի գիրք է առնում ձեռքը: «Ես,— պատմում է Օլգա Բորիսովնան,— ակամա ուշադրություն դարձրի, որ Իլյիչն իր վերցրած հաստափոր գրքի էջերը թերթում է արագ-արագ: Ես իմ գրքից հազիվ 5—6 տող էի կարդում, իսկ Իլյիչն իմ կողքին արդեն շրջում էր թերթը: Նայեցի Իլյիչի ձեռքում բացված գրքին: Տեսնում եմ, որ դա օտար լեզվով գիրք է:

— Վլադիմիր Իլյիչ,— հարցրի ես,— Դուք ի՞նչ եք անում:

Իլյիչը զարմանքով ինձ նայեց:

— Ինչպե՞ս թե ինչ: Կարդում եմ...

— Բայց մի՞թե կարելի է այդպես արագ կարդալ,— զարմացա ես:

— Այ թե ինչ,— ժպտաց Իլյիչը:— Դուք իրավացի եք. ես արագ եմ կարդում: Բայց այդպես է հարկավոր, ես ինձ վարժեցրել եմ արագ կարդալու: Ինձ անհրաժեշտ է շատ ու շատ կարդալ: Դրա համար էլ դանդաղ կարդալ ինձ չի կարելի...»

Վլադիմիր Իլյիչի նշումները կրող գրքերը, ամսագրերն ու լրագրերը պահվում են ՍՄԿՊ Կենտկոմին կից մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտում (դրանց թիվը հասնում է 900-ի): Բազմաթիվ հետազոտողներ ուսումնասիրում են դրանք: Լենինի ընթերցանության հետաքրքրասիրությունն այնքան լայն էր, գրքի վրա աշխատելու նրա մեթոդներն այնքան բազմապիսի ու հարուստ, որ այդ պրոբլեմը լիովին լուսաբանելու համար պահանջվում են գիտնականների, գրադարանավարների, հրապարակախոսների միացյալ ջանքեր:

ՆՊԱՏԱԿԱՍԼԱՑՈՒԹՅՈՒՆԸ գիտելիքների, նախ և առաջ ռևոլյուցիոն թեորիային տիրապետելու հաստատակամությունը, սիստեմատիկությունը Վլադիմիր Իլյիչի բնորոշ գծերից մեկն է:

Լենինի անձնական գրադարանում Մարքսից ու Էնգելսից մոտ 200 գիրք կա (ռուսերեն և օտար լեզուներով): Առանձնապես խնամքով են պահվել «Կապիտալ»-ի հատորները (1872, 1885 և 1894 թվականների գերմանական հրատարակությունները և 1872, 1885 թվականների ռուսական հրատարակությունները):

Սոցիալիզմի և կոմունիզմի հաղթանակի ուսմունքը մշակելիս Վ. Ի. Լենինը մանրամասնորեն ծանոթանում էր փիլիսոփայական, տնտեսական ու քաղաքական գրականությանը:

Սոցիալիզմի կառուցումը մեր երկրում, արդյունաբերական արտադրության ու ղեկավարման կազմակերպումը, գյուղատնտեսությունը, ազգային հարցը, մարդկանց դաստիարակությու-

նը, աշխատանքի կազմակերպումը, առևտուրը, սովետական օրենսդրությունը, սոցիալական ապահովությունը, պրոֆշարժումը, միջազգային կոմունիստական շարժումը, կյանքն արտասահմանում՝ ահա թեմաների այն շրջանը, որ, իմ կարծիքով, կարելի է առանձնացնել Իլյիչի ուսումնասիրած գրականությունը հետազոտելիս:

Վլադիմիր Իլյիչը մեծ ուշադրություն էր դարձնում աշխատանքի գիտական կազմակերպման, նրա արտադրողականության բարձրացման, սովետական քաղաքացիների մեջ աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունք դաստիարակելու հարցերին: Վ. Ի. Լենինի հանձնարարությամբ ես այս հարցերի վերաբերյալ անհրաժեշտ գրականություն էի ընտրում:

1922 թ. մայիսի 17-ին Վ. Ի. Լենինից մի երկտող ստացա.

«Խնդրում եմ սոցիալիստական ակադեմիայից ինձ համար ձեռք բերել սույնին կից ցուցակում կապույտ մատիտով նշված գրքերը:

Վ. Ուլյանով (Լենին)

P.S. Իսկ եթե կա, նաև այս հարցի վերաբերյալ գրքերի ցուցակ»:

Միաժամանակ ժողկոմսովետի գործերի կառավարիչ Ն. Պ. Գորբունովին հանձնարարվել էր Ամերիկայից, Գերմանիայից, Անգլիայից գրականություն դուրս գրել աշխատանքի թեյլորիզացիայի և գիտական կազմակերպման մասին:

Լենինը շատ անգամ մտնում էր այն սենյակը, որտեղ դարսված էր նրան հարկավոր գրականությունը և աչքի էր անցկացնում այն: Աշխատանքի գիտական կազմակերպման վերաբերյալ իր մտածած աշխատությունը, ցավոք սրտի, հիվանդության պատճառով այդպես էլ չհաջողվեց սկսել: Նա կարողացավ միայն 1922 թ. օգոստոս-սեպտեմբերին գրել «Մի բաժակ կուպրը մի տակառ մեղրի մեջ» հոդվածը: Քննության առնելով Օ. Ա. Երմանսկու «Աշխատանքի գիտական կազմակերպումը և Թեյլորի սիստեմը» (պետհրատ, 1922 թ.) գրքի արժանիքներն ու թերությունները, Վլադիմիր Իլյիչն ընդգծում է. «Աշխատել սովորելը հիմա Սովետական ռեսպուբլիկայի գլխավոր, իսկապես համաժողովրդական խնդիրն է»:

Վ. Ի. Լենինի հոդվածը, որ իր իսկ արտահայտությամբ նվիրված էր սովետական ժողովրդի «ամենաառաջնակարգ ու ամենագլխավոր խնդրին», թերավարտ մնաց:

Լենինը մեծ սեր էր տածում ռուս գեղարվեստական գրականության կլասիկների նկատմամբ: Հանգստի հազվադեպ ժամերին նա ձեռքն էր առնում Պուշկինի կամ Նեկրասովի, Գոգոլի կամ Սալտիկով-Շչեդրինի հատորը: Նրա գրադարանում կային Գոնչարովի, Գորկու, Լերմոնտովի, Դոստոևսկու, Լ. Տոլստոյի, Չեխովի, Տուրգենևի ստեղծագործությունները...

Արիստոֆանից մինչև Ուելս, Հոֆմանից մինչև Նեքսե, այսպիսին էր Վլադիմիր Իլյիչի ընթերցանության հետաքրքրությունների շրջանակը օտար գեղարվեստական գրականության բնագավառում: Գրադարանում կան հին աշխարհի բանաստեղծներն ու դրամատուրգները, մ.թ.ա. IX—VII դարերի չինական բանաստեղծները:

Վլադիմիր Իլյիչը հետաքրքրվում էր նաև այն ժամանակ ծնունդ առնող սովետական գրականության ստեղծագործություններով: Նա սիրում էր ռևոլյուցիոն պոեզիան:

Ահա Վասիլի Կնյազևի բանաստեղծությունների փոքրիկ գրքույկը «Ինչ էր երգում զանգը» խորագրով (Պետրոգրադ, 1920 թ.): Նրա առաջին էջերից մեկում զետեղված է «Կոմունայի երգը».

Չի ընկճի մեզ կարիքը,
Ոչ էլ ցավն ու չարիքը,
Բախտը քմահաճ մեզ տեր չի լինի



Երբե՛ք, երբե՛ք,
Երբե՛ք, երբե՛ք,
Կոմունարն ստրուկ չի լինի...

Այս գրքույկը Նադեժդա Կոնստանտինովնան շատ անգամ է կարդացել հիվանդ պառկած Վլադիմիր Իլյիչի համար: «...Պատահում էր՝ կարդում էի նրա համար ոտանավորը,—մտաբերում է Կրուպսկայան,—իսկ նա լուսամուտից մտախոհ նայում էր մայր մտնող արևին... Կարդում ես և կարծես երդում ես տալիս Իլյիչին՝ երբեք, երբեք չենք զիջի ռևոլյուցիայի ոչ մի նվաճումը...»:

Վլադիմիր Իլյիչը մոլի գրասեր էր: Բայց գիրքը նրա համար ինքնանպատակ չէր, ոչ էլ զարդարանք: Նա գրքերի վրա աշխատում էր ստեղծագործաբար, քննադատաբար գնահատում էր նրանց բովանդակությունը, նրանցից վերցնում այն, ինչ պետք էր տեսական աշխատանքի ու պրակտիկ գործունեության համար, քաղվածքներ էր անում նրանցից:

Լենինի կոնսպեկտները գրքի բովանդակության չոր ու ցամաք շարադրանքը չէին: Կոնսպեկտի լուսանցքներում ու տեքստում կատարված բազմաթիվ դիտողություններով ու նշումներով Վլադիմիր Իլյիչն արտահայտում էր իր վերաբերմունքը շոշափած հարցին: Լենինի տետրերի լուսանցքները լի են այսպիսի դիտողություններով. «Շատ կարևոր է», «Պարզ է ասված», «Սրամիտ է», «Հիանալի է»:

Վլադիմիր Իլյիչը զանազան ընդգծումներով շեշտում էր իր կոնսպեկտի կարևորագույն ձևակերպումները:

Գիրք կարդալիս պետք է ձգտել լիովին յուրացնել բովանդակությունը, ասում էր Լենինը: Բայց բովանդակությունը յուրացնել՝ ամենևին չի նշանակում մտքում պահել նրա պատրաստի ձևակերպումները: Անհրաժեշտ է խորամուխ լինել ուսումնասիրվող առարկայի էության մեջ, գիտակցորեն յուրացնել այն, համեմատել կոնկրետ պատմական իրադրության հետ: Կարդալիս, դասախոսություն ու զեկուցում լսելիս ամենակարևորն է կարողանալ մոտենալ հարցին և ինքնուրույն հասկանալ այն: Միայն այդ դեպքում «Դուք կարող եք ձեզ բավականաչափ հաստատուն համարել ձեր համոզմունքներում և բավականաչափ հաջողությամբ պաշտպանել դրանք ում առաջ ասես և երբ ուզես»:

Վ. Ի. Լենինը աչքի էր անցկացնում մեծ քանակությամբ ամենաբազմապիսի գրականություն և կարողանում էր ժամանակին նկատել ամենակարևորը, նորը, առաջադիմականը: Եվ ո՛չ միայն նկատել, այլև վճռականորեն պաշտպանել այն:

Հայտնի է, թե Վլադիմիր Իլյիչն ինչպիսի հետաքրքրությամբ վերաբերվեց Ա. Տոդորսկու «Մի տարի հրացանն ու գութանը ձեռքին» գրքին:

Բերեմ ևս մի օրինակ, թե Լենինն ինչպես էր վերաբերվում «մանրուքներին», եթե դրանք ընդհանուր շահերի տեսակետից կարևոր էին:

«Առանց կրակի ճաշ եփելը» գրքույկից նա այսպիսի մի քաղվածք է արել.

«Քանի որ վառելիք չկա, ածուխ ու նավթ, և փայտ էլ քիչ է պատրաստված, թերմոսները պետք է մեծ դեր խաղան:

Հաշվի առնելով նրանց նշանակությունը, բանվորների ու կարմիրբանակայինների դեպուտատների Մոսկվայի սովետի պարենավորման բաժինը հայտարարել է մեծ ու փոքր չափի թերմոսների կոնկուրս»:

Հետո 1920 թ. հունիսի 29-ին Իլյիչը Մոսկվայի սովետի նախագահությանը մի երկտող գրեց, ուր ասված էր.

«Սրան կցելով «Առանց կրակի ճաշ եփելը» գրքույկից արված քաղվածքը («Տնտեսուհու փոքրիկ գրադարան» № 1, էջ 43, հրատ. ՀամԺՏԽ, Մոսկվա, 1918 թ.), խնդրում եմ հայտնել ինձ, թե

ինչ արդյունք ունեցավ Մոսկվայի սովետի պարենավորման բաժնի հայտարարած թերմոսների կոնկուրսը:

**Ժողովրդական կոմիսարների սովետի նախագահ Վ. Ուլյանով (Լենին)»:**

Մի բնորոշ գիծ: Այս փաստաթղթին Վլադիմիր Իլյիչը կցել էր մի երկտող. **««Առանց կրակի ճաշ եփելը» գրքույկը վերադարձրեք ինձ»:**

ՄՈՏԻԿԻՑ ես դիտել եմ, թե Վլադիմիր Իլյիչն ինչպիսի խնամքով էր պատրաստվում զեկուցումների և այլ ելույթների: Ինձ հանձնարարվում էր հետևել, որ նրան անհրաժեշտ ամբողջ գրականությունը ժամանակին պատրաստ լինի: Օրինակ, երբ պատրաստվում էր ելույթ ունենալ Կոմինտերնի IV կոնգրեսում, նա խնդրեց բերել Կոմինտերնի III կոնգրեսի սղագրական հաշվետվությունն ու բանաձևերը, իր զեկուցումը նոր տնտեսական քաղաքականության մասին և պարենհարկի մասին գրքույկը:

Ամբողջ գրականությունը ժողովվեց գերմաներեն, որովհետև Լենինը կոնգրեսում զեկուցելու էր այդ լեզվով:

Լենինը ռեֆերենտներ չուներ և, սովորաբար, իր ելույթներից առաջ ամբողջ նախապատրաստական աշխատանքն ինքն էր անում:

Աշխատավորների առաջ հանդես գալիս Լենինը նախապես գրված տեքստ չէր կարդում, որպիսին չէր էլ ունենում, այլ խոսում էր ազատ:

Վլադիմիր Իլյիչը ո՛չ միայն շատ կարդում, այլև շատ գրում էր: Զբաղված լինելով պետական ու պարտիական հսկայական գործերով, լուծելով վիթխարի թվով անհետաձգելի գործնական հարցեր, նա չէր ընդհատում գիտական աշխատանքը, անդադրում հարստացնում ու զարգացնում էր ռևոլյուցիոն տեսությունը: Առանձնասենյակը, որտեղ Լենինը հաճախ նստում էր մինչև խոր գիշեր, նաև ստեղծագործական լաբորատորիա էր:

Հետաքրքրական է 1920 թ. հոկտեմբերի 2-ին ՌԿԵՄ III համագումարում Վ. Ի. Լենինի արտասանած «Երիտասարդական միությունների խնդիրները» վերնագրով ճառի հրատարակման պատմությունը: Այն առաջին անգամ տպագրվել էր 1920 թ. հոկտեմբերի 5—7-ին «Պրավդա»-ում: Նույն տարին առանձին գրքույկով լույս էր տեսել «Գլխքաղլուսի գրադարան» սերիայով և իսկույն էլ ամբողջը (200 հազար օրինակ) սպառվել էր: Կոմերիտականները մի քանի անգամ Ն. Կ. Կրուպսկայայի միջոցով Իլյիչին խնդրել էին համաձայնություն տալ գրքույկը վերահրատարակելու: Բոլոր խնդրանքներին Վլադիմիր Իլյիչը մերժումով էր պատասխանել, ասելով, թե ցանկանում է գրքույկի նյութն ընդարձակել, որպեսզի այն ավելի լրիվ պատասխանի երիտասարդությանը հուզող հարցերին:

Մի անգամ կոմերիտականների պատվիրակությունը Կրուպսկայայի մոտ է բերում «Երիտասարդության միությունների խնդիրները» գրքույկի ձեռագիր օրինակներ: Դրանք զարդարված էին գլխագրերով, գլխազարդերով, մանրանկարներով և գեղեցիկ գրված ենթավերնագրերով: Նադեժդա Կոնստանտինովնան գրքույկի այդ ձեռագիր օրինակները տվել էր Վլադիմիր Իլյիչին: Նա ուշիուշով ծանոթացել էր կոմերիտականների աշխատանքին և թույլատրել էր գրքույկը վերահրատարակել: Այն շարել և էջերը կապել էին Մոսկվայի 26-րդ տպարանի կոմերիտականները իրենց կազմակերպած շաբաթօրյակների ընթացքում: Տպվածքներն աչքի անցկացնելով և ստորագրելով՝ Լենինը խորհուրդ էր տվել գրքույկի շապկի վրա հիշատակել այն կոմերիտականների ազգանունները, որոնք շարել ու տպագրել էին այն: Վլադիմիր Իլյիչի խորհուրդը կատարվեց:



1922 թ. դեկտեմբերին, երբ Վլադիմիր Իլյիչի առողջական վիճակն սկսեց վատանալ, և բժիշկները պնդում էին, որ նա նորից Գորկա փոխադրվի, Լենինը գրականության վերաբերյալ ցուցում տվեց: Դա հետևյալն էր. առանձնացնել տեխնիկական, բժշկական և այլ գրքեր և ուղարկել ուրիշ գրադարաններ, գյուղատնտեսականները հանձնել Մարիա Իլյինիչնային, արտադրական պրոպագանդայի, աշխատանքի կազմակերպման և մանկավարժական գրքերը՝ Նադեժդա Կոնստանտինովնային, գեղարվեստական արձակը պահել ցպահանջ, հրապարակախոսականը, քաղաքական հուշերը, մեմուարները թողնել իր համար:

Բնորոշ է, որ գրքերի մասին կարգադրությունը Լենինն արեց դեկտեմբերի 15-ին, այն նույն օրը, երբ թելադրեց ԿԿ անդամներին ուղղած նամակը Սովետների համառուսական X համագումարում ելույթ ունենալու առթիվ: Այդ նամակում ասված էր. **«Այժմ ես վերջացրի իմ գործերի լիկվիդացումը և կարող եմ հանգիստ գնալ»:**

Գրքերը Վլադիմիր Իլյիչի համար նրա բոլոր պետական ու պարտիական գործերի անբաժանելի մասն էին: Նա, ավելի քան որևէ մեկ ուրիշը, սիրում էր գրքերը, բարձր էր գնահատում դրանք, կարողանում էր նրանց վրա աշխատել:

«Комсомольская правда»
№ 14, 1965 г.

## Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԵՐԿԵՐԸ ՀԱՅԵՐԵՆ

Վ. Ի. Լենինի առանձին աշխատություններ հայերեն թարգմանվել են դեռևս Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայից շատ առաջ: Այդ աշխատությունները հրատարակվել են Մոսկվայում, Թիֆլիսում, Բաքվում, արտասահմանում:

Այդ ուղղությամբ հսկայական գործ է կատարված, հատկապես, Սովե-
Հայաստանում, սովետական կարգերի հաստատումից հետո: Սովե-
տական իշխանության տարիներին Լենինի Երկերից մեր ռեսպուբ-
լիկայում հայերեն թարգմանվել և լույս են տեսել 266 անուն գիրք՝
1.723.000 ընդհանուր տպաքանակով:

Վ. Ի. Լենինի աշխատություններից առաջինը, որը լույս է տեսել Սովետական Հայաստանում առանձին գրքով, «Պարենհարկի մասին (նոր քաղաքականության պայմաններն ու նրա նշանակությունը)» աշխատությունն է: Այն լույս է տեսել 1922 թվականին և հետագայում վերահրատարակվել 1932, 1939 և 1959 թվականներին: Այս աշխատության բոլոր հրատարակությունների ընդհանուր տպաքանակն է 21.000:

1930 թվականին սկսվեց Լենինի երկերի ռուսերեն 2-րդ և 3-րդ զուգահեռ հրատարակությունների հայերեն թարգմանությունը: Այդ նույն թվականին 4.000 տպաքանակով լույս տեսավ 1-ին հատորը, որն ընդգրկում է Վ. Ի. Լենինի՝ 1893—96 թվականներին գրած աշխատությունները: 1931 թվականին լույս տեսավ 26-րդ հատորը՝ 7.000 տպաքանակով, իսկ 1932 թվականին՝ 22-րդ և 27-րդ հատորները՝ յուրաքանչյուրը 6.000 տպաքանակով: Այս չորս հատորները տպագրության են պատրաստվել Աղասի Խանջյանի ղեկավա-

րությամբ: Այս հրատարակությունից հետագայում նորից լույս տեսան 3-րդ, 8-րդ և 13-րդ հատորները, ընդ որում 8-րդ հատորը՝ 2 անգամ:

1931—1935 թվականների ընթացքում իրականացվեց Վ. Ի. Լենինի Ընտիր երկերի վեցհատորյակի հրատարակությունը՝ 63.000 տպաքանակով: Առաջին 5 հատորներն ընդգրկում են 1894—1923 թվականներին գրած աշխատությունները, իսկ 6-րդ հատորը, որը բաղկացած է 2 մասից, ընդգրկում է Մարքսիզմի թեորիական հիմքերը և Ագրարային հարցի թեորիան:

Տարբեր ժամանակներում լույս են տեսել միհատորյակներ, երկհատորյակներ և զանազան թեմատիկ ժողովածուներ:

1962—64 թվականներին 15.000 ընդհանուր տպաքանակով լույս տեսան Վ. Ի. Լենինի Ընտիր երկերը՝ 3 հատորով:

1941 թվականին սկիզբ դրվեց Վ. Ի. Լենինի երկերի 4-րդ հրատարակության՝ հայերեն թարգմանությանն ու հրատարակմանը: Մինչև օրս լույս են տեսել 39 հատոր. պատրաստվում է հրատարակության 40-րդ հատորը: Այս հրատարակության լույս ընծայումը չդադարեցվեց նաև Հայրենական պատերազմի տարիներին: Վ. Ի. Լենինի Երկերի 4-րդ հրատարակության առթիվ հայերեն լույս են տեսել «Այբբենական ցանկ Վ. Ի. Լենինի երկերի 4-րդ հրատարակության մեջ մտած աշխատությունների» և «Վ. Ի. Լենինի Երկերի 4-րդ հրատարակության տեղեկատու հատորի» 2-րդ մասը, որն ուշագրավ է իր կառուցվածքով:

Առանձին գործերից 6 անգամ հրատարակվել է՝ «Պետություն և ռևոլյուցիա» աշխատությունը՝ 45.200 ընդհանուր տպաքանակով, 5 անգամ՝ «Իմպերիալիզմը որպես կապիտալիզմի բարձրագույն ստադիա»՝ 41.000 տպաքանակով, «Երիտասարդական միությունների խնդիրները»՝ 43.000 տպաքանակով, «Սովետական իշխանության հերթական խնդիրները»՝ 29.000 տպաքանակով, 4 անգամ՝ «Ի՞նչ անել»-ը՝ 30.000 տպաքանակով, ««Ձախության» մանկական հիվանդությունը կոմունիզմի մեջ»՝ 26.000 տպաքանակով և այլն:

Վերջերս «Հայաստան» հրատարակչությունը լույս ընծայեց «Մարքսիզմ և ռևիզիոնիզմ» աշխատությունը՝ 5.000 տպաքանակով:

Վ. Ի. Լենինի ծննդյան 95-ամյակի առթիվ հրատարակության են պատրաստվել «Մարտնչող մատերիալիզմի նշանակության մասին», ««Ձախության» մանկական հիվանդությունը կոմունիզմի մեջ» աշխատությունները, Կ. Մարքսի, Ֆ. Էնգելսի և Վ. Ի. Լենինի՝ «Գիտական կոմունիզմի մասին» ժողովածուն:

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

Ջ. ԳՐԻԳՈՐՅԱՆ

Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

## ՀԱՅԵՐԻ ՌՈՒՍԱԿԱՆ ՕՐԻԵՆՏԱՑԻԱՅԻ ՊԱՏՄԱԿԱՆ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ

*ՀԱՅ ժողովրդի ռուսական օրիենտացիայի պատմությունը վաղուց արդեն դարձել է շատ սերունդների պատմաբանների, տնտեսագետների, փիլիսոփաների, պետական ու ռազմական գործիչների ուսումնասիրության առարկա և այժմ կա այդ հարցին նվիրված բավական հարուստ գրականություն [1]: Այդ շնորհակալ թեման իր վառ արտացոլումն է գտել նաև գեղարվեստական գրականության, դրամատուրգիայի, կերպարվեստի ու երաժշտության մեջ:*

*Նախառևոլյուցիոն պաշտոնական պատմագրության ներկայացուցիչները հայերի ռուսական օրիենտացիայի հրապարակ գալը և ձևավորվելը վերագրել են ռուս թագավորների «ողորմածությանը», ինչպես և հայ ազատագրական շարժումների ղեկավար գործիչների սուբյեկտիվ ցանկություններին: Նրանք գովերգել են ցարիզմի արտաքին նվաճողական քաղաքականությունը, խնամքով քողարկելով այն ճշմարտությունը, որ ցարիզմին մտահոգում էր ոչ թե հայ ժողովրդի բախտը, այլ Հայաստանը Ռուսաստանին միացնելով այն օգտագործել իր ռազմա-քաղաքական ու գաղութատիրական շահերի համար:*

*Ազնվական և բուրժուական պատմագրության ներկայացուցիչներն անտեսել են հայ ժողովրդական մասսաների խաղացած դերը Հայաստանը Ռուսաստանին միացնելու համար մղված պայքարում: Նրանք ստվերի տակ են թողել ռազմական, նյութական ու բարոյական այն ակտիվ օգնությունը, որ կովկասյան պատերազմների ժամանակ հայերը ցույց տվեցին ռուսական բանակներին: Իհարկե, ինքնին հասկանալի է, որ ռուսական բանակների հետ համատեղ ընդհանուր թշնամու դեմ կռվող հայ աշխատավորական մասսաներին ոգեշնչում էին ոչ թե ցարիզմի ռազմա-քաղաքական ծրագրերը, այլ իրանական խաների և թուրքական փաշաների արյունալի լծից ազատագրվելու և ռուս ժո-*

*[1] Հայ ժողովրդի ռուսական օրիենտացիայի պատմության ուսումնասիրությունը խոր գիտական հիմքերի վրա դրվեց միայն հետհոկտեմբերյան տարիներին. այդ գործում իրենց արժեքավոր ներդրումն են կատարել սովետահայ պատմաբանները՝ Աշ. Հովհաննիսյանը, Բ. Բորյանը, Մ. Ներսիսյանը, Աբ. Հովհաննիսյանը, Լ. Մելիքսեթ-բեկը, Վ. Պարսամյանը, Պ. Հարությունյանը, Վ. Ռսկանյանը և ուրիշներ:*

ղովրդի օգնությամբ ազգային, սոցիալական ու քաղաքական ազատության հասնելու իրենց ակնկալությունները։

Հայ բուրժուական պատմագրության ներկայացուցիչները անդրադառնալով հայ ժողովրդի ռուսական օրիենտացիային ու, մասնավորապես, Արևելյան Հայաստանը Ռուսաստանին միացնելուն, լռության են մատնել արևմտյան մեծ պետությունների ռեակցիոն քաղաքականությունը՝ Անդրկովկասը պահելու շահական Իրանի և սուլթանական Թուրքիայի տիրապետության տակ։ Մինչդեռ հանրահայտ ճշմարտություն է, որ սկսած XVIII դարի վերջից Անգլիան և Ֆրանսիան իրենց ազդեցությունը Իրանում, Թուրքիայում և նրանց օգնությամբ ամբողջ Մերձավոր ու Միջին Արևելքում տարածելու և ամրապնդելու համար մրցելով միմյանց հետ, յուրաքանչյուրն առանձին-առանձին ակտիվ օգնելով Իրանին ու Թուրքիային, ձգտում էին ռուսներին հեռու պահել Անդրկովկասից։ Դրանով իսկ նրանք ոտնահարում էին Իրանի ու Թուրքիայի դեմ Անդրկովկասյան ժողովուրդների մղած ազատագրական պայքարը և մեծագույն վնասակար դեր խաղում նրանց պատմական կյանքի օրինաչափ զարգացման ճանապարհին։

Հայ բուրժուա-նացիոնալիստական պատմագրության ներկայացուցիչները ցարիզմը նույնացնելով ռուս ժողովրդի հետ, նենգափոխելով պատմական դեպքերի օբյեկտիվ ընթացքը, սև գույներով ներկայացնելով Արևելյան Հայաստանի Ռուսաստանին միացման հետևանքները, ժխտել են նրա խոշորագույն պրոգրեսիվ նշանակությունը։ Այդ հակագիտական, ռեակցիոն գիծը այժմ խորացնում ու զարգացնում են դաշնակ վտարանդի գրչակները։ Սնվելով ժամանակակից արևմտյան իմպերիալիստական պատմագիտությունից, քաղաքականության մեջ լինելով արևմտյան ռազմատենչ իմպերիալիզմի վարձկան գործակալներ, իսկ գաղափարախոսության մեջ՝ նրանց կամակատար սպասավորներ՝ նրանք ստանձնել են պատմության կեղծարարների անփառունակ դերը։ Ունենալով շատ որոշակի նպատակ՝ նենգափոխելով պատմությունը, այն օգտագործել դաշնակցության ու նրա արևմտյան տերերի հակասովետական պրոպագանդայի համար, դաշնակ գրչակները հատկապես անդրադառնում են պատմության այնպիսի հարցերի, որոնք ունեն քաղաքական առավել սուր և պրակտիկ նշանակություն։ Ուստի, պատահական չէ, որ նրանք հատուկ կրքոտությամբ նենգափոխում են հայ ժողովրդի ռուսական օրիենտացիայի, հայ և ռուս ժողովուրդների դարավոր կապերի ու բարեկամական հարաբերությունների պատմությունը։

Ով շատ թե քիչ ծանոթ է դաշնակցության պատմությանը և պրակտիկ գործունեությանը, գիտե, որ նրանք արտաքուստ ձևանալով «մաքուր ու առաքինի», իրենց պրակտիկ գործունեությունը միշտ էլ կառուցել են դեմագոգիայի ու պրովոկացիայի, ստի ու կեղծիքի վրա։ Ստ. Շահումյանը տակավին 1906 թվականին մերկացնելով դաշնակցություն պարտիայի ու նրա մամուլի օրգանների այդ գործելակերպը, ամենայն իրավամբ գրել է՝ «Որքա՞ն զարհուրելի է այն կեղծիքն ու անբարոյականությունը, որ մաքրության ու առաքինության դիմակի տակ բույն են դրել դաշնակցական խմբագրատներում և բյուրոներում»[1]։

---

1 Ստ. Շահումյան, *Հոդվածներ և ճառեր*, Երևան, 1953, էջ 51։



Պատահական չէ, որ այն ժամանակ արդեն Ստ. Շահումյանը դաշնակցությունը որակեց որպես մտքի ապիկարների և «անազնիվ գրպարտիչների» պարտիա[1]։ Այդ ամենն այժմ դաշնակներն ու նրանց մամուլի օրգանները հասցրել են բարձր կատարելության տալով դրանց թունոտ հակասովետական բնույթ։

ԻՐԵՆՑ մամուլի օրգաններում Ս. Վրացյանը, Ռ. Դարբինյանը, Բ. Նավասարդյանը, Վ. Ահարոնյանը, Գ. Լազյանը, Հրանտ-Սամուելը և մյուսները հաճախ են հանդես գալիս հայ և ռուս ժողովուրդների հարաբերությունների պատմությանը նվիրված հոդվածներով[2]։ Եվ անկախ այն բանից, թե դրանք ի՞նչ վերնագրերի տակ են տպագրվում կամ ի՞նչ առիթով՝ բոլորն էլ ունեն մի նպատակ՝ պատմության նենգափոխման միջոցով խախտել սփյուռքահայ աշխատավորական մասսաների հաստատ ու հետևողական սովետական օրիենտացիան, նրանց մեջ առաջ բերել անվստահություն դեպի ռուս մեծ ժողովուրդը, սեպ խրել հայ և ռուս սոցիալիստական ազգերի անխախտ բարեկամության մեջ։

Մոտ կես դար է, ինչ կանգ չառնելով ոչ մի ստի ու կեղծիքի առաջ, դաշնակ կեղծարարները հայ և ռուս ժողովուրդների դարավոր բարեկամությունը ներկայացնում են որպես «...Ռուսներու կողմէ հայության դեմ սարքուած դավերու եւ խաղերու» պատմություն[3], իսկ հայ ժողովրդի ռուսական օրիենտացիան՝ որպես հայ ազատագրական շարժումների առանձին գործիչների սոսկ ցանկության արդյունք։

Սուբյեկտիվ իդեալիզմին գերի դաշնակ «տեսաբանները» անկարող են ըմբռնել, որ այս կամ այն ժողովրդի քաղաքական օրիենտացիան արդյունք է ոչ թե ինչ-որ դիպվածի կամ քաղաքական անհատ գործիչների սուբյեկտիվ ցանկությունների, այլ պատմական զարգացման պրոցեսի և պայմանավորվում է մի շարք վճռական գործոններով։ Այն գլխավոր գործոնը, որով պայմանավորվեց հայերի ռուսական օրիենտացիան, պաշտոնապես Ռուսաստանի ճանաչումն էր որպես միակ ռեալ ուժի, որի օգնությամբ հնարավոր էր թոթափել իրանական խաների և թուրքական փաշաների դարավոր լուծը։ Հայերը հիմք ունեին այդպես մտածելու և գործելու, քանի որ Ռուսաստանը XVII դարի կեսին արդեն դարձել էր Եվրոպայի ամենահզոր պետություններից մեկը։ Ռուսաստանի պաշտոնական ճանաչումը որպես Հայաստանը թուրք-իրանական լծից ազատագրելու ռեալ ուժի՝ դարձավ հայ ժողովրդի ռուսական օրիենտացիայի ռազմա-քաղաքական հիմքը։

Հայ ժողովրդի ռուսական օրիենտացիայի հանդես գալու և ձևավորման հարցում կարևոր նշանակություն ունեցան նաև դեռևս Կիևյան պետության ժամանակներից հայերի և ռուսների միջև հաստատված և անընդմեջ զարգացող տնտեսական, կուլտուրական և ռազմական կապերն ու համագործակցու-

---

1 Ստ. Շահումյան, *Հոդվածներ և ճառեր*, Երևան, 1953, էջ 50, 408։

2 Նրանցից ոմանք այդ հարցին նվիրել են նաև առանձին աշխատություններ, որոնք գրված են կեղծված ու հաճախ էլ՝ հորինված «փաստերի» վրա։ Օրինակ, նման «աշխատություն» է Գ. Լազյանի «Հայաստան և հայ դատը հայ և ռուս հարաբերությունների լույսի տակ» գիրքը, որը լույս է տեսել Կահիրեում, 1957 թվականին։

3 Տե՛ս «Հառաջ», 12 մայիսի, 1962 թ.։

թյունը: Դրանք մեծապես նպաստեցին XVII դարի երկրորդ կեսին նրանց միջև
նաև քաղաքական կապերի սկզբնավորմանը [1]:
Հայերի ռուսական օրիենտացիայի ձևավորման գործում ոչ պակաս նշա-
նակություն ունեցավ նաև այն, որ Անդրկովկասը սահմանակից էր Ռուսաս-
տանին: Այդ հանգամանքը մեծապես նպաստեց հայ և ռուս ժողովուրդների
տնտեսական, կուլտուրական և ռազմական կապերի ու համագործակցության
ուժեղացմանը: Ավելին. այն կարևոր գործոնն էր, որի շնորհիվ ռուսական
կառավարությունը, ելնելով կայսրության հարավային սահմաններն ամ-
րապնդելու շահերից, հանդես էր բերում ակտիվ շահագրգռվածություն ինչ-
պես ամբողջ Անդրկովկասի, այնպես էլ նրա մի մասը կազմող Հայաստանի՝
Թուրք-իրանական լծից ազատագրվելու և Ռուսաստանին միացնելու հարցում:
Սրանք էին այն հիմնական գործոնները, որոնց հիման վրա հանդես եկավ,
ձևավորվեց և իր օրինաչափ զարգացումն ապրեց հայերի ռուսական օրիեն-
տացիան: Եթե մինչև XIX դարը հայերի ռուսական օրիենտացիան մեծապես
նպաստեց հայ-ռուսական տնտեսական, կուլտուրական, ռազմական և քաղա-
քական կապերի ու համագործակցության ուժեղացմանն ու ամրապնդմանը,
ապա XIX դարի սկզբին այն օգնեց արևելյան հայերին՝ թոթափելու խանական
Իրանի դարավոր լուծը: Եթե XVIII դարում հայ-ռուսական քաղաքական հա-
րաբերությունները զարգանում էին Ռուսաստանի ռազմական օգնությամբ
Հայաստանի ազատագրման և նրա հովանավորության ներքո Հայկական պե-
տության ստեղծման գաղափարի նշանաբանով, ապա XVIII դարի վերջին,
XIX դարի սկզբին այդ ծրագիրը ցարիզմի կողմից վերջնականապես մերժվեց
և որպես գործարար խնդիր նրա կողմից առաջ քաշվեց Ռուսաստանի հետ
Հայաստանի միացման ծրագիրը:

1826—1828 թթ. ռուս-իրանական պատերազմում ռուսական բանակների
ու նրանց շարքերում կռվող հազարավոր հայ աշխարհազորայինների տարած
հաղթանակների շնորհիվ Արևելյան Հայաստանում տապալվեց իրանական
տիրապետությունը և 1828 թվականի փետրվարի 10/22-ին Թուրքմենչայի պայ-
մանագրով Արևելյան Հայաստանը միացվեց Ռուսաստանին: Դա չնայած քա-
ղաքական անմիջական ազատություն չբերեց հայ ժողովրդին, բայց նրա հա-
մար օբյեկտիվորեն ունեցավ խոշոր պրոգրեսիվ նշանակություն, որը չեն
ըմբռնում և չարամտորեն փորձում են ժխտել դաշնակ գրչակները:
Դաշնակ «տեսաբանները» կարծես «չգիտեն» կամ «մոռացել են», որ սուլ-
թանական Թուրքիայի և շահական Իրանի կողմից Հայաստանի զավթումով ու
իրար մեջ բաժանելով սկսվեց հայ ժողովրդի պատմության ամենածանր,
ամենամռայլ ու դաժան, երեքդարյա ստրկության ժամանակաշրջանը:
Թուրք-իրանական բռնապետական կարգերը, կառավարման վայրագ մե-
թոդը, ազգային ու կրոնական բիրտ խտրականությունը, փաշաների ու խա-
ների անզուսպ կամայականությունները կատարյալ ստրկական իրավազր-
կության էին հասցրել հայ ժողովրդական մասսաներին:
Հայ ժողովրդին հնազանդ ու նրա վրա իրենց տիրապետությունը անվերջ
պահելու համար սուլթանական և շահական կառավարությունները չբավարար-
վելով պարբերաբար կազմակերպվող արյունալի կոտորածներով, հաճախ

[1] Տե՛ս «Армяно-русские отношения в XVII веке», Сборник документов, Ереван,
1953, стр. 91—92, 257.



դիմում էին նաև հայերի մասսայական բռնագաղթերի: Այդ քաղաքականու-
թյան հետևանքով էր, որ հայ ժողովրդի օրրան Արարատյան դաշտավայրում,
Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միացման նախօրյակին հայերը
կազմում էին բնակչության շուրջ 1/4-ը, իսկ միայն Երևանի խանության մեջ
բոլորովին կործանված ու ամայացած հայկական գյուղերի թիվը հասնում էր
310-ի: Հայերի մասսայական բռնագաղթերի միջոցով սուլթանական ու շահա-
կան կառավարությունները ձգտում էին մասնատել հայ ժողովրդին և դրա-
նով իսկ դյուրացնել նրա ասիմիլյացիան ու բնաջնջումը:
Հայ ժողովրդի ազատասիրական ոգին մեռցնելու, նրա ազգային վե-
րածննդի հնարավորություններն արգելակելու համար դաժան հալածանքների
էին ենթարկում և բարբարոսաբար ոչնչացնում հայ ժողովրդի՝ դարերի ըն-
թացքում ստեղծված հարուստ ու արժեքավոր կուլտուրական ժառանգությու-
նը, կաշկանդում նրա հետագա առաջընթացը:
Թուրքական ու իրանական լծի տակ աղետալի քայքայման ու անկ-
ման արագ պրոցես էր ապրում նաև Հայաստանի ողջ տնտեսական կյանքը:
Դա արդյունք էր Թուրքիայի և Իրանի ֆեոդալական էկոնոմիկայի ծայրաստի-
ճան հետամնացության, այդ երկրներում իշխող միջնադարյան ֆեոդալական
հողային հարաբերությունների, գիշատիչ հարկային սիստեմի ու հարատև
ավերիչ պատերազմների:
Մի՞թե այս ամենին տեղյակ և շատ թե քիչ ողջամիտ որևէ մարդ կարող
է ժխտել Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միացման խոշորագույն
պրոգրեսիվ նշանակությունը:
Խոսելով Արևելյան Հայաստանի Ռուսաստանին միացման օբյեկտիվ,
պրոգրեսիվ նշանակության մասին՝ միշտ պետք է հիշել, որ Թուրք-իրանական
բռնապետությունները հայ ժողովրդին տանում էին ֆիզիկական բնաջնջման,
և պատմական այդ կոնկրետ պայմաններում Հայաստանի միացումը Ռուսաս-
տանին միակ ուղին էր հայ ժողովրդի համար՝ փրկվելու ֆիզիկական բնաջնջու-
մից:
Արևելյան Հայաստանի Ռուսաստանին միացումը արևելահայերին փրկեց
ֆիզիկական բնաջնջման ռեալ վտանգից: Ռուսաստանին միացված Արևելյան
Հայաստանը դարձավ հայ ժողովրդի հավաքման ու ազգային կոնսոլիդացիայի
բուն օջախը: Այնտեղ եկան աշխարհով մեկ ցրված ու օտար երկնակամարների
տակ կյանք մաշող տասնյակ հազարավոր պանդուխտ հայեր և հնարավորու-
թյուն ունեցան ո՛չ միայն պաշտպանելու իրենց ֆիզիկական գոյությունը, այլև
զարգացնելու հայրենի տնտեսությունը, կուլտուրան, հայ ժողովրդի հոգևոր ու
քաղաքական կյանքը:
Իսկ ի՞նչ բախտի արժանացավ հայ ժողովրդի մյուս հատվածը՝ արևմտա-
հայությունը, որն իր ժամանակին խոշոր ներդրում է կատարել ո՛չ միայն ողջ
հայ ժողովրդի, այլև Թուրքիայի ու Արևելքի մի շարք այլ ժողովուրդների
տնտեսական, կուլտուրական, հոգևոր ու քաղաքական կյանքի զարգացման
ոլորտում:
Այն ժամանակ, երբ Ռուսաստանին միանալու շնորհիվ Արևելյան Հայաս-
տանում արագորեն աճում էր հայ բնակչության թիվը, Արևմտյան Հայաստա-
նում սուլթանական կառավարության տմարդի հայաջինջ քաղաքականության
հետևանքով գնալով նվազում էր այն: Այսպես. ըստ հայրենի և օտարերկրյա
հավաստի աղբյուրների վկայության 1894—1895 թվականներին Թուրքիայում

սրի քաշվեցին 350—400 հազար հայեր, 1909 թվականին՝ 30 հազար։ Թուրք սատրապների կողմից հայերի նկատմամբ վարած այդ բարբարոս քաղաքականությունն իր ոճրագործ ավարտին հասավ համաշխարհային առաջին պատերազմի տարիներին հայկական մեծ եղեռնով, որի ժամանակ թուրք փաշաների հրամանով սրի քաշվեցին մոտ մեկ և կես միլիոն հայեր։

Այսպիսով, Արևմտյան Հայաստանը արևմտյան իմպերիալիստական պետությունների «ողորմածությամբ» թուրքական տիրապետության տակ թողնելը, դարձավ արևմտահայության բնաջնջման, հրաշքով կենդանի մնացած նրանց բեկորների մասսայական բռնագաղթերի ու թշվառ պանդխտության մեծ ողբերգության գլխավոր պատճառը։

Արևելյան Հայաստանը Ռուսաստանին միացնելու պրոգրեսիվ նշանակությունը կայացավ նաև նրանում, որ նրա էկոնոմիկան արագորեն ներգրավվեց Իրանի և Թուրքիայի համեմատությամբ անհամեմատ առաջավոր ու զարգացող համառուսաստանյան տնտեսական կյանքի ընդհանուր ոլորտը և նպաստավոր պայմաններ ստեղծվեցին Հայաստանում կապիտալիստական հարաբերությունների հանդես գալու, արտադրողական ուժերի զարգացման և ողջ տնտեսական կյանքի աշխուժացման համար։

Եվ, վերջապես, Արևելյան Հայաստանի Ռուսաստանին միացումը զուգադիպեց ռուսական առաջավոր դեմոկրատական կուլտուրայի, գիտության, արվեստի ու գրականության, ռուսական ռևոլյուցիոն-դեմոկրատական մտքի զարգացման մի նշանակալից էտապի և այդ իր խոշոր բարերար ու առաջադիմական ազդեցությունը գործեց հայ կուլտուրայի և ռևոլյուցիոն հասարակական մտքի զարգացման վրա։

Արևելյան Հայաստանի միացումը Ռուսաստանին առաջընթաց մի նոր խոշոր քայլ հանդիսացավ հայ և ռուս ժողովուրդների մերձեցման ու հարազատացման ճանապարհին։ Դա միանգամայն օրինաչափ էր, որովհետև նրանց՝ մեկ կենտրոնացված պետության կազմում գտնվելը, համառուսաստանյան միասնական շուկայի ստեղծումը, տնտեսական և կուլտուրական փոխազդեցությունը և, վերջապես, նրանց համատեղ պայքարը իրենց արտաքին ընդհանուր թշնամիների դեմ չէին կարող չնպաստել այդ ժողովուրդների մերձեցման ու բարեկամության հետագա խորացմանն ու ծավալմանը, հայ ժողովրդի բովանդակ կյանքի առաջընթացին։

Սակայն այս ամենը հարցի մի կողմն է. մյուս առավել էական կողմն այն է, որ Արևելյան Հայաստանը Ռուսաստանին միանալով հայ աշխատավորական մասսաներն իրենց բախտը կապեցին ոչ թե ցարիզմի, այլ ռուս աշխատավոր ժողովրդի բախտին, իրենց ուժերը միավորեցին ռուսական հերոսական պրոլետարիատի ուժերի հետ ընդդեմ ցարիզմի, կալվածատերերի ու բուրժուազիայի, ընդդեմ օտարերկրյա իմպերիալիզմի։ Պատմության օբյեկտիվ, օրինաչափ առաջընթացը, պատմության դիալեկտիկան հանգեցրին այն բանին, որ, հակառակ ցարիզմի վարած ազգային-գաղութային քաղաքականության, հայ և մյուս ժողովուրդների միացումը Ռուսաստանին հնարավորություն տվեց միավորելու նրանց ուժերը ռուս ժողովրդական մասսաների հետ և ստեղծելու համառուսաստանյան ռևոլյուցիոն ընդհանուր ճակատ ընդդեմ ցարիզմի, ընդդեմ ազգային ու սոցիալական լծի։

XIX դարի վերջերից, երբ Ռուսաստանը թևակոխեց իր ռևոլյուցիոն ազատագրական շարժումների պրոլետարական էտապը, հայ ժողովրդական մաս-



սաներն իրենց ազգային ու սոցիալական ազատագրությունը հաստատորեն կապեցին ռուսական պրոլետարիատի ռևոլյուցիոն պայքարի հետ։ Ռուսաստանի ռևոլյուցիոն-ազատագրական շարժումների պրոլետարական էտապում հայ ժողովրդական մասսաների ռուսական օրիենտացիան պայմանավորվեց հայ և ռուս հասարակության ամենառևոլյուցիոն դասակարգերի՝ բանվոր դասակարգի սերտ կապերով ու համերաշխությամբ, նրանց շահերի, նպատակների ու պրակտիկ գործունեության միասնությամբ։ Նոր դարաշրջանի համար դա հանդիսացավ շատ վճռական ու որոշիչ գործոն, որովհետև ռևոլյուցիոն-ազատագրական շարժումների պրոլետարական էտապում բանվոր դասակարգն իր քաղաքական ավանգարդի՝ կոմունիստական պարտիայի գլխավորությամբ, իր խաղացած սոցիալ-քաղաքական մեծագույն հեղաշրջող դերով դարձավ հասարակության ամենահզոր ու ամենապրոգրեսիվ սոցիալական ուժը, նոր դարաշրջանի որոշիչ դեմքը և հասարակական կյանքի զարգացման պրոցեսում նրա գրաված տեղով ու խաղացած դերով էլ պայմանավորվեցին ժողովուրդների հարաբերությունները։

Դասակարգային պայքարի փոթորկահույզ գոտեմարտերում հայ և ռուս ու Ռուսաստանի բոլոր աշխատավոր ժողովուրդների ուժերի միավորումը համառուսաստանյան ռևոլյուցիոն ընդհանուր ճակատի մեջ, դարձավ այն ուժը, որի հզոր հարվածների տակ խորտակվեց «ժողովուրդների բանտ» հանդիսացող բուրժուա-կալվածատիրական Ռուսաստանը և Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի հաղթանակի շնորհիվ նրա բոլոր ժողովուրդները, այդ թվում և հայ ժողովուրդը, հասան լիակատար ազատության[1]։

ՀԱՅԵՐԻ ռուսական օրիենտացիայի մեծագույն պրոգրեսիվ նշանակությունը հայ ժողովրդի կյանքի զարգացման համար այնքան ակնհայտ է եղել, որ դեռ իր ժամանակին նրա հաղթանակի համար պայքարել են հայ հասարակական-քաղաքական շարժման տարբեր հոսանքներին և ուղղություններին պատկանող բոլոր առաջադեմ ու հեռատես գործիչները։

Հայերի ռուսական օրիենտացիան տակավին XVIII դարում դրվատել և ջերմորեն պաշտպանել են հայ ազատագրական շարժման ազնվականական (Իսրայել Օրի, Հովհ. Լազարյան, Հովսեփ Արղության և ուրիշներ) և բուրժուական (Հովսեփ Էմին, Մովսես Բաղրամյան, Շ. Շահամիրյան և ուրիշներ) թևերի գործիչները։ Նրանք այն ժամանակ արդեն Հայաստանում իրանա-թուրքական տիրապետության տապալումը և հայ ժողովրդի ազգային ազատագրությունը սերտորեն կապեցին Ռուսաստանի հետ և այդ նպատակով բանակցությունների մեջ մտան ռուսական արքունիքի հետ՝ առաջարկելով իրենց քաղաքական ծրագրերը[2]։ Այդ գիծը հետագայում հետևողականորեն շարունակեցին ու զարգացրին հայ ռևոլյուցիոն-դեմոկրատները՝ Մ. Նալբանդյանի գլխավորությամբ և հայ ազատագրական շարժման մյուս բոլոր առաջադեմ

---

[1] Արևելյան Հայաստանի Ռուսաստանին միացման պրոգրեսիվ նշանակությանը հանգամանորեն անդրադարձել ենք մեր «Присоединение Восточной Армении к России в начале XIX века» (Москва, 1959) և «Հայ և ռուս ժողովուրդների դարավոր բարեկամությունը» (1960, Երևան) աշխատություններում։

[2] Տե՛ս. «Դիվան Հայոց պատմության» գիրք Դ, Թիֆլիս, 1899, էջ 731—734, 734—737, «Հովսեփ Էմինի կյանքն ու արկածները», Կալկաթա, 1918 (անգլերեն)։

*գործիչները։ Այդ իր զարգացման բոլորովին նոր շրջանն ապրեց և որակական բոլորովին նոր էություն ու բովանդակություն ստացավ ռևոլյուցիոն ազատագրական շարժումների պրոլետարական էտապում, երբ Հայաստանի բանվոր դասակարգը, բոլշևիկների պարտիան, հայ ականավոր մարքսիստներ՝ Ի. Լալայանը, Ստ. Շահումյանը, Բ. Կնունյանցը, Ս. Սպանդարյանը, Ալ. Մյասնիկյանը և մյուսները հայ ժողովրդի ինչպես ազգային, նույնպես և սոցիալական ազատագրությունը սերտորեն կապեցին համառուսաստանյան ռևոլյուցիոն ընդհանուր ճակատի, Ռուսաստանում սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի հետ։*

*Ինչ վերաբերում է ցարիզմի կողմից հայերի նկատմամբ վարած խարդախ քաղաքականությանը, ապա մարքս-լենինյան պատմագիտությունը վաղուց արդեն գիտականորեն ու սպառիչ կերպով ցույց է տվել, որ ցարերն, ընդունելով հայերի «հովանավորի» կեղծ դիրք, իրականում այն օգտագործել են իրենց ռազմա-քաղաքական և գաղութակալական նպատակների համար ու մոտ մեկ դար հայ ժողովրդական մասսաներին ճզմել իրենց արյունոտ կրնկի տակ։*

*Մարքսիստական պատմագիտությունը, բարձր գնահատելով հայերի ռուսական օրիենտացիայի պրոգրեսիվ նշանակությունը, միշտ էլ քննադատել ու մերկացրել է ցարիզմի ազգային-գաղութային քաղաքականությունը, որովհետև Ռուսաստանի խաղացած օբյեկտիվ պրոգրեսիվ դերը նրա կազմի մեջ մտած ժողովուրդների կյանքում և նրանց նկատմամբ ցարիզմի վարած ազգային-գաղութային քաղաքականությունը բոլորովին տարբեր և իրարամերժ հասկացություններ են։*

*Մարքսիզմի կլասիկները դեռևս իր ժամանակին հստակորեն սահմանազատել են այդ իրարամերժ երկու հասկացությունները և իրենց վերաբերմունքն են ունեցել ինչպես ցարիզմի ազգային-գաղութային քաղաքականության ռեակցիոն էության, նույնպես և ռուսական կայսրության կազմի մեջ մտած ժողովուրդների կյանքում Ռուսաստանի խաղացած օբյեկտիվ պրոգրեսիվ դերի նկատմամբ։ Անարգանքի սյունին գամելով ցարիզմը, որը Ռուսաստանը վեր էր ածել «ժողովուրդների բանտի», նրանք միաժամանակ բարձր են գնահատել Ռուսաստանի դերը արևելքի ժողովուրդների կյանքում։ «Ռուսաստանը,—գրել է Ֆ. Էնգելսը,—իրոք առաջադիմական դեր է կատարում Արևելքի նկատմամբ»... Ռուսաստանը «...Սև ու Կասպիական ծովերի համար (այսինքն՝ Կովկասի համար—Զ. Գ.) խաղաց քաղաքակրթող դեր» [1] ընդգծել է Էնգելսը։*

*Այդ երկու հասկացությունների ճիշտ ըմբռնմամբ և հստակ սահմանազատմամբ էր, որ հայ կուլտուրայի և հասարակական-քաղաքական մտքի բոլոր սերունդների առաջավոր ու հեռատես գործիչները կողմնորոշվել են դեպի Ռուսաստանը և նրա հետ կապել իրենց ժողովրդի բախտը, նրա գալիք լուսավոր ապագան։*

*Հայ մեծ լուսավորիչ ու դեմոկրատ Խ. Աբովյանը, չնայած խորապես վշտացած ու դժգոհ էր ցարիզմի բռնություններից, բայց Հայաստանը Ռուսաստանին միացնելու մեջ տեսավ իր ժողովրդի փրկությունը։ Ահա թե ինչու նա այնքան համոզված ու անկեղծորեն գրել է՝ «Օրհնվի էն սհաթը, որ Ռսի օրհնած ոտը հայոց լիս աշխարհը մտավ, ու ղզլբաշի անիծած չար շունչը մեր*

[1] К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. XXI, стр. 211.



*երկրից հալածեց... Ռուսաց քաջ հոգին էր, որ մեզ ազատեց... Հայք ե՞րբ կարեն Ռուսաց արածը մոռանալ, քանի որ շունչ ունին» [1]։*

*Այդ ճշմարտության խոր ըմբռնմամբ էր, որ հայ մեծ ռևոլյուցիոն դեմոկրատ Մ. Նալբանդյանը կրակոտ սրտով ու ռևոլյուցիոն շնչով նետվեց ցարիզմի դեմ մղվող պայքարի հորձանուտը՝ հայ ժողովրդի ազգային ու սոցիալական ազատագրությունը սերտորեն կապելով ռուսական ռևոլյուցիոն դեմոկրատական շարժման հետ և «Ռուսիո ազատության» մեջ տեսավ իր ժողովրդի ու հանուր մարդկության ազատությունը։*

*Այդ երկու իրարամերժ հասկացությունների ճիշտ սահմանազատմամբ էր, որ հայ պոեզիայի հիասքանչ վարպետ Ավ. Իսահակյանը, սուր քննադատության ենթարկելով ցարիզմի ազգային-գաղութային քաղաքականությունը, միաժամանակ ջերմ սիրով ու երախտագիտության խոր զգացումով է խոսել իր ժողովրդի կյանքում Ռուսաստանի խաղացած պրոգրեսիվ դերի մասին։ Ավ. Իսահակյանը Մոսկվայի 800-ամյակի առթիվ գրել է, որ Արևելյան Հայաստանը «...մտնելով Մոսկվայի համաստեղության մեջ, սկսեց այնտեղից ստանալ լույս, գիտություն, նոր կուլտուրա» [2]։ Իսկ 1921 թվականին Հովհ. Թումանյանին գրել է. «Եվրոպան ոչ միայն մեզ չօգնեց, այլ մեր թշնամին է... Ես դրանում համոզվեցի փաստերի հիման վրա... ըստ իս Հայաստանը և հայ ժողովուրդը կարող են ապրել միայն Ռուսաստանի հետ» [3]։*

*Դաշնակ գրչակների ռեակցիոն կոնցեպցիային անհարիր է տարբերել ցարերին ժողովրդից, հայերի ռուսական օրիենտացիան՝ ցարերի նպատակներից ու վարած ռեակցիոն քաղաքականությունից։ Նրանք այդ ամենը լցնելով մի պարկի մեջ և նենգափոխելով ճշմարտացի պատմությունը, ցարիզմի վարած ազգային-գաղութային քաղաքականությունը միտումնավոր ձևով վերագրում են ռուս ժողովրդին, բացահայտ լռության մատնելով այն ճշմարտությունը, որ ցարիզմի լծի տակ հեծում էին ո՛չ միայն հայերը և Ռուսաստանի մյուս ժողովուրդները, այլև ինքը՝ ռուս աշխատավոր ժողովուրդը Նրանք լռության են մատնում և այն ճշմարտությունը, որ հայ ժողովուրդը կողմնորոշվելով դեպի Ռուսաստանը, հանձին ռուս աշխատավորական մասսաների, ռուսական հերոսական պրոլետարիատի, իր մղած սոցիալական ու ազգային ազատագրական պայքարում գտավ հուսալի ու հզոր դաշնակից, որի ակտիվ օգնությամբ և հասավ վերջնական ու լիակատար հաղթանակի։*

*Այսպիսով, հայ ժողովրդական մասսաները, կողմնորոշվելով դեպի Ռուսաստանը, վճռականորեն մերժել են ցարական օրիենտացիան և դաշնակցած ռուս և այլ ազգի ժողովուրդներին, պայքարել ցարիզմի տապալման համար։*

*Ցարական օրիենտացիան պատմական տարբեր էտապներում հատուկ է եղել հայ ազնվականությանը և բուրժուազիային, որոնք ձգտել են նրա օգնությամբ ամրապնդել իրենց տնտեսական ու քաղաքական ազդեցությունը։ XX դարի առաջին երկու տասնամյակներին այդ իր արտացոլումը գտավ նաև դաշնակցության պրակտիկ գործունեության մեջ։*

*Չնայած այժմ սփյուռքահայերին մոլորեցնելու նպատակով նրանք իրենց թերթերում թմբկահարում են «դաշնակցության պայքարը» ցարիզմի դեմ,*

[1] Խ. Աբովյան, *Երկեր, հ. 3, Երևան, 1948, էջ 58, 125, 180։*

[2] Ավ. Իսահակյան, *Երկեր, հ. IV, Երևան, 1951, էջ 225։*

[3] *Տե՛ս Ав. Исаакян,* «Вне родины нет жизни...» («Коммунист», 30 января 1963 г.).

բայց ով գիտե դաշնակցության իսկական պատմությունը, նրա խոսքի ու գոր-
ծի մեջ եղած խոր անջրպետը, չի հավատա դրան: Ճշմարտությունն այն է, որ
ցարիզմի դեմ դաշնակցության մղած «պայքարը» կրել է էպիզոդիկ բնույթ
և, առավելապես, սահմանափակվել է նրա տիրապետության պայմաններում
հայ բուրժուազիայի համար խղճուկ զիջումներ կորզելու շրջանակներով և
ստանալով այդ, բուրժուազիան և նրա կամակատար դաշնակցություն պար-
տիան ի վերջո զորագրվեցին Նիկոլայ 2-րդի արյունոտ սայլաշարին:

Դաշնակցությունն այն ուժերից մեկն էր, որ XX դարի սկզբներից օգտա-
գործվում էր Անդրկովկասում ազգամիջյան թշնամանք բորբոքելու և այդ ճա-
նապարհով Կովկասի աշխատավորական մասսաների ռևոլյուցիոն միասնա-
կան ճակատը ջլատելու համար: Դրանով իսկ դաշնակները, կամա թե ակամա,
նպաստում էին ցարիզմի տիրապետության ամրապնդմանը: Ռուսական առա-
ջին ռևոլյուցիայի նախօրյակին և սկզբին Կովկասի փոխարքա Գոլիցինը, ապա
նրան փոխարինած Վորոնցով-Դաշկովը մերթ օգտագործելով ադրբեջանական
աղալարներին, բեկերին ու խաներին, մերթ էլ դաշնակներին, խաղում էին հայ
և ադրբեջանական ժողովուրդների ազգային զգացմունքների հետ, նրանց գըր-
գըռում իրար դեմ: Ցարիզմի այդ պրովոկացիոն քաղաքականությունը
հանգեցրեց 1905—1906 թվականների հայ-թաթարական ընդհարումներին,
որի ժամանակ ադրբեջանական աղալարների, բեկերի ու խաների նման դաշ-
նակցությունը նույնպես հանդես եկավ որպես ցարիզմի կամակատար, նրա ձեռ-
քին գործիք՝ թուլացնելու ռևոլյուցիոն միասնական ճակատը: Այդ կապակցու-
թյամբ Ստեփան Շահումյանը մերկացնելով դաշնակներին՝ գրել է. «Դաշնակ-
ցականները իրենց վարձկան ջոկատներով կռվի մեջ նետվեցին՝ իրենց անվա-
նելով «հայրենիքի փրկիչներ», իրականում միայն խորացնելով և սրելով հայ-
թաթարական թշնամությունը» [1], որն ուղղակի բխում էր ցարիզմի շահերից:

Հայ մեծ բանաստեղծ Հովհ. Թումանյանը տակավին 1906 թվականին,
անարգանքի սյունին գամելով այդ ընդհարումների կազմակերպիչներին, գրել
է. «Հիրավի, այսքան տգեղ, այսքան լիրբ, այսքան անիրավ հրեշական կռիվ,
ինչ որ թուրք հայկականն է—դժվար թե եղած լինի» [2]:

Առաջին համաշխարհային իմպերիալիստական պատերազմի տարիներին
դաշնակցությունը որոշակիորեն դարձավ Նիկոլայ 2-րդի կամակատա-
րը: Դաշնակները ջերմորեն ողջունեցին Նիկոլայ 2-րդի 1914 թվականի հուլիսի
20-ի (օգոստոսի 3) պատերազմի առթիվ բաց թողած մանիֆեստը, որով ցա-
րը կոչ էր անում «փորձության ահեղ ժամին մոռացության տալ ներքին բոլոր
տարաձայնությունները»: Երկու կողմերն էլ հավատարիմ մնացին այդ կոչին.
ցարը ներումն շնորհեց աքսորված, դատված ու դատի ենթակա դաշնակներին,
պետական գանձարանից առատաձեռն օգնություն ցույց տալով, նրանց ընձե-
ռեց գործողությունների լայն ազատություն: Իսկ դաշնակները խոստացան
ցարիզմի տրամադրության տակ դնել իրենց բոլոր ուժերը [3]: Ցարիզմի նկատ-
մամբ իրենց վերցրած այդ «նոր կուրսը» դաշնակները փորձում էին բացատրել
Արևմտյան Հայաստանի ազատագրության ձգտումներով: Սակայն նրանք մի-
տումնավոր անգիտանում էին, որ հայերի ու մյուս ճնշված ազգերի և ազգու-
թյունների ազատագրությունը՝ ինչպես ցարիզմի, այնպես էլ սուլթանիզմի լծից

1 Ստ. Շահումյան, Հոդվածներ և ճառեր, Երևան, 1953, էջ 66:
2 Տե՛ս, Հովհ. Թումանյան, Երկերի ժողովածու, հ. 5, Երևան, 1945, էջ 298—299:
3 Տե՛ս Լեո, Անցյալից, Թիֆլիս, 1925, էջ 281:



պատմական այդ կոնկրետ ժամանակաշրջանում կարող էր միայն իրագործվել
իմպերիալիստական պատերազմը քաղաքացիականի վերածելու և սոցիալիս-
տական ռևոլյուցիայի ճանապարհով: Այդ էր ամբողջ հայ ժողովրդի, այդ թվում
և արևմտահայության ազատագրության միակ ճիշտ ու ռեալ ուղին, որի վրա
բոլշևիկյան պարտիայի կոչով հաստատորեն կանգնել էր նաև Հայաստանի
պրոլետարիատը: Մինչդեռ դաշնակցության՝ ցարիզմին զորագրվելը և նրա մի-
ջոցով ավանտյուրիստական եղանակներով Արևմտյան Հայաստանի «ազատա-
գրության» դաշնակցական ծրագիրը ո՛չ միայն մեծապես խանգարեցին արև-
մտահայերի ազատագրությանը, այլև պատրվակ դարձան սուլթանական կա-
ռավարության համար՝ իրագործելու արևմտահայերի բնաջնջման իր վաղեմի
ոճրագործ ծրագիրը:

Չնայած դաշնակները փորձում էին, և այժմ էլ շարունակում են ցարիզ-
մին զինվորագրվելու փաստը բացատրել արևմտահայերի ազատագրության
իրենց ձգտումով, բայց իրականում նրանց գլխավոր նպատակն էր՝ օգնել ցա-
րիզմին, իրենց «պարտքը կատարել նորին կայսրության մեծության առաջ»:
Այդ մասին կան բազմաթիվ փաստեր և անգամ անկեղծ խոստովանություն-
ներ: Ահա դրանցից մեկը: Կովկասի փոխարքա Վորոնցով-Դաշկովի հետ
պատերազմի հենց առաջին օրերին դաշինքի համաձայնագիր կնքելու առթիվ
բանակցող դաշնակ գործիչների թելադրանքով էջմիածնի Գևորգ կաթողի-
կոսը Վորոնցով-Դաշկովին գրում է. «...Ես երջանիկ եմ հավաստիացնելու
ձերդ պայծառափայլության, որ հայ ժողովուրդը մոռանալով սեփական վեր-
քից առաջ եկած ցավի զգացմունքը, իր բոլոր մտքերը կենտրոնացրել է մեծ
հայրենիքի վրա (խոսքը ցարական կայսրության մասին է—Զ. Գ.), որի փառքի
համար նա ոգևորությամբ արձագանք տվեց իր թագավորի կոչին՝ կատարել
իր սուրբ պարտականությունը նորին կայսերական մեծության և հայրենիքի
առաջ» [1]: Այնքան անմիջական ու անկեղծ է խոստովանությունը, որ կոմեն-
տարների կարիք չունի:

Ցարիզմի տապալումից և Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևո-
լյուցիայի հաղթանակից հետո դաշնակները հավատարիմ մնացին իրենց
դավանանքին և զորագրվելով ցարական սպիտակ գվարդիական գեներալ-
ներին, ծավալեցին կատաղի պայքար Սովետական Ռուսաստանի դեմ:
Դաշնակները, մենշևիկները, մուսավաթականները և Անդրկովկասի մյուս
կոնտրռևոլյուցիոն ուժերը՝ դաշնակցած ցարական գեներալների հետ,
Ստ. Շահումյանի խոսքերով ասած՝ դանակ էին խրում ռևոլյուցիայի թիկուն-
քը [2]: Դաշնակները նույնիսկ պաշտոնական համաձայնագիր կնքեցին ցա-
րական գեներալների հետ՝ նրանք Դենիկինին անգամ տրամադրեցին, անգլիա-
կան իմպերիալիստների կողմից, հատուկ սպառազինված հայկական զինվո-
րական միավորումներ:

Ցարական սպիտակ գվարդիական գեներալներն իրենց հերթին ռազմական
օգնություն էին ցույց տալիս դաշնակցական կառավարությանը՝ արյան մեջ
խեղդելու Հայաստանի աշխատավորության ռևոլյուցիոն պայքարը: 1920 թվա-
կանի հուլիսի 25-ին դաշնակցական կառավարության արտաքին գործերի
մինիստրությունը հաղորդում է. «Հարավ Ռուսաստանի զինված ուժերի հրա-

1 Տե՛ս, Լեո, Անցյալից, Թիֆլիս, 1925, էջ 282:
2 Ստ. Շահումյան, Հոդվածներ և ճառեր, Երևան, 1953, էջ 277:

մանատարությունը տրամադրել էր մեզ 3000000 (երեք միլիոն) փամփուշտ։ Կառավարությունս այդ փամփուշտների կեսը զիջել է Վրաստանին, մնացածը (մեկ և կես միլիոն) ամսույս սկզբին ստացել է Երևանը»[1]։ Դրանից չորս օր հետո՝ 1920 թվականի հուլիսի 29-ին, գեներալ Վրանգելի ներկայացուցիչը հատուկ նամակով դաշնակցական կառավարությանը հայտնում է. «Ռուսաստանի հարավի զինված ուժերի կառավարիչների սովետը որոշել է... Հայկական կառավարությանը բաց թողնել 2 միլիոն փամփուշտ, ըստ որում 1 միլիոնը բաց է թողնվում այժմ, իսկ հաջորդ միլիոնը՝ առաջին առաքման բարեհաջող տրանզիտի և նշանակված վայրը հասնելու մասին հայկական կառավարությունից ծանուցագիր ստանալուց հետո։ Հետագայում, հնարավորության չափ, Ռուսաստանի հարավի կառավարությունը կաշխատի զինամթերքով հնարավոր աջակցություն ցույց տալ Հայաստանին»[2]։

Այս փաստերը ակնհայտ կերպով ցույց են տալիս, որ դաշնակները թշնամական գիծ են վարել ոչ թե ցարիզմի, այլ ռուս աշխատավորական մասսաների նկատմամբ։ Նրանք հայ ժողովրդին պայքարի են կոչել ոչ թե ցարիզմի դեմ, այլ ձգտել են հայ աշխատավորական մասսաների մեջ առաջ բերել անվստահություն դեպի ռուս ժողովուրդը, թշնամացնել դարերով բարեկամական կապերով կապված այդ երկու եղբայրական ժողովուրդներին, ջլատել համառուսաստանյան ռևոլյուցիոն միասնական ճակատն ընդդեմ ցարիզմի, բուրժուազիայի և օտարերկրյա իմպերիալիզմի։ «...Այդ պարտիան,— գրել է Ստ. Շահումյանը դաշնակցության մասին,— իր բոլոր ուժերով պայքարել է հայ պրոլետարիատի և Կովկասի հայ ռևոլյուցիոն ինտելիգենցիայի բոլոր փորձերի դեմ՝ պայքարելու ընդդեմ բուրժուազիայի և ընդդեմ կառավարության»[3]։ Իսկ Հոկտեմբերյան մեծ ռևոլյուցիայի և մեր երկրում սկսված քաղաքացիական կռիվների ու օտարերկրյա ինտերվենցիայի տարիներին դաշնակները, փոխնիփոխ ծառայելով անգլիական, ֆրանսիական, ամերիկյան իմպերիալիստներին, նույնիսկ զորագրվեցին թուրքական ագրեսորներին, նրանց արյունոտ սվիններով խեղդելու սովետական իշխանության հաղթանակի համար Հայաստանի աշխատավորության ռևոլյուցիոն պայքարը։ Դաշնակցական թերթերն սկսեցին բացեիբաց քարոզել հայ ժողովրդի համար կործանարար թուրքական օրիենտացիա։ Դաշնակցական օֆիցիոզը՝ Հառաջ թերթը, 1920 թվականի նոյեմբերի 20-ին իր առաջնորդող հոդվածում գրել է. «Եթե հայ ժողովուրդը կամենում է ապրել և ապահովել իր պետական ու ֆիզիկական գոյությունը հարատևորեն, նա պետք է ունենա ոչ թե ռուսական, այլ թուրքական օրիենտացիա»։ Եվ այս գարշելի տողերը գրվել են այն ժամանակ, երբ թուրք ենիչերիները դաժանորեն ոչնչացրել էին արևմտահայության մեծամասնությանը, իսկ նրանց ժառանգները խնդիր էին դրել բնաջնջել նաև արևելահայությանը, երբ ամբողջ Հայաստանը նրանք վեր էին ածել ավերակների ու անանուն գերեզմանոցների։

Ավելին, դաշնակների տապալված կառավարության պատվիրակությունը (Խատիսյան, Գյուլխանդանյան, Կարգանյան), 1920 թվականի դեկտեմբերի

[1] «Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիան և սովետական իշխանության հաղթանակը Հայաստանում» (փաստաթղթերի և նյութերի ժողովածու), Երևան, 1960, էջ 359։

[2] Տե՛ս նույն տեղը, էջ 360։

[3] Ստ. Շահումյան, Հոդվածներ և ճառեր, Երևան, 1953, էջ 61—62։



2-ին Թուրքիայի հետ կնքեց Ալեքսանդրապոլի հրեշավոր պայմանագիրը, որը ոչ միայն Հայաստանի վաճառքն էր Թուրքիային, նրա առաջ ամոթալի կապիտուլյացիա, այլև փորձ՝ թուրքական սվիններով տապալելու նոր հաղթանակած սովետական իշխանությունը[1]։ Օգտվելով համաշխարհային դիվանագիտության պատմության մեջ իր նմանը չունեցող արտառոց ու անօրինական, Լեոյի խոսքերով ասած՝ դաշնակցության համար «հավիտենական ամոթ ու խայտառակություն»[2] հանդիսացող Ալեքսանդրապոլի պայմանագրից, դաշնակները փետրվարյան ավանտյուրայի օրերին դիմեցին Թուրքիայի օգնությանը։ 1921 թվականի մարտի 18-ին դաշնակցական «կառավարության» նախագահ Վրացյանը թուրքական կառավարությանը գրում է. «...Հայաստանի կառավարությունը խնդրում է Թուրքիայի Ազգային Մեծ ժողովի կառավարությանը, հանուն երկու ազգերի փոխադարձ շահի ըստ կարելույն շուտ՝

1. Վերադարձնել Երևան Տաճկաստանում գտնվող հայ զինվորական ռազմագերիներին։

2. Որոշ պայմաններով հայ բանակին ռազմամթերք և առաջին հերթին ռուսական երեքգծանի հրացանի, կամ տաճկական մաուզերի փամփուշտներ տալ և կամ Ռոսի ու Լեբելի սիստեմի հրացաններ։ Եվ

3. Հաղորդել մեզ, թե արդյոք Ազգային Մեծ ժողովի կառավարությունը հնարավոր է գտնում Հայաստանին զինվորական օժանդակություն հասցնել և եթե կարող է, ինչ չափով ու եղանակով և ինչ ժամանակամիջոցում։

Սույն դիմումն անելով՝ Հայաստանի կառավարությունը հենվում է այն բարեկամական հարաբերությունների վրա, որոնց հիմք են դրված Ալեքսանդրապոլի դաշնագրից սկսած և որոնք խանգարված էին բոլշևիկյան իշխանության ժամանակ»[3]։ Հետևապես պատահական չէր, որ փետրվարյան ավանտյուրայի նախապատրաստման և իրագործման մեջ ներգրավվեցին նաև թուրքական դեսպան Բեհաեդդին-Բեյը և նրա օգնական Հյուսեին էֆենդին։ Հայկական ՍՍՌ պետական կենտրոնական պատմական արխիվում կան հավաստի փաստաթղթեր, որոնք վկայում են, որ փետրվարյան ավանտյուրայի օրերին դաշնակների հետ միասին Երևան մտավ նաև Հյուսեին էֆենդու ջոկատը և մասնակցություն ունեցավ կոմունիստների նկատմամբ կատարված բռնություններին։

Դաշնակների հրոսակախմբերի կողմից Երևանի գրավումը թուրքական ղեկավար շրջանները դիմավորեցին մեծ խանդավառությամբ։ Պատահական չէր, որ փետրվարի 18-ին Երևանում կայացած մի միտինգում հանդես եկավ թուրքական կառավարության ներկայացուցիչը և ջերմորեն ողջունելով դաշնակների տարած «հաղթանակը»՝ ասաց. «Շնորհավորում եմ ձեզ քաղաքացիներ և ընկերներ այս հանդիսավոր օրվա առթիվ, որ ձեզ հաջողվեց վռնդել իրենց բանվորա-գյուղացիական իշխանություն համարող, ձեզ մոտ

[1] Տե՛ս ՍՄԿՊ ԿԿ-ին կից ՄԼԻ-ի Հայկ. ֆիլ. արխիվ, ֆ. 4033, գ. 1024, նույնը տե՛ս «Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիան և սովետական իշխանության հաղթանակը Հայաստանում» (փաստաթղթերի և նյութերի ժողովածու), Երևան, 1960, էջ 408—411։

[2] Տե՛ս Լեո, Անցյալից, Թիֆլիս, 1925, էջ 455։

[3] Տե՛ս «Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիան և սովետական իշխանության հաղթանակը Հայաստանում» (փաստաթղթերի և նյութերի ժողովածու), Երևան, 1960, էջ 505—506։

բռնիորեն սերմանված արյունախումներին ու գազաններին»[1]։ Ապա նա կոչ է անում դաշնակներին՝ ուժեղացնել պայքարը բանվորա-գյուղացիական իշխանության դեմ։ «Ես համոզված եմ,— լկտիորեն ասում է նա իր այդ ճառում,— որ այսուհետև ևս հայ ժողովուրդը թույլ չի տա նրանց... հրի ու սրի մատնել ամբողջ ժողովրդական սեփականությունը և հայրենիքի փառապանծ որդիներին»[2]։

Ինչո՞ւ էր թուրք ջարդարարը, միլիոնավոր անմեղ հայերի արյունարբու դահիճը, հազարավոր հայկական գյուղերի, ավանների ու քաղաքների կողոպտողն ու հրկիզողը հրճվում դաշնակների «հաղթանակով» և իրեն ձևացնում հայ ժողովրդի «բարեկամ»։ Պատասխանը պարզ է. ո՛չ միայն այն պատճառով, որ դաշնակները զորագրվել էին թուրքական արյունոտ սայլաշարին, դարձել նրանց դաշնակիցը, ո՛չ միայն այն պատճառով, որ թուրք զավթիչները դաշնակների հաղթանակի հետ էին կապում 1920 թվականի դեկտեմբերի 2-ի Ալեքսանդրապոլի պայմանագրի իրականացման իրենց հույսերը, մի պայմանագիր, որը ռեալ հնարավորություններ էր ընձեռում թուրքերին՝ իրագործելու ամբողջ Հայաստանի նվաճման ու հայ ժողովրդի բնաջնջման իրենց վաղեմի ոճրագործ ծրագիրը, այլև այն պատճառով, որ դաշնակների հաղթանակը հնարավորություն կտար Թուրքիային Հայաստանը վերածել հարմար ռազմաստրատեգիական բազայի՝ Վրաստանը և Ադրբեջանը նույնպես զավթելու համար։ Այդ այնքան ակնբախ էր, որ թուրք հռետորը իր պրովոկացիոն այդ ելույթում հաջողություններից արբեցած, հայտարարեց. «Ողջունում եմ Ձեզ և այն բանի համար, որ Թիֆլիսն արդեն մեր ձեռքումն է, իսկ Բաքվում ապստամբություն է նման բանդիտների դեմ և շատ շուտով մեր զորքերով, Ախալցխայի վրայով կշարժվենք Բաքու... Թուրքական զորքի անունից հայտնում եմ Ձեզ անկեղծ շնորհավորանքներ ներկա մեծ տոնի առթիվ. նրանք վստահացնում ու երդվում են, որ անհրաժեշտ րոպեին բոլորը կհամախմբվեն Անդրկովկասում։ Այժմ դիմեցեք գործի, քանի որ թշնամին դեռևս մեր թիկունքումն է»[3]։

Թուրքիայի ներկայացուցիչները ո՛չ միայն միտինգներում էին ելույթ ունենում նման պրովոկացիոն ճառերով, այլև պաշտոնական այցի էին գնում ավանտյուրայի ղեկավարներին և նրանց խոստանում իրենց կառավարության օգնությունը։ Այդպիսի «այցելություններից» մեկի մասին «Ազատ Հայաստան» թերթը (այսպես կոչված «Հայրենիքի փրկության կոմիտեի» օրգանը) փետրվարի 25-ին հաղորդում է. «Տաճկաստանի ներկայացուցիչը Երևանում— Բեհաեդդին էֆենդին, երեկ, ամսույս 24-ին ժ. 12-ին այցելեց «Հայրենիքի փրկության կոմիտեի» նախագահ Ս. Վրացյանին։ Զրույցի ժամանակ Բեհաեդդին էֆենդին կրկին անգամ հայտնեց բարեկամական զգացումներ և հույս հայտնեց, որ Տաճկաստանի և Հայաստանի կառավարությունների միջև շուտով կստեղծվեն մշտնջենական բարեկամական փոխհարաբերություններ»[4]։

Այս ամենից հետո արդյո՞ք քաղաքական անբարոյականություն չէ, երբ այսօր դաշնակ «ջոջերը» փորձում են թաքցնել այդ տարիներին իրենց շրջադարձը դեպի Թուրքիան, նրա հետ ամոթալի ու հայ ժողովրդի համար կործա-

¹ ЦГАОР Арм. ССР, ф. 113, оп. 3, д. 47, л. 2.

² Նույն տեղում։

³ Նույն տեղում։

⁴ «Ազատ Հայաստան», 25 փետրվարի 1921 թ.։



նարար գործարքի մեջ մտնելու փաստերը, իսկ դաշնակցական թերթուկներն ու նրանց ձախողակ գրչակները սփյուռքահայերին մոլորեցնելու և նրանց ռուսների հետ թշնամացնելու նպատակով, նենգափոխելով պատմությունը՝ գրում են. «Թուրքն ու բոլշևիկը... ձեռք ձեռքի տված քանդեցին Հայաստանի անկախությունը և իրարու միջև բաժանեցին զայն»[1]։

Հայ ժողովրդի հանդեպ դաշնակների բացարձակ դավաճանությունն այնքան ակնհայտ է, որ այլևս հարկ չկա մեկնաբանումների։ Մնում է ավելացնել, որ դաշնակներն, ի հակադրություն հայ ժողովրդական մասսաների հաստատ ու հետևողական սովետական-ռուսական օրիենտացիայի, նրա համար այդ բախտորոշ պահին կողմնորոշվելով դեպի Թուրքիան, կամա թե ակամա, մեղսակից դարձան հայ ժողովրդի հանդեպ թուրք ջարդարարների կատարած արյունալի ոճրագործություններին։ Տեղին է հիշել հայ մեծ բանաստեղծ Հովհ. Թումանյանի այն խոսքերը թե՝ «Հայկական հարցը վայրենի կոտորածների և կեղեքումների հարց է, հալածանքների ու գաղթականությունների հարց է. նա գերազանցորեն ֆիզիկական գոյության խնդիր է։ Եվ նրա հաջողությունը միշտ կապված է եղել Ռուսաստանի հաջողության հետ։ Ով վեր է կացել Ռուսաստանի հաջողության դեմ, վեր է կացել հայկական հարցի հաջողության դեմ և ով Ռուսաստանի դեմ պաշտպանել է Տաճկաստանին, նա մեղսակից է տաճկական գազանություններին ու հայկական սարսափներին։

Նա պատասխանատու է հայ ժողովրդի ծով արյան ու մարդկության պատմության առաջ»[2]։

Այս է պատմական ճշմարտությունը, որը դաշնակ գրչակները և նրանց մրոտած թերթուկները վախենում են ասել իրենց ընթերցողներին։

◆◆◆

ՄՈՏ կես դար է, ինչ արևմտյան իմպերիալիստները մամուլի ու գրականության, ռադիոյի ու հեռուստատեսության, կինոյի ու թատրոնի և պրոպագանդայի բոլոր այլ միջոցներով փորձում են ռուսներին ներկայացնել որպես «ագրեսորներ», իսկ սովետական ազգային ռեսպուբլիկաները՝ որպես «Ռուսաստանի գաղութներ»։ Իրենց տերերի հրամանով նույնը կրկնում են դաշնակները, ուկրաինական նացիոնալիստները, վրաց մենշևիկները, ադրբեջանական մուսավաթականները, Միջին ասիական խաներն ու էմիրները, Մերձբալթյան բարոնները և արտասահմանում ծվարած բուրժուա-նացիոնալիստական էմիգրանտների ողջ խաժամուժը։

Դաշնակ գրչակներն անընդունակ են հասկանալու, որ Հոկտեմբերյան սոցիալիստական ռևոլյուցիան փշրեց «ժողովուրդների բանտ» հանդիսացող ցարական Ռուսաստանում թագավորող ազգային լծի շղթան, առհավետ վերջ դրեց նախկինում իրավազուրկ ազգերի ու ազգությունների ճնշմանը, կեղեքմանն ու հարստահարմանը, նրանց համար ապահովեց լիակատար ազատություն, իրավահավասարություն, պետական անկախություն և բոլորովին նոր ու փառահեղ դարագլուխ բացեց սովետական ժողովուրդների բարեկամության պատմության մեջ։ Նրանք անընդունակ են ըմբռնելու, որ հոկտեմբերյան ռևոլյուցիայի ծնունդ սոցիալիստական ազգերի հանդես գալու և ձևավորման,

¹ «Հառաջ», 13 հունվարի 1961 թ.։

² Հովհ. Թումանյան, Երկերի ժողովածու, հ. 4, Երևան, 1951, էջ 230—231։

սովետական ռեսպուբլիկաներից կամավոր հիմունքներով ֆեդերատիվ մեծ միության կազմակերպման, սոցիալիստական համընդհանուր էկոնոմիկայի ու կուլտուրայի ստեղծման, ՍՄԿՊ-ի վարած լենինյան ազգային քաղաքականության շնորհիվ ՍՍՌՄ-ում ո՛չ միայն հիմնովին փոփոխության է ենթարկվել ազգերի հին հասկացությունը, այլև նրանց հարաբերություններն արմատականորեն տարբերվում են բուրժուական ազգերի հարաբերություններից։ ՍՍՌՄ-ում ազգային հարաբերությունները ստացել են բոլորովին նոր որակ, նոր էություն։ Դա ուրույն դասակարգային կազմ, հոգևոր ու բարոյական բոլորովին նոր կերտվածք, միևնույն սոցիալ-քաղաքական շահեր և նպատակներ ունեցող իրավահավասար ու իրավազոր սոցիալիստական ազգերի հարաբերություն է։ Սովետական բազմազգ ժողովուրդների մեջ հաղթանակել է պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարը և ՍՍՌՄ-ի մեջ մտնող ավելի քան հարյուր ազգերի ու ազգությունների միջև հաստատվել քաղաքական, իրավական, տնտեսական և կուլտուրական լիակատար հավասարություն։

Դաշնակ «տեսաբաններն» անընդունակ են տեսնելու և ըմբռնելու, որ «սոցիալիզմի պայմաններում տեղի է ունենում ազգերի ծաղկում, ամրապնդվում է նրանց սուվերենությունը։ Ազգերի զարգացումը կատարվում է ոչ թե ազգային երկպառակության, ազգային սահմանափակության ու էգոիզմի ուժեղացման ուղիներով, ինչպես դա տեղի է ունենում կապիտալիզմի օրոք, այլ նրանց մերձեցման, եղբայրական փոխօգնության ու բարեկամության ուղիներով»[1]։

Դաշնակցական մամուլի ճիգերը՝ ստի ու պրովոկացիայի միջոցով մոլորեցնել սփյուռքահայ աշխատավորական մասսաներին և նրանց կտրել իրենց մայր հայրենիքից՝ Սովետական Հայաստանից, գլխովին ձախողվել են։ Տասնյակ հազարավոր սփյուռքահայեր վերադարձել են Սովետական Հայաստան և ակտիվորեն ներգրավվել սոցիալիստական ստեղծագործ աշխատանքի մեջ։ Շատերն էլ սրտատրոփ ու կարոտալի սիրով սպասում են հայրենիք վերադառնալու իրենց հերթին։

Դաշնակ կեղծարարների և սոցիալիզմի բոլոր թշնամիների ձախողակ փորձերը՝ պատմության նենգափոխման միջոցով սեպ խրել սովետական ժողովուրդների բարեկամության մեջ, անցել են ապարդյուն։ Գնալով է՛լ ավելի է ամրապնդվում ու հզորանում հայ և ռուս ու սովետական բոլոր ժողովուրդների մեծ բարեկամությունը։

---

[4] ՍՄԿՊ ծրագիրը, Երևան, 1961, էջ 135։

Ջ. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ

Պատմական գիտությունների թեկնածու

# ԱՐԵՎՄՏԱՀԱՅՈՒԹՅԱՆ ՈՂԲԵՐԳՈՒԹՅՈՒՆԸ ԱՌԱՋԻՆ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՏԱՐԻՆԵՐԻՆ

ՀԱՅ ժողովուրդն իր բազմադարյան պատմության քառուղիներում գոյատևման, սոցիալական ու ազգային ազատագրության համար մաքառումների դաժան ուղի է անցել, օրհասական պահեր է ապրել։ Նա առանձնապես ծանր փորձության ենթարկվեց հիսուն տարի առաջ՝ իմպերիալիստների սանձազերծած առաջին համաշխարհային պատերազմի դժնդակ տարիներին։

Հիսուն երկար ու ձիգ տարիներն անկարող են եղել մոռացության տալու այն ողբերգությունը, որ ապրեց հայ ժողովրդի արևմտյան հատվածը 1915 թվականին։ Եվ այսօր զանգվածային ոճիրից վերապրող հայ մարդիկ, երեկվա որբերը, նրանց զավակներն ու թոռները, Սովետական Հայաստանում թե սփյուռքում արդար զայրույթով են հիշում թուրքական ռեակցիոն կառավարողների ու նրանց իմպերիալիստական հովանավորողների ժողովրդասպան չարագործությունները։

Դարեր շարունակ թուրքական սուլթաններն իրենց ներքին քաղաքականությունը խարսխում էին ռասսայական և կրոնական սանձարձակ խտրականության վրա, միջնադարյան, ֆեոդալական նորմաներով կառավարվող օսմանյան պետականության հարվածներն ուղղում ճնշված ժողովուրդների՝ հայերի, արաբների, սլավոնների արդարացի ազատագրական պայքարը ճնշելու նպատակին։ Իրենց ռեակցիոն, բռնակալական տիրապետությունը պահպանելու գլխավոր և մշտական զենքը նրանք տեսնում էին յաթաղանի միջոցով իրականացվող ռասիզմի, գործնականում թուրք ազգի բացառիկության քարոզը իրականացնելու մեջ։ Երեսուն տարի կառավարած և «արյունոտ» սուլթանի տիտղոսն ստացած Աբդուլ-Համիդը հարյուր հազարավոր հայերի խողխողեց։

1908 թվականին Թուրքիայում կատարված հեղաշրջումից հետո իշխանության գլուխ անցած երիտթուրքական «Իթթիհադ»՝ շովինիստական գաղափարներ և գործելակերպ որդեգրած պարտիան երկրում և ոչ մի էական վերափոխություն չիրականացրեց։ Սուլթան Աբդուլ-Համիդի ժամանակվա համեմատությամբ աշխատավորության դրությունը ոչնչով չբարելավվեց։ Ագրարային ոլորտում շահագործման ֆեոդալական, թուրքական ձևերը շարունակվում էին։ Առանձնապես սրվել էր ազգային հարցը։ Արտաքին-քաղաքական պարտու-

թյուններ կրելով Աֆրիկայում, Բալկաններում և ներքին կյանքում մերձենալով հետադիմական ուժերի հետ, երիտթուրքական շովինիստները ձգտում էին պահպանել թուրքական բռնակալական կայսրությունը։ Նրանք իրենց կատաղությունն ուղղեցին Օսմանյան կայսրության ո՛չ թուրք ժողովուրդների, մասնավորապես, հայ ժողովրդի դեմ։ Որդեգրելով «Թուրքիան՝ թուրքերի համար» նշանաբանը, նրանք պետական քաղաքականության աստիճանի բարձրացրին պանիսլամիզմի, պանթուրքիզմի գաղափարախոսության պրոպագանդան և պրակտիկան։

Արևմտահայերի ազգային-ազատագրական պայքարը հաղթահարելու, նրանց ազգային և կուլտուրական ինքնությունն անտեսելու և ոտնահարելու, պանթուրանիզմի կենսագործման ճանապարհին հայ ժողովրդի դիմադրությունը հրով ու սրով վերացնելու քաղաքականությունը դրվեց գործնական հիմքի վրա։ Պատմական փաստերը հաստատում են, որ մինչև առաջին համաշխարհային պատերազմի սկիզբը, երիտթուրքական կլիկն արդեն մշակել էր արևմտահայության բնաջնջման կանխբալական ծրագիրը։ Այդ բովանդակությամբ հատուկ որոշում էր ընդունվել տակավին 1911 թվականին՝ Սալոնիկում կայացած իրենց համագումարում։

Առաջին համաշխարհային իմպերիալիստական պատերազմն այն պատեհ առիթն էր, որ պետք է ձեռբազատեր ժողովրդասպան պլանն իրականացնելու և, միաժամանակ, այդ գործողությունը պատերազմական իրավիճակով պատճառաբանելու համար։ Չէ՛ որ գենոցիդի (բառացի՝ ցեղասպանություն) քաղաքականությունը մեծ մասշտաբներով գործնական հիմքի վրա է դրվում պատերազմների ժամանակ։ Թուրքական իմպերիալիստները Գերմանիային փարվելով ձգտում էին իրագործել իրենց էքսպանսիոնիստական, պանթուրանիստական ֆանտաստիկ պլանները, զավթել Անդրկովկասը, հասնել Վոլգայի ափերը և Միջին Ասիա։

Համաշխարհային ասպարեզում տնտեսական, ռազմական և քաղաքական տեսակետից ելակետային դիրքեր նվաճած իմպերիալիստական մեծ տերությունների համեմատությամբ, թուրքական իմպերիալիզմը լղար էր, որոշիչ դեր չէր կարող խաղալ միջազգային կյանքում։ Բայց այն ռազմատենչ ձգտումներն ու գործելակերպը, որ դրսևորում էր այդ իմպերիալիզմը, մահացու վտանգ էին հարևան երկրների և, մասնավորապես, հայ ժողովրդի համար։ «Մեր մասնակցությունը համաշխարհային պատերազմին արդարացվում է մեր ազգային իդեալով»— պատերազմի մեջ մտնելու օրը հայտարարեցին երիտթուրքական կառավարողները։ Նրանք հայտարարում էին, որ ձգտելու են հաստատել «կայսրության բնական սահմանները, որոնք իրենց մեջ կառնեն և կմիավորեն մեր ռասայի բոլոր ճյուղերը»։ Այս նպատակին հասնելու ճանապարհին թուրքական մարտաշունչ շովինիզմն առաջին հերթին ծրագրել էր ոչնչացնել հայերին, կայսրությունը վերակազմել միայն զուտ «համաթուրքական հիմքի վրա»։

Արևմտահայության կեսից ավելին ապրում էր Արևելյան Անատոլիայի վեց նահանգներում։ Մեծ Հայքի իր բնօրրանում, կռթնած իր պապենական հողին, մահու և կենաց կռիվ մղելով իր տարրական իրավունքների, սոցիալական և ազգային ազատության համար, նա իր հայացքը միշտ հառում էր դեպի հյուսիս՝ իր ավանդական հովանավոր Ռուսաստանին։ Պատերազմը



Թուրքիայի դեմ նրան ներկայանում էր որպես փրկություն, թուրքական ջարդարարների դարավոր լուծը թոթափելու մի միջոց։

Ռեալ իրականությունը, ազատագրական պայքարի կոնկրետ պայմանները հաշվի չառնելով, ռուսահայ բուրժուազիան, նրա կուսակցությունները, սրանց ետևից ընթացող հայ հասարակական ուժերը կարծում էին, թե հասել է պատմական պահը, որպեսզի ամբողջ հայ ժողովուրդը մեկընդմիշտ ընտրություն կատարեր արյունռուշտ թուրքական ֆեոդալական բռնակալության և ցարական Ռուսաստանի՝ ճիշտ է, նույնպես բռնապետության, բայց և միաժամանակ Թուրքիայի համեմատությամբ զարգացման ավելի բարձր մակարդակի վրա գտնվող, պատմական փորձով դարավոր հովանավորի միջև։ Անտեսվում էր այն հանգամանքը, որ «պատերազմը մղում են բոլոր մեծ տերությունները՝ աշխարհը կողոպտելու, բաժանելու համար, շուկաների համար, ժողովուրդներին ստրկացնելու համար», որ «Ռուսաստանի, Անգլիայի, Ֆրանսիայի հաղթանակը» նույնպես «հերձամահ կանի Հայաստանին»[1]։

«Այսօրվա ահավոր կռվի սկզբից իսկ մեզ բոլորիս համար պարզ է այն, գուցե և դառը, սակայն ակներև հանգամանքը,— 1914 թ. հոկտեմբերին գրել է Վահան Տերյանը,— որ մեր առջև դրված է ոչ միայն մեր ազգային կուլտուրական ապագայի հարցը, այլ հայ ժողովրդի սոսկ ֆիզիկական գոյության խնդիրը»[2]։

Թուրքական դժնի իրականությանը քաջածանոթ մարդիկ կանխազգում էին, թե ինչպիսի անելանելի վիճակ կստեղծվի արևմտահայության համար պատերազմական գործողությունների, հակահայկական շովինիստական թշնամության գրգման հետևանքով։ Հիրավի, պատերազմը մի պատեհ առիթ էր, որպեսզի Էնվեր-Թալեաթ-Ջեմալ երիտթուրքական կլիկը ձեռնամուխ լիներ արևմտահայության զանգվածային տեղահանության և բնաջնջման ոճրապարտ ծրագրի իրականացմանը։ Այդ մասին թուրքական կառավարության արձակած գաղտնի հրամաններից մեկում ուղղակի ասված էր, որ Իթթիհադը «որոշել է ամբողջովին ոչնչացնել Թուրքիայում բնակվող հայությանը։ Այս հրամանի ու որոշման հակառակորդները պետության պաշտոնական կազմում չեն կարող մնալ։ Կին, երեխա, ծերունի, նկատի չառնելով, խղճի խայթին ականջ չդնելով, ոչնչացման միջոցները որքան էլ զարհուրելի լինեն, նրանց գոյությանը վերջ պետք է տալ»։ Բազմաթիվ այլ հրամաններում թուրքական արյունկզակ կառավարողները տեղական իշխանություններից պահանջում էին անխնա ոչնչացնել հայ մանուկներին ու կանանց, երիտասարդներին ու ծերերին։ Այդ նպատակով ստեղծված երիտթուրքական գործադիր հանձնաժողովի պլանով նախ զինաթափվեց, թիկունքային աշխատանքների ուղարկվեց, ապա մորթոտվեց օսմանյան բանակում ծառայող 50—60 հազարի հասնող հայ երիտասարդությունը։ 1915 թվականի ապրիլի 24-ից սկսած կայսրության մայրաքաղաք Կոստանդնուպոլսից տարագրվեցին, ապա աքսորի ճանապարհին խումբ-խումբ ոչնչացվեցին հայ անվանի մտավորականները՝ գրողները, բժիշկները, իրավաբանները, արվեստագետները, որոնք մեծ ծառայություն էին մատուցել ո՛չ միայն հայկական, այլև թուրքական մշակույթի զարգացման գործին։ Հայ ժողովուրդը կորցրեց այնպիսի ականավոր դեմքեր, որպիսիք են՝ Գրիգոր

[1] Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 21, էջ 560—562։

[2] «Մշակ», 2. 10. 1914 թ., № 220։

Զոհրապը, Սիամանթոն, Դանիել Վարուժանը, Կոմիտասը, Ռուբեն Սևակը և շատ ուրիշ քանքարավոր գործիչներ։

Այնուհետև, ամբողջ 1915 և հետո 1916 թվականների ընթացքում ամենայն վանդալությամբ տեղահանվեց, Միջագետքի անապատները աքսորվեց ու բնաջնջվեց արևմտահայության մեծ մասը։ Արևմտյան Հայաստանը լիապես և ընդմիշտ կլանելու, հայ ժողովրդի ազգային ընդհանրությունը ոչնչացնելու, նրա ազատագրական միանգամայն արդարացի ձգտումները խեղդելու վաղօրոք մշակված ծրագիրն իրականացնելու ճանապարհին թուրքական ջարդարարները գործադրեցին ճիզվիտական մեթոդներ, եղեռնական եղանակներ. երեխաներին խեղդեցին գետերում, մայրերին այրեցին խարույկների վրա, ավերեցին ու ոչնչացրին պատմական կոթողները, կուլտուրայի մեծագույն արժեքները։ Արևմտյան Հայաստանի հայաշատ նահանգներն ամայացան։ Հարյուր հազարավոր մարդիկ դարձան անօթևան թափառականներ, հանգրվան գտան ռուսական հողում, օտար երկնակամարների տակ։

Արդեն 1915 թվականի օգոստոսի 31-ին Թալեաթը ցինիկորեն հայտարարում էր, թե հայկական հարց այլևս գոյություն չունի, թե իրենք այդ հարցը «լուծեցին» երեք ամսում, ինչը չէր կարողացել անել Աբդուլ Համիդը երեսուն տարում։ Թալեաթին լրացնում էր մյուս արնախումը՝ Էնվերը, պահանջելով մահի ճիրաններից մազապուրծ եղած և կենդանի մնացած հայերին ցրել կայսրության տարբեր մասերում, նրանց ձուլել թուրքերի հետ։ Թուրքական «Թանին» թերթը 1915 թ. աշնանը կառավարությանը կոչ էր անում «ոչնչացնել կամ բռնի կերպով մահմեդականացնել հայ կանանց Թուրքիայում»։

Այո՛, ամենուրեք՝ Խնուսում, թե Մանազկերտում, Բուլանխում, թե Խլաթում «...կոտորածներու գլուխ կանգնած էր իսկ կառավարությունը»[1]։ Հայաստանի արխիվներում պահպանվում են բազմաթիվ ականատեսների վկայությունները իրենց հայրենի գյուղերում և քաղաքներում թուրքական իշխանությունների կատարած զարհուրելի վայրագությունների մասին։ Առանձին նկարագրություններ այնպիսի փաստեր են վկայակոչում, որ մարդկային բանականությունն ու խիղճը անուժ են նույնիսկ ընկալելու այն ամենը, որ հայ ժողովրդի հետ կատարում էին թուրքական ճիվաղները։ 1915 թվականի սեպտեմբերի 21-ին տրված իր հրամանում մարդասպան Թալեաթը Հալեպի նահանգապետից պահանջում էր հայ երեխաների համար որբանոց չբացել, «զգացմունքներին անսալով» նրանց կերակրելու և կյանքը երկարաձգելու վրա ժամանակ չվատնել։ Իսկ հոկտեմբերի 3-ին հրամայում էր հայերին սպանողներին չպատժել և նրանց չարագործությունները ցինիկորեն որակում էր որպես «հայրենասիրական սուրբ պարտականություն»։

ՊԱՏԵՐԱԶՄԻ նախօրյակին, ինչպես հայտնի է, արևմտահայ ժողովրդի ինքնապաշտպանությունը բարձիթողի վիճակում էր. չկար զենք, զինամթերք, կռվելու միահամուռ ոգի, բացակայում էր կազմակերպվածությունը։ Իրեն ազատագրական պայքարի ակտիվ մասնակցի փետուրներով զարդարող դաշնակցությունը երիտասարդ թուրքերի հետ համագործակցելու իր արկածախնդրական ու վնասակար գործելակերպով, 1908 թվականից մինչև պատերազմի սկիզբը դավաճանական հարված էր

[1] ՀՍՍՌ ՊԿՊԱ, ֆ. 57, ց. 2, գ. 692, թ. 19։



հասցրել այդ պայքարի գործին։ Թուրքական կառավարությանը փարվելու հետ մեկտեղ, այդ կուսակցությունը դաշն էր կապել Անտանտայի, ցարիզմի հետ, դարձել վերջինիս կամակատարը Կովկասում։ Պատերազմի նախօրյակին խոսքով ընդունում էին, որ «տաճկական նացիոնալիզմը դեռ ոչ մի բարիք չի կատարել իր հայրենիքի համար, բայց նա շատ բան կարող է անել Տաճկաստանը կործանելու համար։ Օր առաջ պատրաստվենք, որպեսզի այդ կործանման անմիջական զոհը մենք չլինենք»[1]։ Բայց գործով հայկական բուրժուական կուսակցությունները ոչ միայն ոչինչ չարեցին այդ վտանգին դիմագրավելու համար, այլև իրենց վարած քաղաքականությամբ նպաստեցին արևմտահայության ողբերգության սաստկացմանը։ Նրանք բացի աղմկարարությունից, բազմաթիվ ու բազմազան թերթերի էջերում իրարամերժ, անպատասխանատու, սնապարծ հայտարարություններից կամ հեզության քարոզներից, ոչինչ չէին արել ժողովրդի ինքնապաշտպանությունը կազմակերպելու ուղղությամբ։ Դա մի դժնի շրջան էր, երբ ավելի ակնառու, քան երբեք, դրսևորվեց դաշնակցության բռնած կուրսի իրոք հակաժողովրդական ու ավանտյուրիստական բնույթը։ Եվ եթե հայ ժողովուրդը ինքնազոհ խիզախությամբ ինքնապաշտպանական արի մարտեր մղեց թշնամու գերազանց ուժերի դեմ Վանում և Շապին-Գարահիսարում, Մուսա լեռան վրա և Ուռհայում, ապա դա ապրելու ու գոյատևելու համար նրա անհաղթելի ոգու ճիգն էր։

Հերոսական դիմադրության այդ փոքրաթիվ օջախները, սակայն, անկարող էին կանխել այն ողբերգությունը, որին ենթարկվեց ամբողջ արևմտահայությունը։ Թուրքական կառավարողների մարդակերական գործելակերպը նոր ժամանակների պատմության մեջ ամենամասսայական բիոլոգիական գենոցիդի քաղաքականության սկիզբն էր, որն ավելի լայն մասշտաբներով ու տեխնիկական տեսակետից ավելի կատարելագործված մեթոդներով երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին կիրառեցին գերմանական ֆաշիստները հրեաների, սլավոնական և այլ ժողովուրդների նկատմամբ։ 1939 թվականի օգոստոսին Օբերզալցբուրգում կայացած ֆաշիստական վերնախավի մի խորհրդակցությունում, երբ Հիտլերը պահանջում էր «դուրս մղել և բնաջնջել ռուսներին, ուկրաինացիներին, չեխերին, բուլղարներին, լեհերին, բելոռուսներին», նա ներկաներին ցինիկորեն հիշեցնում էր առաջին համաշխարհային պատերազմի ժամանակ թուրքական ջարդարարների կողմից հայ ժողովրդի նկատմամբ կիրառված մեթոդները և բացականչում. «Այժմ, մեր ժամանակներում, այլևս ո՞վ է հիշում Թուրքիայում հայերի բնաջնջման մասին»։

Հիրավի, համաշխարհային պատմության մեջ 1915 թվականի մեծ եղեռնը կարելի է համեմատել երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին գերմանական ֆաշիստների կողմից կազմակերպված միլիոնավոր խաղաղ մարդկանց ոչնչացման, Մայդանեկի, Օսվենցիմի, Մաութհաուզենի և մահվան այլ ճամբարներում կատարված ավելի մեծ մասշտաբի մասսայական մարդասպանությունների հետ։

Առաջին համաշխարհային պատերազմի տարիներին Թուրքիայի ավագ դաշնակից կայզերական Գերմանիան, որը էքսպանսիոնիստական հեռու գնացող նպատակներ էր հետապնդում Մերձավոր և Միջին Արևելքում, ռազ-

[1] «Հորիզոն», № 275, 7.12, 1913 թ.։

մական թե կազմակերպչական տեսակետից հովանավորեց և օժանդակեց երիտթուրքական մարդասպաններին արևմտահայության բնաջնջման գործում։

Անտանտայի կառավարող շրջանները, բուրժուական գործիչները բացի փարիսեցիական ճառերից ու երկդիմի նենգ քաղաքականությունից, ոչինչ չձեռնարկեցին թուրքական ոճրագործների ձեռքը բռնելու, արևմտահայությունը կործանումից փրկելու ուղղությամբ։ Շատ բնական է, որ թալանչիական պատերազմ սանձազերծած, նոր երկրներ զավթելու, գաղութներ նվաճելու, ժողովուրդներին ստրկացնելու տենդով բռնված Անգլիան և Ֆրանսիան, Ամերիկայի Միացյալ Նահանգներն ու ցարական Ռուսաստանն անմիջապես դիվանագիտական գաղտնի սակարկության առարկա դարձրին այն տերիտորիան, որի տերը՝ արևմտահայությունը, ոչնչացվել էր։

Արևմտահայության համար ստեղծված դժոխային կացության ամենակրիտիկական պահին արևմտյան իմպերիալիստներն ամենալկտի փարիսեցիությամբ հայանպաստ հայտարարություններ էին անում, իսկ գործնականում դիվանագիտության պատմության մեջ «Սայքս-Պիկոյի» համաձայնագիր անվանումն ստացած բանակցություններով իրականացնում իրենց զավթողական, գաղութատիրական պլանները Մերձավոր Արևելքում։ Եվ ինչպես Վ. Ի. Լենինն է նկատել՝ «Եթե գերմանական ավազակները ռեկորդ են խփել իրենց ռազմական դատաստանների գազանության տեսակետից, ապա անգլիական ավազակները ռեկորդ են խփել ոչ միայն կողոպտված գաղութների քանակությամբ, այլև իրենց նողկալի կեղծավորության նրբությամբ» [1]։

1916 թ. հունվարին միջպարտիական գզվռոցի ժամանակ ԱՄՆ-ի նախկին պրեզիդենտ Թ. Ռուզվելտը մեղադրանք էր շպրտում Վիլսոնի գլխավորած կառավարությանը, հայտարարելով, թե քանի որ ԱՄՆ-ը «չփորձեցին հանդես գալ այդ գազանությունների (հայկական կոտորածների) դեմ», ապա պետք է բաժանեն «կատարված հանցագործության գլխավոր պատասխանատվությունը»։ Պատահական չէ, որ Կ. Պոլսից մեկնող ամերիկյան դեսպան Մորգենթաուին ճանապարհող արյունկզակ Թալեաթը շնորհակալություն էր հայտնում նրան «արդարամտության» համար։

Նոր խաբեության զոհ դարձան հայկական քաղաքական-հասարակական այն շրջանները, այն միամիտ քաղաքագետները, որոնք ակնկալություններ ունեին իմպերիալիստական Արևմուտքից, նրա հետ էին կապում իրենց ժողովրդի ազատագրման, սեփական պետականություն ստեղծելու հույսը, կարծում էին, թե «Եվրոպան, որ անասուններին հովանավորելու հնարավորություններ ունի, մի՞թե կարող է թողնել, որ միլիոնավոր մարդիկ յաթաղանի զոհ դառնան» [2]։ Իմպերիալիստական տերությունները սառը ջուր լցրին այդպիսի տղայամիտ մարդկանց ակնկալությունների վրա։

Արևմտյան իմպերիալիզմն իր սանձազերծած զավթողական պատերազմով, հայկական հարցում վարած տրադիցիոն աղետաբեր քաղաքականությամբ նպաստեց արևմտահայության գենոցիդին, որը գործնականում թուրքական շովինիստներն իրականացրին գերմանական միլիտարիստների հետ ձեռք-ձեռքի տված։ «...Կրկին քաղաքակիրթ ազգերի աչքի առաջ կոտորվեց, մորթվեց հայ ժողովուրդը անմռունչ ու անպաշտպան...»,— արձանագրում էր դեռևս երեկ

---

[1] Ընտիր երկեր, հ. 3, էջ 21։

[2] «Հորիզոն», 18. 5. 1913 թ., № 108։



եվրոպական իմպերիալիստական տերությունների գովքն անող «Մշակը»։ Թերթը խոստովանում էր, որ «ծավալողական, իմպերիալիստական ձգտումները կլոխեն կանգնեն հավատարմության, նահատակության և արդարության վրայեն։ Դիվանագիտությունը խիղճ չունի...» (№ 212, 24. 9. 1916)։ «Բրիտանական կառավարության քաղաքականությունը,— հետագայում գրել է Լլոյդ Ջորջը,— ճակատագրական անխուսափելիությամբ հանգեցրեց 1895—1897 և 1909 թթ. սարսափելի սպանդներին և 1915 թվականի ամենասոսկալի կոտորածին»։ Պատմությունը կրկին ու կրկին հաստատեց այն ճշմարտությունը, որ միջազգային իմպերիալիզմը հայկական հարցը միշտ որպես խրտվիլակ է օգտագործել Թուրքիային վախեցնելու, նրան ստիպելու անել այն, ինչը համապատասխանում էր եվրոպական մեծ տերությունների շահերին։ Սակայն նման գործելակերպի ամենացայտուն դրսևորման պահին անգամ որքա՜ն երեսպաշտություն և քստմնելի կեղծավորություն կար եվրոպական դիվանագետների ճառերում, որքա՜ն կեղծիք կար նրանց հաճոյացող բուրժուական լրագրողների ու գրչակների ստեղծած թղթի սարերում։

«Վա՜յ հայերին,— գրել է հայ ժողովրդի բարեկամ նորվեգացի դեմոկրատ Ֆրիտյոֆ Նանսենը,— որ նրանք երբևիցե ներքաշվել են եվրոպական քաղաքականության մեջ։ Շատ ավելի լավ կլիներ նրանց համար, եթե Հայաստանի անունը երբեք չարտասանվեր որևէ եվրոպական դիվանագետի կողմից» [1]։

ԹՈՒՐՔԱԿԱՆ հանցավոր կառավարողների ոճրագործությունն ու նրանց իմպերիալիստական հովանավորողների հետևողական դատապարտմամբ հանդես եկան համաշխարհային սոցիալիստական, բանվորական շարժման ականավոր գործիչները, պատերազմի դեմ, ժողովուրդների միջև բարեկամության և խաղաղության հաստատման պայքարին նվիրված մարտիկները։

Հանդես գալով գերմանական միլիտարիզմի, միջազգային իմպերիալիզմի հետևողական դատապարտմամբ, գերմանական պրոլետարիատի առաջնորդ, համաշխարհային սոցիալիստական շարժման ականավոր գործիչ Կարլ Լիբկնեխտն անարգանքի սյունին գամեց թուրքական ջարդարարներին և նրանց գերմանական հովանավորողներին։ Հայ ժողովրդի դեմ սարքված արյունոտ դավադրության կապակցությամբ նրա հարցապնդումները գերմանական ռայխստագում 1916 թվականի սկզբին պատռում էին թուրքական դահիճների գերմանական հովանավորների դիմակը։

1916 թվականի հուլիսի 4-ին, հակապատերազմական պրոպագանդայի և գործունեության ամբաստանությամբ բանտ նետված Կարլ Լիբկնեխտը դատարանին հղած իր նամակում, քարը քարի վրա չէր թողնում պատերազմում Գերմանիայի հետապնդած «ազատագրական միսիայի» մասին գերմանական իմպերիալիստների խաբեությունից, դատապարտում նրանց դաշինքը Թուրքիայի հետ, որն «իր ձեռքերը թաթախել է հայերի արյան մեջ և այս պատերազմի ժամանակ անսահմանորեն ավելացրել իր մեղքը, ամենադաժան կոտորած սարքելով դժբախտ հայ ժողովրդի նկատմամբ» [2]։

---

[1] F. Nansen, Armenia and the Near East, London, 1928, p. 328.

[2] *К. Либкнехт,* Мой процесс по документам, пер. с немецкого, Петроград, 1918, стр. 54.

Թուրքական ջարդարարական քաղաքականության դատապարտմամբ հանդես եկավ Բուլղարիայի բանվորական սոցիալ-դեմոկրատական (տեսնյակների) պարտիան, որը պայքարում էր միլիտարիզմի դեմ, հանուն պրոլետարական ինտերնացիոնալիզմի վեհ սկզբունքների։ Իրենց 21-րդ համագումարում բուլղարական սոցիալիստները բողոքի հատուկ բանաձև ընդունեցին «հայ ժողովրդին թուրքական բարբարոսական օլիգարխիայի կողմից ոչնչացնելու դեմ»։

Ելույթ ունենալով կոմունիստական ինտերնացիոնալի երրորդ կոնգրեսում (1921 թ.), Բուլղարիայի կոմունիստական կուսակցության հիմնադիրներից և համաշխարհային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչներից մեկը՝ Վ. Կոլարովն ասում էր, որ հայ «ժողովուրդն ունի ամենաողբերգական պատմությունը։ Այդ պատմության ամբողջ ընթացքում նա առանձին ազգերի միջև թշնամության առարկա է հանդիսացել, մի թշնամություն, որ համառորեն պաշտպանում էր թուրքական հին կարգի բարբարոսական բռնակալությունը։ Այդ ժողովուրդը զուր կերպով բազմիցս դիմում էր, այսպես կոչված, քաղաքակրթված պետությունների մարդկային զգացումներին։ Այդ կոչերին հետևում էին լոկ նոր արյունահեղություններ։ Վերջին անգամ, եվրոպական պատերազմի ժամանակ, հայ ժողովուրդն ուզում էր Անտանտայի տերություններին ցույց տված իր օգնության միջոցով ազատություն և ապրելու իրավունք նվաճել, բայց նրան խաբեցին իր սպասումների մեջ։ Նա նորից ֆանատիզմի զոհ դարձավ։ Բայց այդ արյունահեղությունից հետո հայ ժողովուրդն իր հայացքն ուղղեց Ռուսաստանին և հետևեց նրա պրոլետարիատի օրինակին»։

Ֆրանսիական ականավոր դեմոկրատ գրող Անատոլ Ֆրանսը «ահռելի ոճրագործություն» էր որակում հայ ժողովրդի բնաջնջման թուրքական քաղաքականությունը, որը «կրկնվել էր բազմիցս և որ ավելի քան մեկ միլիոն ժողովրդի կորստյան պատճառ դարձավ»։ Բազմաթիվ առաջադիմական գործիչներ թուրքական ոճրագործության օրերին իրենց նվիրեցին արևմտահայության ծանր վիճակը համաշխարհային հասարակայնությանը ներկայացնելու գործին, հանդես եկան թուրքական ջարդարարության, իմպերիալիստական պատերազմի կազմակերպիչների դատապարտմամբ։ Ռուս առաջադեմ, դեմոկրատ գործիչները հանդես էին գալիս մահվան դատապարտված արևմտահայության բեկորները փրկելու պահանջով, անարգանքի սյունին էին գամում թուրքական ջարդարարներին ու նրանց իմպերիալիստական հովանավորներին։ Այս գործում առանձնապես մեծ են Վալերի Բրյուսովի գործադրած ջանքերն ու ծառայությունները։ Վ. Բրյուսովը, «Էմիլ Վերհարնը Հայաստանի մասին» հոդվածում ցույց էր տալիս մեծ բելգիացու հումանիզմը, նրա համակրանքը հայ ժողովրդի նկատմամբ։ Բրյուսովը գրում էր, որ «... Գերմանիայի թելադրանքով և աճիկների ձեռքով կատարված հայկական կոտորածների սարսուռն է զգում ընթերցողը բանաստեղծի...» գործերը կարդալիս։

Հայ ժողովրդի պաշտպանության կոչեր էին անում սոցիալիստ Էդգար Լոնգեն, ֆրանսիացի անվանի հայագետներ Մեյեն, Մաքլերը, գերմանացի Մարկվարտը, շվեյցարացի Լեոպոլդ Ֆավրը, որը հրապարակել էր 1915—1916 թթ. արևմտահայ աղետի փաստաթղթերի երեք պրակ, որտեղ ցույց էր տրվել, որ «մի ընդհանուր և միաձև պլան, բխած մի կենտրոնական կամքից, ուղղել է այդ կոտորածները»։



Թուրքիայի դժոխքից փրկված, ռուսական հողում ապաստանած և տիրող կարգերի անտարբերությանն արժանացած արևմտահայ գաղթականության խսկական բարեկամները նրանց աշխատավոր եղբայրներն էին, Ռուսաստանի և Անդրկովկասի բազմազգ բանվոր դասակարգը՝ իր ինտերնացիոնալիստական անկաշառ վերաբերմունքով։ Հայ գաղթականության օգտին կատարվող հանգանակություններին իրենց ակտիվ մասնակցությունն էին բերում առաջին հերթին աշխատանքի մարդիկ։

Ի հեճուկս ցարիզմի գաղութային քաղաքականության, հայ ժողովրդի տառապանքների նկատմամբ անտարբեր դիրք բռնած կառավարության դիրքին, ռուս հրապարակախոս դոկտոր Լ. Օշերովսկին անարգանքի սյունին էր գամում թուրքական վամպիրներին և հայ այրի կանանց, երեխաներին օգնելու ու պատսպարելու կոչ էր անում ռուս հասարակայնությանը։ Նա գրում էր. «Մենք չենք կարող անտարբեր մնալ այդպիսի սարսափելի վշտի, այն մարդկանց նկատմամբ, որոնք դատապարտված են սովամահության և փրկության համար են աղոթում»։ «Ներկայումս մեր առջև բացվում է մեծ և ազնիվ նպատակ՝ օգնել հայ փախստականներին։ Մենք չենք կարող հանգստանալ մինչև այն ժամանակ, քանի դեռ այդ կարևորագույն և հրամայական խնդիրը չլուծվի»։

Հյուսիսային Կովկասում լույս տեսնող «Թերեք» թերթի էջերում 1916 թվականի սկզբին հրապարակված իր հոդվածաշարքում ականավոր բոլշևիկ Ս. Մ. Կիրովը բողոքի խրոխտ ձայն բարձրացրեց ի պաշտպանություն «տառապյալ ժողովրդի»։

«Սիրտս կսկծում է, արյունոտվում, երբ կարդում եմ այն հազարավոր փախստականների մասին, այն խեղճ ու տառապյալ, անլուր տանջվող ու արյունոտ ժողովրդի, բռնաբարված կանանց ու մորթված երեխաների մասին»,— աքսորից գրում էր բոլշևիկ Սուրեն Սպանդարյանը։

Հիրավի, հայ բոլշևիկները, որ ի սկզբանե դեմ էին եվրոպական դիվանագիտությանն ապավինելուն, ցարիզմի միջոցով թուրքահայ դատը լուծելու դաշնակցական մտայնությանն ու գործելակերպին, դատապարտելով իմպերիալիստական պատերազմը որպես զավթողական, հակաժողովրդական պատերազմ, տերությունների երկու խմբերի հակամարտ շահերի բախման, տնտեսական և քաղաքական սուր մրցակցության արդյունք, նշում էին նրա ողջ կործանարար բնույթը նաև աշխատավոր հայ ժողովրդի համար։ Նրանք ցույց էին տալիս իմպերիալիստական կառավարությունների կողմից փոքր ազգերին ազատագրելու մասին պատերազմի ժամանակ հռչակված լոզունգի ողջ խաբեությունը։ Հայ բոլշևիկյան մամուլը ժողովրդական մասսաներին դաստիարակելով իմպերիալիստական պատերազմի և նրա կազմակերպիչների դեմ ռևոլյուցիոն պայքար մղելու անհրաժեշտության ոգով, նրանց զգուշացնում էին այն վտանգից, որին ենթարկում են նրան դաշնակցական պարագլուխները պատերազմին մասնակցելու, կամավորական խմբեր ստեղծելու իրենց արկածախնդրությամբ ու քաղաքական մտքի սնանկությամբ։ Գլխավոր միտքը, որ շեշտվում էր նրանց կողմից, դա այն էր, որ հայ ժողովրդի արևմտյան հատվածը թուրք բարբարոս կառավարության տիրապետության տակ գտնվելով ամեն վայրկյան կարող էր զոհ դառնալ թուրքական ավանդական յաթաղանին։ Սակայն, ինչպես նշում է Ստ. Շահումյանը, «Մեր «ազգասերները», ընդհակառակը, կարծես դիտմամբ ամեն ջանք գործ էին դնում... հող պատրաստելու՝

սուլթանի ու Նիկոլայ Ռոմանովի դժոխային ծրագիրները իրականացնելու համար»։

Վերլուծելով հայ ժողովրդի համար ստեղծված դժոխային կացությունը, Ս. Սպանդարյանը ցույց էր տալիս այն դառը պտուղները, որ տվել էին իմպերիալիստական պատերազմը, ցարիզմի ու նրա հետ գործակցած հայկական բուրժուական «քաղաքագետների» քաղաքականությունը։ Նա գրում էր. «Այո՛, «ազատություն», բայց առանց հայերի. այո՛, «ազատություն», որը դառնում է Պուրիշկևիչների և Միլյուկովների զավթումը»։ Նա դատապարտում էր հայ ազգային ջոջերին, պահանջում էր հարվածել նրանց «վզին», և արևմտահայության բեկորները «ազատել», «պահպանել» վերջնական կործանումից։

Վ. Ի. Լենինը, բոլշևիկյան պարտիան դատապարտում էին Գուչկով-Միլյուկովի բուրժուական կառավարության՝ իմպերիալիստական պատերազմը շարունակելու քաղաքականությունը, նրա գործելակերպը Արևմտյան Հայաստանում, մի գործելակերպ, որը ոչ մի նպատակ չուներ ինչ-որ քայլ կատարել Հայաստանի ինքնորոշման, հայ ժողովրդի կենսական շահերը հարգելու ուղղությամբ։ Հայ ժողովրդի մեծ բարեկամ Վ. Ի. Լենինը լիակատար ազատության պահանջ էր դնում «ամբողջ Հայաստանի նկատմամբ»։

Հանդես գալով 1917 թվականի հունիսին տեղի ունեցած սովետների առաջին համագումարում, բոլշևիկյան պարտիայի և մեր երկրի աշխատավորության առաջնորդ Վ. Ի. Լենինը պահանջում էր հրաժարվել նման գործելակերպից, հրաժարվել անեքսիոնիստական պատերազմ մղելուց, Հայաստանը խեղդելուց։ Նա մեր պարտիայի անունից ազդարարում էր հայ ժողովրդի նկատմամբ այդ պահին իրագործվելիք ծրագիրը։ Դիմելով ժամանակավոր կառավարության ղեկավարներին, նա ասում էր. այն բանակը, որ «այժմ պահվում է Հայաստանում և անեքսիաներ է կատարում, որը դուք հանդուրժում եք, քարոզելով մյուս ժողովուրդներին հաշտություն առանց անեքսիաների, թեև ձեր ձեռքին է ուժը և իշխանությունը, եթե այդ բանակն անցներ այդ ծրագրին, եթե նա Հայաստանը դարձներ անկախ հայկական ռեսպուբլիկա, և այն դրամը, որ մեզնից վերցնում են Անգլիայի և Ֆրանսիայի ֆինանսիստները, տար նրան, ապա այդ լավ կլիներ»։ «Ապացուցեցեք, որ դուք ազատագրում եք հայկական ռեսպուբլիկան, համաձայնության մեջ եք մտնում բանվորների և գյուղացիների դեպուտատների սովետների հետ յուրաքանչյուր երկրում,— շարունակում էր Վ. Ի. Լենինը,— որ դուք ազատ ռեսպուբլիկայի կողմնակից եք, այն ժամանակ ռուսական ռեվոլյուցիայի արտաքին քաղաքականությունը կդառնա իրոք ռեվոլյուցիոն, իրոք դեմոկրատական»։

Իմպերիալիստական պատերազմի դեմ, սոցիալիստական ռեվոլյուցիայի հաղթանակի համար մղած իր պայքարը բոլշևիկյան կուսակցությունը խարսխում էր «ազատություն բոլոր ժողովուրդներին, բոլոր ազգությունների բանվորների ու գյուղացիների եղբայրական միություն» լենինյան սկզբունքի վրա։ Հոկտեմբերյան ռեվոլյուցիան հռչակեց «մարդու ամեն մի շահագործման ոչնչացումը մարդու կողմից, հասարակության դասակարգերի բաժանման լիակատար վերացումը, շահագործողների դիմադրության անխնա ճնշումը, հասարակության սոցիալիստական կազմակերպության հաստատումը...»[1]։

1 Վ. Ի, Լենին, Ընտիր երկեր, հ. 2, էջ 608։



Ակտիվորեն պաշտպանելով ճնշված ժողովուրդների ազատագրական պայքարը, Վ. Ի. Լենինը, բոլշևիկների պարտիան ձգտում էին սերտ բարեկամություն հաստատել Ռուսաստանի բանվոր դասակարգի և ճնշված ու գաղութացված երկրների աշխատավորության միջև։ Սովետական կառավարության կողմից 1917 թ. նոյեմբերի 3-ին հրապարակված «Ռուսաստանի ժողովուրդների իրավունքների դեկլարացիայում» հռչակվում էր Ռուսաստանի ժողովուրդների իրավահավասարությունն ու սուվերենությունը, ազատ ինքնորոշման իրավունքը։ Ազգային և ազգային-կրոնական բոլոր ու ամեն տեսակի արտոնություններն ու սահմանափակումները վերացվում էին։ Սովետական կառավարությունն ազդարարում էր, որ ազատ զարգացում է ապահովելու Ռուսաստանի տերիտորիայում բնակվող ազգային փոքրամասնությունների և էթնիկական խմբերի համար։ Դրանք այն սկզբունքներն էին, որոնց կենսագործումով միայն հայ ժողովուրդը կստանար իր իսկական սոցիալական և ազգային ազատությունը, կփրկեր իր ֆիզիկական գոյությունը, ապրելու հնարավորություն կստեղծեր թշվառության ու վերջնական կործանման եզրին հասցված իր բեկորների համար։

Սովետական կառավարության ընդունած առաջին որոշումներից էր «Թուրքահայաստանի մասին» դեկրետը։ Ի հակադրություն թուրքական մարդասպանների հայաջինջ քաղաքականության, իմպերիալիստական տերությունների զավթողական պլանների, Վ. Ի. Լենինի ստորագրած «Թուրքահայաստանի» մասին ժողովրդական կոմիսարների սովետի դեկրետով սովետական իշխանությունը պաշտոնապես հայտարարեց, որ պաշտպանում է Արևմտյան Հայաստանի «ազատ ինքնորոշման իրավունքը՝ ընդհուպ մինչև լիակատար անկախություն»։ Սովետական կառավարությունը պահանջում էր ապահովել տարբեր երկրներում ցրված կամ թուրքական իշխանությունների կողմից բռնի կերպով Օսմանյան կայսրության խորքերն աքսորված հայերի անարգել վերադարձն իրենց հայրենի հողերը։

Մինչդեռ երիտթուրքական կլիկը ջարդել էր արևմտահայերին, ավերել նրանց շեները, զրկել նրանց սեփական հողից ու ջրից, իմպերիալիստական դիվանագետները խոսքով հայանպաստ փարիսեցիություն էին անում, իսկ գործով գաղութային նոր զավթումներ իրականացնում, ապա սոցիալիստական առաջին պետությունը հռչակում էր, որ ճանաչում է հայ ժողովրդի ինքնորոշման անկապտելի իրավունքները և գործնականում միջոցառումներ մշակում այդ իրավունքներն իրականացնելու համար։

Վ. Ի. Լենինն ասում էր. «հանցագործ է այն կառավարությունը, որը զինադադար չի ուզում...»[1]։ Իսկ թուրքական կառավարողները զինադադար չէին ուզում, նրանք ձգտում էին նոր զավթումների, նոր արյունահեղության։

1918 թ. թուրքական ինտերվենցիան ոչ միայն տապալեց Արևմտյան Հայաստանի ինքնորոշման մասին սովետական կառավարության դեկրետի կենսագործումը, այլև մահացու սպառնալիք ստեղծեց հեղափոխության հաղթանակի և Անդրկովկասի ժողովուրդների ֆիզիկական գոյության համար։ «Այն միտքը, որ հեղափոխությունը կարող է Կովկասից անցնել այդ սովալուկ երկիրը (Թուրքիա),— 1918 թվականի մարտի սկզբին գրում էր Ս. Կասյանը,— սոսկացնում է նրանց։ Սոսկացնում է նրանց նաև այն, որ խորհուրդների իշ-

2 Վ. Ի. Լենին, Ընտիր երկեր, հ. 2, էջ 541։

խանությունը Կովկասում կարող է տերիտորիական վնաս հասցնել նրանց գի-
շատիչ իշխանությանը և ավազակային շահագործությանը, պնդելով և պաշտ-
պանելով ժողովրդական կոմիսարների դեկրետը Տաճկական Հայաստանի ինքն-
որոշման վերաբերյալ»[1]: Ս. Կասյանը ցույց է տալիս, որ Թուրքական իմպե-
րիալիստների «անզուսպ ցանկությունն է՝ հաջողությամբ պսակված տեսնել
բեգական գերիշխանությունը Անդրկովկասում», որ նրանք «հուր ու կրակի,
սուր ու թրի տալով» Հայաստանը, ձգտում են «թիկունքից հարձակվել սոցիա-
լիստական Ռուսաստանի վրա», իմպերիալիստական մյուս զավթիչների հետ
միասին «երկաթե օղակ կազմելով՝ խեղդել սոցիալիստական իշխանությունը»:
«Թույլ տալ, որ այդ ծրագիրը ամենալայն կերպով իրագործվի,— շարունա-
կում է Ս. Կասյանը,— նշանակում է ոչ միայն ինքնասպանություն գործել,
այլև դավաճանել սոցիալիզմին»: Նա բոլշևիկների, բոլոր հեղափոխական ու-
ժերի «սրբազան պարտականությունն էր» համարում «ամենահամառ կերպով
պաշտպանել սոցիալիստական Ռուսաստանի թիկունքը»[2]:

Անդրկովկասյան կոմիսարիատը, ապա Սեյմը իրենց հակասովետական
քաղաքականությամբ, երկրամասի ազգությունների միջև երկպառակություն-
ները խորացնելու գործելակերպով ջլատեցին աշխատավորության ուժերը,
անուժ գտնվեցին Թուրքական հարձակումը կանխելու, երկրամասի պաշտպա-
նությունը կազմակերպելու գործում: Թե՛ Տրապիզոնի և թե Բաթումի բանակ-
ցությունների ժամանակ նրանք խաղալիքի վերածվեցին Թուրքական իմպե-
րիալիստների ձեռքում, որոնք այսօր դրժում էին այն, ինչ ընդունել էին երեկ,
լկտի կերպով ոտնահարում էին միջազգային իրավունքի ամենատարրական
նորմերը: Անդրկովկասի ինքնակոչ տնօրենները ոչ միայն անօրինական կեր-
պով չճանաչեցին սովետական կառավարության կողմից նշանակված Կովկասի
գործերի արտակարգ կոմիսար Ստ. Շահումյանի լիազորությունները, պայքար
սանձազերծեցին նրա դեմ, այլև խոչընդոտեցին նրա գործողությունները
«Թուրքահայաստանի» մասին դեկրետն իրագործելու ուղղությամբ, խանգա-
րեցին բոլշևիկյան կազմակերպություններին երկրամասը պաշտպանելու Թուր-
քական և մյուս իմպերիալիստների ինտերվենցիայից:

Իսկ Թուրքական վայրենաբարո իմպերիալիզմը, «ոչ թե հետզհետե էր քա-
մում նվաճած, բռնագրաված երկրի հյութը, կաթիլ-կաթիլ ծծում ժողովրդի
արյունը և որոշ չափով օգնում երկրի տնտեսությունը պահպանելուն, ո՛չ, տաճ-
կական իմպերիալիզմը Թալանի ու ավերածության, ջարդի և կոտորածի է
մատնում երկիրը հենց առաջին մոմենտից: Հայաստանի հողը ոռոգվում է ար-
յունով, դաշտերն ու ձորերը ծածկվում դիակներով... Երկիրն ամբողջապես
ավերվում, Թալանվում է և ծայր աղքատության մատնվում...» (Ս. Կասյան):

1918—1920 թթ. հայ ժողովրդի ողբերգական դրությունն ավելի խորացավ
Թուրքական ասպատակությունների, դաշնակցական կառավարության վարած
հակաժողովրդական, սովետական Ռուսաստանից նրան կտրելու և իմպերիա-
լիստական տերությունների Թելադրանքին ենթարկվելու քաղաքականության
հետևանքով:

Երկրամասն անջատելով հեղափոխական Ռուսաստանից, պայքարելով սո-
վետական իշխանության դեմ, հայկական ջոջերը օրեցօր գլորվում էին Թուր-

---

[1] «Բանվոր», № 5, 6, մարտ, 1918 թ., Ս. Կասյան, «Մեր տակտիկան»:

[2] Նույն տեղում:



քական կառավարողների գիրկը, ձեռք մեկնում իրենց ժողովրդի դահիճներին:

1918 Թվականի նոյեմբերի 4-ին Ալ. Խատիսովն անամոթաբար ասում էր,
թե «մենք և թուրքերը այժմ մեկս մեկու կարիքն ունենք» «այժմ պետք է լավ
հարաբերություններ պահպանել թուրքերի հետ»[1]: 1918 Թվականի նոյեմբերի
9-ին Ավ. Ահարոնյանը Կ. Պոլսում շնորհակալություն էր հայտնում Սուլթա-
նին այն բանի համար, որ նա էր հղացել «անկախ Հայաստանի» գաղափարը[2]:
Նրանք հայտարարում էին, թե Թուրքերի ցանկությունից «հայկական հարցը
լուծելու» գործում ավելի շատ բան են սպասում[3]: Թուրքական իմպերիալիստ-
ները ձգտում էին Անդրկովկասի «անկախ» հանրապետությունները հակադրել
Սովետական Ռուսաստանին, նրանց դարձնել Թուրքիայի վասալը, անմիջական
սահման չունենալ Ռուսաստանի հետ և Թուրքիան հեռու պահել Հոկտեմբեր-
յան հեղափոխության գաղափարների ազդեցությունից: Իսկ դաշնակցական
«Ազատ Հայաստանը» շուտով իր մի խմբագրականում սևով սպիտակի վրա
գրում էր. «Իրերի պատմական բերումով Անդրկովկասի ժողովուրդների քա-
ղաքական ազատության իրական պաշտպանը կարող է դառնալ միայն Տաճ-
կաստանը...»[4]:

Դաշնակցական տիրապետության օրոք Հայաստանն ամբողջապես մեկու-
սացված էր: Երկրի ներսում դրությունը հուսահատական էր: Հայաստանի
փոքր տերիտորիայի բնակչության կեսից ավելին կազմում էին գաղթական-
ները՝ անտուն, մերկ ու քաղցած:

Հայ ժողովրդի համար ստեղծվել էր մի վիճակ, որի բնորոշումն այնքան
պատկերավոր կերպով տվել է Սարգիս Կասյանը: «Երկրագնդի վրա թերևս ոչ
մի տեղ ժողովուրդն այնպիսի ողբալի, այնպիսի օրհասական և սոսկալի օրեր
չի ապրում, ինչպիսին ապրում է ժողովուրդը Հայաստանի տերիտորիայի
վրա,— գրում է նա:

— Կյանքի բոլոր ասպարեզներն էլ արտաշնչում են դառն ու լեղոտ օդ և
Թունավորում ամբողջ երկիրը, սպանելով նրա կենսունակ ուժերը, խեղդելով
նրա ձգտումներն ու կամքը: Մի հսկայական մուրճ տխրություն և մռայլություն,
տանջանքի և մրմունջի կնիք է գամել այդ դժբախտ երկրի արյունաներկ ճա-
կատին: Ծնչավոր էակները, թե անշունչ իրերը, մերկ լեռներն ու անտառապատ
սարերը, թե գանգերով լեցուն ձորերն ու արյունով ողողված դաշտերը, ամայի
դարձած գյուղերն ու ավերված քաղաքները, դաշտերում ու բարձրավանդակ-
ներում ապրող չունևոր գյուղացիները, թե քաղաքների խուցերում ու ավերակ-
ներում գոյությունը քարշ տվող քաղքենիները, տեղական բնիկ՝ խեղճացած ու
Թշվառության մատնված ազգաբնակչությունը, թե Թալանված ու սովալուկ,
լքված ու վայրենացած գաղթականությունը, բոլորն էլ վշտալից հայացքը
արճճապատ երկնակամարին հառած՝ օգնություն են հայցում, ելք են որոնում:
Հայաստանում գոյությունը դարձել է անեծք, կյանքը՝ դժոխք»[5]:

Իսկ այդ օրերին անգլիական պահպանողական «Դեյլի Մեյլ» Թերթը չա-
րախնդում էր, հայտարարելով. եթե Ամերիկայի Միացյալ Նահանգները մտա-

---

[1] ՀՍՍՌ ՊԿՊԱ, ֆ. 222, գ. 12, թ. 192—193:

[2] Նույն տեղում, թ. 199:

[3] Նույն տեղում, թ. 190:

[4] Տե՛ս «Ժողովրդի ձայն», 27. 6. 1921 թ.:

[5] Ս. Առենյան (Կասյան), «Ո՞ւր է ելքը», էջ 3:

դիր չեն հանձն առնել Հայաստանի մանդատը, ապա «որքան էլ սոսկալի լինի այդպիսի հեռանկարը՝ հայերը պիտի բնաջնջվեն»:

Չարաչար սխալվում էին պարոնայք իմպերիալիստները: Հայ ժողովրդի փրկությունը ոչ թե նրանց կամքից էր կախված, այլ ռևոլյուցիոն հյուսիսից՝ մեծ Լենինի գլխավորած բանվորա-գյուղացիական Սովետական Ռուսաստանից, որի օգնությամբ նա տապալեց դաշնակցական կառավարությունը և 1920 թվականի նոյեմբերի 29-ին հաստատեց սովետական կարգեր:

Վ. Ի. Լենինը առաջինը ողջունեց «իմպերիալիզմի ճնշումից ազատագրըված աշխատավորական Հայաստանին»: Եվ հայ կոմունիստ բանաստեղծը երգեց.

Ինչպե՜ս աշխարհի ճորտերին բոլոր,
Այնպես էլ գերի աշխարհին իմ հին
Երկինք մի մաքուր, արև մի բոսոր
Լոկ Հոկտեմբերյան հողմերը տվին:

Սովետական իշխանության հաստատումով դրվեցին հայ ժողովրդի բովանդակ կյանքի վերածնության հիմքերը: Զենքերի շաչյունին, թշվառների ողբին ու լացին փոխարինեցին սոցիալական և ազգային ազատություն նվաճած մարդու աշխատանքի պաթոսը, մատաղ սերնդի երգն ու ծիծաղը: Հայ ժողովուրդն ընթացավ իր վերքերն ապաքինելու, նոր կյանքի, սոցիալիզմի կառուցման ուղիով: Կարճ ժամանակում փոխվեց երկրի տնտեսության պատկերը: Մեր ռեսպուբլիկան դարձավ առաջավոր արդյունաբերության և գյուղատնտեսության, համատարած գրագիտության, ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրայի երկիր:

Միայն սովետական իշխանության տարիներին, խաղաղ և ապահով կյանքի պայմաններում հայ ժողովուրդը շնչեց լիաթոք, դրսևորեց իր բոլոր ունակությունները հոգևոր և նյութական արժեքների ստեղծման ասպարեզում, կառուցեց և ստեղծեց այնքան, որքան չէր ստեղծել իր հազարամյակների պատմության ընթացքում: Դարերից ի վեր հայ ժողովրդի համար այնքան վտանգավոր արտագաղթը վերածվեց թուրքական ջարդարարների մեղքով աշխարհի տարբեր մասերում սփռված հայ տարագիրների ներգաղթի՝ դեպի իրենց մայր հայրենիքը՝ Սովետական Հայաստան, բոլոր պայմանները ստեղծելով նրանց նորմալ կյանքի և ստեղծագործական աշխատանքի համար: Սովետական Հայաստանն այսօր սփյուռքահայ աշխատավորության միակ հույսն է, միակ փարոսը:

Սովետական ժողովուրդների եղբայրական կուռ ընտանիքի իրավահավասար անդամ հայ ժողովուրդը հպարտ է, որ հարազատ կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ ընթանում է կոմունիզմ կառուցողների անպարտելի շարքերում, որ իր ստեղծագործական կորովն է ներդնում մեր հզոր հայրենիքի համաշխարհային պատմական հաղթանակների մեջ:

Ս. ՇԱՔԱՐՅԱՆ

Հայկական ՍՍՌ պետպլանի անդամ

# ՅՈԹՆԱՄՅԱԿԻ ԱՎԱՐՏԱԿԱՆ ՏԱՐԻՆ

ԻՆՉՊԵՍ ողջ Սովետական Միության, այնպես էլ Հայաստանի աշխատավորները, հաջողությամբ կատարելով ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյակի անցած վեց տարվա առաջադրանքները, մեծ խանդավառությամբ ձեռնամուխ են եղել յոթնամյակի ավարտական տարվա պլանի կատարմանը:

ՍՍՌՄ Գերագույն սովետի հինգերորդ սեսիայում հաստատված՝ ընթացիկ յոթնամյակի ավարտական տարվա (1965 թվականի) ժողովրդական տնտեսության զարգացման պլանով նախատեսված են հանրային արտադրության առավել արագ տեմպեր: 1965 թվականի պլանը բնորոշ է նրանով, որ այս տարի հանրագումարի կբերվեն յոթնամյակի արդյունքները, կվերլուծվեն նվաճումները և դրանց հիման վրա կորոշվեն առաջիկա հնգամյակի խնդիրները: Ընթացիկ տարվա պլանը ռեալ է: Այդ պլանում հանգամանորեն նկատի են առնված նյութական խթաններն ու գիտության նվաճումները: 1965 թվականի պլանի նպատակն է՝ աշխատանքի արտադրողականության և արտադրության գիտատեխնիկական մակարդակի բարձրացման միջոցով, աշխատանքային և նյութական քիչ ծախսումներով ավելի մեծ արդյունքի հասնել սոցիալիստական արտադրության բնագավառում: Այդ ամենը հնարավորություն կտա արագացնելու ժողովրդական տնտեսության զարգացման տեմպերը և ավելի մեծ միջոցներ ներդնելու բնակչության բարեկեցության վերելքի համար:

Լենինյան ազգային քաղաքականության հետևողական կենսագործումը, քաղաքականություն, որի նպատակն է սովետական բոլոր ռեսպուբլիկաների էկոնոմիկայի ու կուլտուրայի ըստ ամենայնի զարգացումը, ավելի ու ավելի մեծ ինտենսիվությամբ կապահովի նյութական ու կուլտուրական հարստությունների փոխանակումը եղբայրական ազգերի միջև և կմեծացնի յուրաքանչյուր ռեսպուբլիկայի ավանդը կոմունիստական շինարարության գործում:

Մեր ռեսպուբլիկայի 1965 թվականի ժողովրդական տնտեսության զարգացման պլանը, որն ընդունվել է Հայկական ՍՍՌ Գերագույն սովետի չորրորդ սեսիայում, նախատեսում է արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրության ծավալի մեծացման արագացված տեմպեր, ինչպես նաև ժողովրդի կենսամակարդակի բարձրացում:

1965 թվականին բարձր տեմպերով է զարգանալու սոցիալիստական էկո-

նոմիկայի առաջատար ճյուղը՝ արդյունաբերությունը։ Պատվավոր և պատասխանատու խնդիր է դրված արդյունաբերության աշխատողների առաջ՝ ընթացիկ տարում համախառն արտադրանքի ծավալն ավելացնել 12 տոկոսով։ Այդ գրեթե մեկ ու կես անգամ ավելի է նախորդ տարվա աճման տեմպից և գերազանցում է յոթնամյակի անցած տարիների աճը, որը 1959—1964 թվականներին միջին հաշվով կազմում էր 10,4 տոկոս։ Այս տարվա արդյունաբերական արտադրության աճի բարձր տեմպը պայմանավորված է անցած տարիների զարգացման ամբողջ ընթացքով։ Չէ որ անցած վեց տարիներին յոթնամյա պլանի կատարման ընթացքում շարք մտան նոր ձեռնարկություններ, վերակառուցումների ու ընդլայնումների հաշվին ավելացան գործող ձեռնարկությունների կարողությունները, արդյունաբերական արտադրական ֆոնդերը մեծացան ավելի քան երկու անգամ։

Արդյունաբերության կառուցվածքի բարելավման՝ վերջին տարիներս կենսագործվող կուրսը, 1965 թվականին իրականանալու է արդյունաբերության այն պրոգրեսիվ ու հեռանկարային ճյուղերի առաջընթացի հաշվին, որոնք կապահովեն արտադրության հետագա աճի բարձր տեմպեր և թույլ կտան ծախսված յուրաքանչյուր ռուբլու դիմաց ավելի շատ օգուտ ստանալ։

Ընթացիկ տարվա պլանում մեծ ուշադրություն է նվիրված ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի տեխնիկական պրոգրեսի հիմքի՝ էներգետիկայի հարցերին։ Արտադրության ծավալի աճին և սպասարկման ոլորտի պահանջմունքների ավելացմանը համապատասխան Հայկական ՍՍՌ-ում էլեկտրաէներգիայի սպառումն ավելացավ 1,8 անգամ։ 1965 թվականին կսպառվի 4540 միլիոն կիլովատ ժամ էլեկտրաէներգիա, որը տասը տոկոսով կգերազանցի 1964 թվականին ծախսված էլեկտրաէներգիայի քանակը։

Չնայած սինթետիկ կաուչուկի, կաուստիկ սոդայի, վինիլացետատի, պոլիվինիլացետատային էմուլսիայի, պոլիվինիլ սպիրտի, չոր ներկերի և այլ արտադրանքների արտադրության նշանակալից աճին, 1965 թվականին, անցած տարիների համեմատությամբ, ցածր է քիմիական արդյունաբերության համախառն արտադրանքի աճը։ Պահանջարկի սահմանափակվածության պատճառով լրիվ չեն օգտագործվում ացետատցելյուլոզի արտադրության կարողությունները. դա հետևանք է այն բանի, որ երկրում ժամանակին չեն գործարկվում այն կարողությունները, ուր պետք է սպառվի այդ արտադրանքը։

Քիմիական արդյունաբերության աշխատողների հիմնական խնդիրը պետք է լինի՝ արտադրանքի որակի բարձրացման հետ միասին յուրացնել բնական գազից ացետիլենի ստացումը, ցելյուլոզի տրիացետատի արտադրությունը, ինչպես նաև բամբակի ցելյուլոզի և վինիլացետատի արտադրության կարողությունները։ Քիմիական արդյունաբերության զարգացման համար նախատեսված է 36 միլիոն ռուբլի գումար. այն կծախսվի այժմ գործող քիմիական խոշոր գործարանների արտադրանքը մեծապես ավելացնելու համար։

Լեռնահանքային ձեռնարկությունների կարողությունների մեծացման շնորհիվ 1965 թվականին, 1964 թվականի համեմատությամբ, նկատելիորեն կավելացվի մոլիբդենի և պղնձի կոնցենտրատների արտադրությունը, պղնձի նախնական, զտված ու վայերբարսային ձուլումը և գունավոր մետաղների գլանվածքի թողարկումը։ Ընթացիկ տարում այդ ճյուղի զարգացմանը ավելի



մեծ կապիտալ ներդրումներ են հատկացվում։ Դրա շնորհիվ հնարավոր կլինի ավարտել Ալավերդու պղնձա-քիմիական կոմբինատի մետալուրգիական մշակումների և ծծմբաթթվի ցեխի 2 գծերի, Ախթալայի հանքաքարի հարստացուցիչ ֆաբրիկայի պղնձի սեկցիայի, Զոդի փորձնական ֆաբրիկայի շինարարությունը, շարունակել Քաջարանի և Ագարակի պղինձ-մոլիբդենի կոմբինատների և Ղափանի պղնձի կոմբինատի հարստացուցիչ ֆաբրիկայի արտադրական, տնտեսական օբյեկտների և թափոնաչրերի ամբարների շինարարությունը։

Պլանով նախատեսվում է մեքենաշինության համախառն արտադրանքի ծավալը, 1965 թվականին, 1964 թվականի համեմատությամբ, ավելացնել 15,4 տոկոսով. առավել մեծ չափերով է աճելու պրոգրեսիվ և աշխատատար ճյուղերի արտադրանքը. ռադիոէլեկտրոնիկայի և էլեկտրոնիկայի բնագավառում՝ 2,2 անգամ, սարքաշինության՝ 29, հաստոցա-գործիքաշինության՝ 20. քիմիական մեքենաշինության՝ 28, ավտոմոբիլային՝ 21 տոկոսով։ Պլանը մշակված է թողարկվող մեքենաների, սարքավորումների, գործիքների որակը բարելավելու, դրանց հուսալիությունն ու դիմացկունությունը բարձրացնելու, առաջավոր տեխնոլոգիական պրոցեսների արմատավորումն ու մասնագիտացումն ապահովելու տեսանկյունով։

Մեքենաշինության զարգացման համար նախատեսված ավելի քան 18 միլիոն ռուբլի ծավալով կապիտալ ներդրումները հնարավորություն կտան ստեղծելու կենցաղային սառնարաններ, թողարկելու 15 միլիոն սառը լուսարձակող և 100 միլիոն հատ շիկացող լամպեր. ավարտվելու է հաշվիչ մեքենաների գործարանների շինարարությունը, ընդլայնվելու է ներտաշ հաստոցների գործարանների և մի շարք այլ օբյեկտների շինարարությունը։

Առաջատար ճյուղերի պրիորիտետի ապահովումը չի նշանակում մյուս ճյուղերի զարգացման կասեցում կամ կրճատում։ Մեր էկոնոմիկան պահանջում է ժողովրդա-տնտեսական բարդ կոմպլեքսի բոլոր մասերի խիստ համամասնություն, հարմոնիկ ու պլանաչափ զարգացում։

1965 թվականի պլանով նախատեսվում է արտադրության ծավալի աճ, հատկացումների ավելացում ծանր արդյունաբերության մյուս ճյուղերի հետագա զարգացման համար։ Շինանյութերի արտադրությունը կավելանա 9 տոկոսով, բարձր մարկայի ցեմենտի արտադրությունը կհասցվի 615 հազար տոննայի, ասբոցեմենտի խողովակներինը՝ 650 պայմանական կիլոմետրի, ասբոշիֆերինը՝ 82 միլիոն հատ պայմանական սալիկի, հավաքովի երկաթբետոնե կառուցվածքներինն ու դետալներինը՝ 537 հազար խմ։ Տեղական շինանյութերի արտադրությունը կընդլայնվի այնպիսի չափերով, որ դրանք լրիվին բավարարեն ռեսպուբլիկայի պահանջմունքները և որոշ չափով էլ արտահանվեն տնտեսական մյուս շրջանները։ Շինանյութերի արդյունաբերության և շինարարական ինդուստրիայի զարգացման համար 1965 թվականին առանձնացված է 22 միլիոն ռուբլի, որն ավելի է նախորդ տարիներին կատարված հատկացումներից։

Բնակչության պահանջմունքները բավարարելու համար 1965 թվականի պլանում մեծ ուշադրություն է նվիրվել թեթև և սննդի արդյունաբերության զարգացմանը, ինչպես նաև կուլտուր-կենցաղային ապրանքների արտադրությանը։ 1965 թվականին, 1964 թվականի համեմատությամբ, թեթև արդյունաբերության համախառն արտադրանքի ծավալը կավելանա 11,5 տոկոսով։

Հիմնական արտադրանքների արտադրությունը սահմանելիս հաշվի են առնվել հումքային ռեսուրսները և ձեռնարկությունների աշխատանքը լայն պահանջարկ ունեցող արտադրանքների թողարկմանը համապատասխան վերակառուցելու ռեալ հնարավորությունները։

Նախատեսված է ավելացնել դաջած չթի, արհեստական մետաքսաթելից վերնաշապկի գործվածքեղենի թողարկումը, թարմացնել բրդյա գործվածքեղենի ասորտիմենտը, ավելացնել կիսաբրդյա գործվածքներից (լավսան և կապրոն՝ սինթետիկ մանրաթելերի խառնուրդով) շրջազգեստի, կոստյումի և վերարկուների թողարկումը, պակասեցնելով ծանր գործվածքեղենի թողարկումը։ Կրնդլայնվի կապրոնի և վիսկոզի խառնուրդից տրիկոտաժե վերնահագուստի, ացետատային մետաքսից մանկական հագուստների, առաձգական նյութից գուլպաների (տղամարդու և կանացի), կապրոնե նախշազարդ գուլպաների, կաշվենման ռետինե կոշկատակով կոշիկի և մանկական գեղեցիկ կոշկեղենի թողարկումը։

Հաշվի առնելով արդյունաբերական վերամշակման ուղարկվող գյուղատնտեսական հումքի քանակը և պարենային ապրանքների առանձին տեսակների նկատմամբ բնակչության պահանջմունքները, սննդի արդյունաբերության համախառն արտադրանքի ծավալը, 1964 թվականի համեմատությամբ, կավեանա 14,8 տոկոսով։ 1965 թվականին գինեգործական արդյունաբերությունը կվերամշակի 120 հազար տոննա խաղող, գինու թողարկումը կհասցվի 4,5 միլիոն դեկալիտրի, պահածոներինը՝ 150 միլիոն պայմանական տուփի, հրուշակեղենինը՝ 16 հազար տոննայի։

1965 թվականին նախատեսված է կուլտուր-կենցաղային ու տնտեսական կահավորանքի ապրանքների արտադրությունը հասցնել 61,6 միլիոն ռուբլու, 1964 թվականի 50,5 միլիոն ռուբլու դիմաց։ Կթողարկվեն մի շարք նոր տեսակի արտադրանքներ՝ կենցաղային սառնարաններ, պլաստմասսայից ապրանքներ, նոր խաղալիքներ, գեղարվեստական ձայնագրող թիթեղյա ժապավեններ, կահույքի կոմպլեկտներ՝ մեկսենյականոց բնակարանի համար և այլն։

Սակայն այս ամենը դեռ քիչ է և չի համապատասխանում այսօրվա պահանջմունքներին։

Արդյունաբերության համամասնությունների կատարելագործման հետ կապված պրոբլեմներից կարևոր նշանակություն ունի արտադրության միջոցների արտադրության՝ «Ա» խմբի և սպառման միջոցների արտադրության՝ «Բ» խմբի հարաբերակցության հարցը։ Արտադրության ներկա մակարդակի պայմաններում ծանր ինդուստրիան այժմ ի վիճակի է ավելի ու ավելի մեծ չափով նպաստելու երկրորդ ստորաբաժանման ընդլայնմանը։ Եթե ողջ Միության մեջ «Բ» խմբի արտադրանքը 1964 թվականին ավելացավ 6,5 տոկոսով, ապա ընթացիկ տարում այն կավելանա 7,7 տոկոսով և դա այն դեպքում, երբ «Ա» խմբի արտադրանքի աճը կմնա 1964 թվականի մակարդակի՝ 8,2 տոկոսի սահմաններում։ Երկու ստորաբաժանումների միջև տեմպերի էական մերձեցում է նախատեսվում նաև մեր ռեսպուբլիկայում։ 1965 թվականին «Ա» խմբի արտադրանքի 11,9 տոկոս աճի տեմպի համեմատությամբ «Բ» խմբի արտադրանքը կավելանա 12,1 տոկոսով։

Այժմ զարգացող էկոնոմիկայի անհետաձգելի պահանջներին համապատասխանող, առաջին պլանի վրա քաշված արմատական խնդիրներից է արտադրանքի որակի անընդհատ բարձրացումը՝ ասորտիմենտի ընդլայնմամբ։



Ինդուստրիալ արտադրության ժամանակակից պայմաններում արտադրանքի վատ որակի հետևանքով առաջանում են նյութերի, միջոցների ու աշխատանքի անարտադրողական ծախսեր. արտադրանքի վատ որակը միաժամանակ արտադրության հետամնաց տեխնոլոգիայի և ցածր կուլտուրայի արդյունք է։ Ճիշտ ժամանակին է դրվում այն հարցը, որ ձեռնարկության գործունեությունը պետք է գնահատել ո՛չ միայն ըստ քանակական ցուցանիշների, այլ, գլխավորապես, ըստ այն բանի, թե արտադրվող արտադրանքը ինչ չափով է բավարարում սպառողների պահանջմունքները և ինչպես է սպառվում։

Արդյունաբերության աշխատողները շատ բան պետք է անեն արտադրանքի նորացման ուղղությամբ, որը պետք է համապատասխանի համաշխարհային տեխնիկական մակարդակին, գիտության նվաճումներին ու հասարակության հարաճուն պահանջմունքներին։

ԸՆԹԱՑԻԿ տարվա պլանում էական միջոցառումներ են նախատեսված գյուղատնտեսության նյութատեխնիկական բազայի ամրապնդման բնագավառում, որի զարգացման ուղին նրա ինտենսիվացումն է։ Ահա թե ինչու մեր այս տարվա պլանում նորանոր ու խոշոր միջոցառումներ են նախատեսված սոցիալիստական գյուղատնտեսական արտադրության մեքենայացման ու քիմիացման, ինչպես նաև ոռոգվող հողերի ընդարձակման նպատակով, որոնք արտադրանքի ավելացման և աշխատանքի արտադրողականության բարձրացման գլխավոր պայմանն են։ Հողագործության և անասնաբուծության աշխատատար պրոցեսներն առավել չափով մեքենայացնելու նպատակով 1965 թվականին կոլտնտեսություններն ու սովխոզները կստանան բազմաթիվ տրակտորներ, կոմբայններ, ապրանքատար ավտոմեքենաներ և այլն։ Ընթացիկ տարում, անցյալ տարվա համեմատությամբ, 1,4 անգամ ավելի հանքային պարարտանյութեր են տրվելու գյուղատնտեսությանը, ավելի մեծ չափով քիմիական միջոցներ են նախատեսվում վնասատուների ու մոլախոտերի դեմ պայքարելու համար։ Անհրաժեշտ է ավելի լավ օգտագործել տեխնիկան, ճիշտ կազմակերպել աշխատանքը, բարձրացնել հանքային պարարտանյութերի ու քիմիկատների կիրառման արդյունավետությունը, հաշվի առնելով յուրաքանչյուր տնտեսության հողային և այլ առանձնահատկությունները, այնպես անել, որ մեծանա մեխանիզատորների շահագրգռվածությունն իրենց աշխատանքի արդյունքով։ 1965 թվականին գյուղատնտեսության զարգացմանը հատկացվում է 58,6 միլիոն ռուբլու կապիտալ ներդրում, որը գրեթե 30 տոկոսով ավելի է անցյալ տարվա ներդրումից։

Գյուղատնտեսության շինարարական մոնտաժային աշխատանքների համար նախատեսված միջոցների ավելի քան 40 տոկոսը ներդրվելու է ջրային տնտեսության շինարարության մեջ, որը հնարավորություն կտա ոռոգելի հողերն ավելացնել 7 հազար հեկտարով և ջրարբի դարձնել 20 հազար հեկտար ամառային արոտավայրեր։ Շարունակվելու է Արզնի-Շամիրամ ոռոգիչ սիստեմի, մի շարք խոշոր կայանների ու ջրամբարների շինարարությունը։ Բացի նշված միջոցներից գյուղատնտեսական շինարարությանը միջոցներ են տրամադրում նաև Մինիստրների սովետի պահեստի ֆոնդից, իսկ կոլտնտեսություններին տրվում են երկարատև վարկեր։ Նկատի է առնվում և այն, որ կոլտնտեսությունները ևս իրենց սեփական միջոցներից զգալի գումարներ են ծախսելու կապիտալ շինարարության վրա։

Արտադրության մեծացող ծավալը թույլ է տալիս 1965 թվականի համար սահմանել գյուղատնտեսության հիմնական մթերքների գնումների հետևյալ չափերը. շաքարի ճակնդեղ՝ 115 հազ., բամբակ՝ 20 հազ., ծխախոտ՝ 14 հազ., բանջարեղեն՝ 126 հազ., միս՝ 38 հազ., կաթ՝ 155 հազ. տոննա, ձու՝ 60 միլ. հատ, բուրդ՝ 4 հազ. տոննա։ Հացահատիկի պետական գնման չափը որոշված է 30 հազ. տոննա՝ հացահատիկային տնտեսության ապրանքայնության համապատասխան։

ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ իրական եկամուտների մակարդակը՝ բնակչության մեկ շնչի հաշվով, 1965 թվականին կավելանա 7,3 տոկոսով, 1964 թվականի 3,9 տոկոսի դիմաց, որը երկու անգամ կգերազանցի 1959—1964 թվականների տարեկան աճի միջին տեմպը։ Մեր մեծ երկրի բնակչության իրական եկամուտների այդպիսի աճը տեղի կունենա առանց նվազեցնելու հանրային արտադրության տեմպերը։ 1965 թվականին ժողովրդի կենսամակարդակի բարձրացումը կապահովվի ազգային եկամտի մեջ սպառման բաժնի ավելացմամբ։ Ինչպես հայտնի է, ազգային եկամտի բաշխման և վերաբաշխման պրոցեսում են կազմավորվում սպառման ու կուտակման ֆոնդերը։ Առաջինը ծախսվում է բնակչության անմիջական պահանջմունքների բավարարման, կառավարման և գիտության օրգանների պահպանման համար, իսկ երկրորդը (կուտակման)՝ էկոնոմիկայի հետագա զարգացման և հասարակության հարստության մեծացման համար։

1965 թվականին Հայկական ՍՍՌ ազգային եկամուտը կավելանա 11 տոկոսով՝ յոթնամյակի նախորդ տարիների 8 տոկոսի դիմաց։ Ազգային եկամտի ավելացումը և այդ եկամտի մեջ սպառման ֆոնդի տեսակարար կշռի մեծացումը պետք է ապահովվի հանրային արտադրության արդյունավետությամբ, որի գլխավոր պայմանը աշխատանքի արտադրողականության բարձրացումն է։ Ընթացիկ տարում, 1964 թվականի համեմատությամբ, նախատեսվում է աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել արդյունաբերության մեջ 4,1, գյուղատնտեսության մեջ (սովխոզներում), արտադրանքի համադրելի նորմաներով՝ 4, շինարարության մեջ՝ 6,7 տոկոսով։

Բնակչության ռեալ եկամուտները, ամենից առաջ, կավելանան աշխատավարձի բարձրացման հաշվին։ Այդ համապատասխանում է ՍՄԿՊ ծրագրով սահմանված այն դրույթին, որ սոցիալիզմի ժամանակ հանրային ֆոնդերի դերի մեծացման պայմաններում ժողովրդի պահանջմունքների բավարարման հիմնական ձևը մնում է աշխատանքի վարձատրությունը։ Աշխատավարձի քաղաքականության մեջ գլխավորը պետք է լինի ինչպես առանձին աշխատողների, այնպես էլ ձեռնարկությունների ամբողջ կոլեկտիվների բարեխիղճ, բարձր արտադրողական աշխատանքի նյութական խրախուսանքը։ Այդ անհրաժեշտ է ինչպես էկոնոմիկայի հետագա վերելքի, այնպես էլ բարեկեցության աճի և աշխատավորների կոմունիստական դաստիարակության ապահովման համար։ Պարտիան ու կառավարությունն այսուհետև ևս իրենց ուշադրությունը կկենտրոնացնեն այն բանի վրա, որ աշխատանքի արտադրողականության աճի և արտադրության արդյունքների բարելավման հիման վրա բարձրացվեն բանվորների ու ծառայողների աշխատավարձը և կոլտնտեսականների եկամուտները։

Աշխատանքի բավարար արդյունքների խրախուսումը պետք է զուգակցվի



աշխատավարձի մինիմումի միաժամանակյա բարձրացմամբ։ 1965 թվականի հունվարի 1-ից աշխատավարձի նվազագույն չափը սահմանված է ամսական 40—45 ռուբլի, անցյալում եղած՝ 27—35 ռուբլու փոխարեն։ Այս տարի կավարտվի աշխատավարձի կարգավորումը ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում։ Դրա շնորհիվ կբարձրանա բնակարանային կոմունալ տնտեսության, առևտրի, հասարակական սննդի, բնակչության կենցաղային սպասարկման կազմակերպությունների ու ձեռնարկությունների, կուլտուր-լուսավորական հիմնարկների, հրատարակչությունների, պետական և տնտեսական կառավարման ռեսպուբլիկական ու տեղական մարմինների և այլ բնագավառների ավելի քան 95 հազար աշխատողների աշխատավարձը։ Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետի և արհեստակցական միությունների ռեսպուբլիկական սովետի 1964 թվականի դեկտեմբերի որոշմամբ, վերոհիշյալ աշխատողների աշխատավարձի բարձրացումը տեղի ունեցավ ընթացիկ տարվա փետրվար ու մարտ ամիսներին, առաջներում նախատեսված ժամկետի՝ դեկտեմբեր ամսվա փոխարեն։ Նկատի ունենալով 1964 թվականի նոյեմբերից լուսավորության և առողջապահության ավելի քան 80 հազար աշխատողների աշխատավարձի բարձրացումը և նյութական արտադրության ճյուղերի աշխատողների աշխատավարձի պլանով նախապեսված աճը, բանվորների ու ծառայողների աշխատավարձի ֆոնդը 1965 թվականին կավելանա 19,5 տոկոսով, 1959—1964 թվականների 11 տոկոսի դիմաց։ Յուրաքանչյուր աշխատողի աշխատավարձը կավելանա միջին հաշվով 4,7 տոկոսով, յոթնամյակի անցած տարիների 2,7 տոկոսի դիմաց։

Հաշվի առնելով արտադրության աճի և աշխատանքի արտադրողականության բարձրացման, ինչպես նաև սոցիալ-կուլտուրական ճյուղերի զարգացման նախատեսված տեմպերը, ժողովրդական տնտեսության մեջ կընդգրկվեն 52 հազար նոր բանվորներ ու ծառայողներ։ Աշխատավարձից բացի, բնակչության ռեալ եկամուտների՝ պլանով նախատեսված աճն ապահովող գործոններից կարևոր նշանակություն ունեն հասարակական ֆոնդերը, որոնք 1965 թվականին 1964 թ. համեմատությամբ, ավելանալու են 16 տոկոսով՝ պետական բյուջեից կատարվող հատկացումների համապատասխան մեծացմամբ։

Հասարակական ֆոնդերի նախատեսվող չափերը հնարավորություն կտան 1935 թվականին նկատելիորեն ավելացնելու ժողովրդական կրթության, կուլտուրայի, առողջապահության, ֆիզկուլտուրայի, սոցիալական ապահովության և ապահովագրության ծախսերը, կենսաթոշակների և այլ վճարումները։

Հանրակրթական դպրոցներում սովորողների թիվը կավելանա 40 հազար աշակերտով և 1965—66 ուսումնական տարում կհասնի գրեթե կես միլիոնի, ընդ որում, ուսուցման երկարօրյա դպրոցներում ու խմբերում սովորող աշակերտներինը կկրկնապատկվի։ Ընդլայնվելու է հատկապես մանկական նախադպրոցական հիմնարկների ցանցը, որը 1965 թվականին կընդգրկի 62,1 հազար երեխա, անցյալ տարվա 53,8 հազարի դիմաց։

Կապիտալ շինարարության պլանին համապատասխան շահագործման կհանձնվեն 6,1 հազար տեղ ունեցող նախադպրոցական նոր հիմնարկներ։ Նկատի ունենալով մանկամսուրների և մանկապարտեզների մեծ պահանջը՝ ռեսպուբլիկայի Մինիստրների սովետը միջոցառումներ է նախատեսել այդ հիմնարկների ցանցը լրացուցիչ ընդլայնելու ուղղությամբ։

Բարձրագույն ուսումնական հաստատությունները կընդունվեն 6790,

միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունները՝ 9360, պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարանները՝ 7200 մարդ։ Ընթացիկ տարում այդ ուսումնական հաստատություններում սովորելու է 79,8 հազար մարդ։

Ընդլայնվելու է բուժական հիմնարկների ցանցը, հիվանդանոցային մահճակալների թիվը հասցվելու է 18,5 հազար միավորի, որը, անցյալ տարվա համեմատությամբ, 1650 մահճակալով ավելի է։ Բժշկական հիմնարկներն ավելի կհագեցվեն նորագույն սարքավորումներով։ Հիվանդանոցները կապահովվեն դեղորայքով, ամբուլատոր բուժման դեպքում ավելի մեծ չափով անվճար դեղորայք կտրամադրվի ծանր հիվանդների բուժմանը։ 1965 թվականի չորրորդ եռամսյակից կբարձրանան բանվորների ու ծառայողների հաշմանդամության և կերակրողին կորցնելու դեպքում տրվող կենսաթոշակների նվազագույն չափերը։ Չի կարելի չնշել այնպիսի կարևոր մի փաստ, ինչպիսին կոլտնտեսականների սոցիալական ապահովությունն է։ Ընթացիկ տարում ավելի քան 56 հազար կոլտնտեսականներ կենսաթոշակ կստանան։

Նյութական ու կուլտուրական կենսամակարդակի բարձրացման համեմատ կաճեն ժողովրդի պահանջմունքները սպասարկող ճյուղերի նկատմամբ։ 1965 թվականի պլանով նախատեսված միջոցառումները պետք է դիտել որպես առաջին, բայց կարևոր քայլ կենցաղ-սպասարկման ձեռնարկությունների աշխատանքի բարելավման ճանապարհին։

1965 թվականին մանրածախ ապրանքաշրջանառությունը կավելանա 10,4, այդ թվում հասարակական սննդինը՝ 13,7 տոկոսով։ Մթերային ռեսուրսները թույլ կտան կարգավորելու հացի, ձավարեղենի, մակարոնի, շաքարի, պահածոների և մթերային այլ ապրանքների նորմալ առևտուրը։

Հատկացված ֆոնդերը հնարավորություն կընձեռեն անխափան կատարելու նաև զգեստի, գործվածքեղենի, կոշկի, տնտեսական ու կուլտուր-կենցաղային և արդյունաբերական ապրանքների առևտուրը։

ՍՄԿՊ ծրագիրը բնակարանային պրոբլեմի լուծումը դիտում է որպես սովետական ժողովրդի բարեկեցության վերելքի ամենագլխավոր նախապայմանը։ Բնակարանային շինարարության լայն ծրագրի շնորհիվ վերջին տասը տարիներում ռեսպուբլիկայի բնակչության մոտ կեսը ինչպես քաղաքում, նույնպես և գյուղում՝ բարելավել են իրենց բնակարանային պայմանները։ 1965 թվականին պետական ներդրումների հաշվին շահագործման կհանձնվի 714 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն։

1965 թվականի պլանային առաջադրանքների հաջող կենսագործման բնագավառում աննախընթաց չափով մեծանում է տնտեսական այնպիսի կարևոր լծակների դերը, ինչպիսիք են՝ տնտհաշվարկը (որն այժմ չի կարող սահմանափակվել ձեռնարկության շրջանակներով), գինը, վարկը, շահույթը։

Դեռևս կան լուծման կարոտ այնպիսի կարևոր խնդիրներ, ինչպիսիք են՝ ձեռնարկությունների ինքնուրույնության բարձրացումը, ուղղակի կապերի հաստատումն արտադրողների և սպառողների միջև, նյութական խրախուսանքի ձևերի կատարելագործումը։

Ընթացիկ տարվա ժողովրդատնտեսական պլանի կատարումը մեծ ավանդ կլինի ռեսպուբլիկայի էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման գործում։

## Նշանավոր ՏԱՐԵԹՎԵՐ

ՍՍՌՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ

**Հ Ր Ա Մ Ա Ն Ա Գ Ի Ր Ը**

*ՍՍՌՄ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՆԿԱՐԻՉ Մ. Ս. ՍԱՐՅԱՆԻՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՀԵՐՈՍԻ ԿՈՉՈՒՄ ՇՆՈՐՀԵԼՈՒ ՄԱՍԻՆ*

Սովետական կերպարվեստի բնագավառում մատուցած մեծ ծառայությունների համար ՍՍՌՄ ժողովրդական նկարիչ Մարտիրոս Սերգեյի ՍԱՐՅԱՆԻՆ շնորհել ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՀԵՐՈՍԻ կոչում՝ նրան հանձնելով ԼԵՆԻՆԻ շքանշան և «ՄՈՒՐՃ ՈՒ ՄԱՆԳԱՂ» ոսկե մեդալ։

ՍՍՌՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ՝
Ա. ՄԻԿՈՅԱՆ

ՍՍՌՄ Գերագույն սովետի նախագահության քարտուղար՝
Մ. ԳԵՈՐԳԱՁԵ

Մոսկվա, Կրեմլ, 8 մարտի 1965 թ.

ԱՐԱ ՍԱՐԳՍՅԱՆ

ՍՍՌՄ ժողովրդական նկարիչ

# ԿԱԽԱՐԴԻՉ ԳՈՒՅՆԵՐԻ ՄԵԾ ՎԱՐՊԵՏԸ

Վերջերս սովետական հասարակայնությունը լայնորեն նշեց Սովետական Միության ժողովրդական նկարիչ, Լենինյան մրցանակի լաուրեատ Մարտիրոս Սարյանի ծննդյան 85-ամյակը։

Այդ օրերին էր դարձյալ, որ մեր գեղանկարչության մեծ վարպետը, վեց տասնյակ տարիների անխոնջ ու հայրենանվեր ստեղծագործական բեղմնավոր աշխատանքի համար արժանացավ ամենաբարձր պարգևին՝ սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչմանը։

Հիրավի, մեծ է Սարյանի արվեստի հմայքը, սակայն նրա վրձնակերտ արևի շողերից էլ շռայլ է համաժողովրդական այն սերը, որով շրջապատված է կենսասեր ու կենսատու վարպետը։ Սարյանը հարազատ ու թանկ է ժողովրդին, որովհետև վերածնված ժողովրդի լուսաշող հույզերից է հյուսել նա

իր կտավները, չնայած նրա մտորումներով հարուստ ստեղծագործական ուղին
սկսվում է ազատարար Հոկտեմբերից դեռ շատ առաջ։

Մարտիրոս Սարյանը ծնվել է 1880 թվականին, Նոր Նախիջևանում, աշ-
խատավոր գյուղացու բազմանդամ ընտանիքում։ Նախնական կրթությունն
(1888—1895 թվականը) ստացել է Նոր Նախիջևանում։ Ավագ եղբայրը՝ Հով-
հաննեսը, որի խնամքի տակ էր գտնվում Մարտիրոսը, տեսնելով եղբոր՝ նկար-
չության հանդեպ ունեցած հակումն ու ընդունակությունները, բարեկամների
խորհրդով նրան ուղարկում է Մոսկվա։ 1897 թվականին Սարյանն ընդունվում
է նկարչության, քանդակագործության և ճարտարապետության ուսումնարա-
նը։ 1903 թվականին ավարտելով ուսումնարանը, Սարյանը մասնագիտական
կրթությունը շարունակում է Վ. Սերովի և Կ. Կարովինի արվեստանոցներում։

Սարյանի արվեստի սկզբունքները կազմավորվել են այն ուսումնարանում,
որի հետ կապված են եղել XIX դարի երկրորդ կեսի ռուսական ռեալիստական
արվեստի մեծանուն նկարիչներ Ա. Սավրասովը, Վ. Պոլենովը, Ի. Լևիտանը,
Գ. Սերովը, Կ. Կարովինը, Մ. Նեստերովը և շատ այլ առաջավոր արվեստա-
գետներ։ Սակայն երիտասարդ Սարյանը, որպես ինքնատիպ և իր սեփական
ուղին փնտրող սկսնակ նկարիչ, որոշ ժամանակ ընկնելով իր ուսուցիչների
արվեստի ազդեցության տակ, շուտով գտնում է իր ստեղծագործական ուրույն
ճանապարհը։

Մարտիրոս Սարյանի ստեղծագործական ինքնուրույն կյանք է սկսել այն
ժամանակ, երբ քսաներորդ դարագլխի սկզբին շիկանում էր քաղաքական
մթնոլորտը, հասունանում էին կապիտալիստական հասարակության դասա-
կարգային հակասությունները, երբ բանվոր դասակարգը ելել էր ազատագրա-
կան պայքարի։ 1905 թվականի ռևոլյուցիային հաջորդած ռեակցիայի տարի-
ներին շատ արվեստագետներ հեռացան իրականությունից, դարձան ինքնամ-
փոփ, համակվեցին սուբյեկտիվիստական տրամադրություններով։ Ռուսական
արվեստում առաջ եկան ձևապաշտական տարբեր ուղղություններ։ Ծնվեցին
նաև միավորումներ, ընկերություններ, ինչպես՝ «Мир искусства», «Золотое
руно», «Голубая роза», «Бубновый валет», որոնք պաշտպանում էին
«արվեստը արվեստի համար» տեսությունը։

Երիտասարդ Սարյանը՝ ստեղծագործական վառ երազներով լի, զգայուն
ու կենսունակ արվեստագետը, ապրելով այդ միջավայրում, չկարողացավ խու-
սափել ազդեցություններից։ Այդ շրջանում փոխվեց Սարյանի նկարելաձևը,
նրա մոտ հակում առաջացավ դեպի գեղանկարչական կոնտրաստային արտա-
հայտչական ձևերը։

Սակայն այդ նույն տարիներին արդեն Սարյանը ստեղծեց իր ռեալիստա-
կան լավագույն գործերից մեկը՝ Ա. Մյասնիկյանի՝ ռևոլյուցիոն երիտասարդ
գործչի վառ ու ճշմարտացի կերպարը։

Այդ շրջանում Սարյանը ճշտում է իր հետագա ստեղծագործական ուղին։
Մի կողմից՝ կերպարի հոգեբանական-ռեալիստական մեկնաբանում (Ա. Մյաս-
նիկյան), մյուս կողմից՝ արտահայտչական նոր ձևերի որոնումներ։ Սակայն
այդ բոլորի հետ, նկարչի ստեղծագործության աղբյուրը, մայր բնությունն էր։
«Ես զգացի,— գրում է Մ. Սարյանը,— որ բնությունը—այդ իմ տունն է, իմ
միակ ափոփանքը, որ նրա առաջ իմ հիացմունքը ինչ-որ այլ է, քան արվեստի
ստեղծագործությունների առաջ, որոնց հմայքը տեսում է միայն մի քանի րո-



պե։ Բնությունը բազմագույն է, նա ստեղծված է ուժեղ ու հրաշագործ ձեռքով,
նա իմ միակ ուսուցիչն է»։

Ահա Սարյանի արվեստի միակ լուսատուն, որի ջերմ ճառագայթները նրա
գեղանկարչությունը դարձնում են կենսունակ, գունագեղ ու գրավիչ։

***

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիան փոխեց պատմության
ընթացքը։ Արվեստի զարգացման համար բացվեցին լայն հորիզոններ. մտա-
վորականությունը նոր լիցքով սկսեց ծառայել ժողովրդին։ Սարյանը, խորա-
պես գիտակցելով արվեստագետի իր դերը, եկավ հայրենիք՝ Սովետական Հա-
յաստան ու սկսեց ստեղծագործական հասարակական լայն գործունեությամբ
հարուստ մի նոր կյանք։ Ներկատուփը ուսից կախ, աթոռակը ձեռքին, արևի
կիզիչ ճառագայթներից աչքերը կկոցելով ամենուրեք նա փնտրում էր պեյ-
զաժային մոտիվներ, որոնք բնորոշ լինեին հայրենի բնաշխարհին, հարազատ
նրա անզուգական ու ընդհանրական կերպարին։ Սարյանի ստեղծած պեյզա-
ժային արևաշող շարքը, իր բովանդակությամբ ու տրամադրությամբ արտա-
հայտում է մեր երկրի վերելքը՝ իր առանձին շրջաններով։ Սարյանը քսանա-
կան թվականներին նկարում էր իր շրջապատի ինտիմ պատկերները, երևան-
յան անկյուններ, գյուղական մոտիվներ (եզներով ու գութանով, ուղտի քարա-
վաններ), ինչպես՝ Իմ բակը (1923 թ.), Լեռներ (1923 թ.), Քարավանը (1926
թ.), Հին Երևանի մի անկյուն (1928 թ.)։ Այդ երևույթը շատ բնական էր ու
անկեղծ, կյանքի և բնության հետ կապված նկարիչը այլ կերպ վարվել չէր կա-
րող։ Երկիրը նոր էր վերականգնվում, շինարարությունը դեռևս լայն թափ չէր
ստացել ինչպես այսօր, հողից բարիք ստանալու տեխնիկական միջոցները
դեռևս հին էին։

Հետագա տարիներին Սարյանի պեյզաժներում երևան են գալիս նոր մո-
տիվներ. օրինակ՝ Հինը և ամենանորը, Կամրջի շինարարությունը, Ալավերդու
պղնձաձուլարանը և այլն։ Նրանցից հետո և մինչև այսօր էլ նրա պեյզաժնե-
րում մենք տեսնում ենք մեր երկրի աստիճանական վերափոխումը։

Տարբեր շրջաններում տարբեր է հայկական մեր պեյզաժը իր բնույթով,
իր հավաքական կերպարով. Զանգեզուրը՝ հեքիաթային է, Լոռին՝ ռոմանտիկ,
Եղեգնաձորը՝ էպիկական, Սևանը՝ երազային, Արարատյան դաշտը՝ խոհա-
կան։ Սարյանը լավ է ըմբռնել այդ յուրահատկությունները։

Նրա պեյզաժները տեղամասի պասսիվ պատճենահանություններ չեն, այլ
հեղինակի բնության հանդեպ ունեցած ակտիվ վերաբերմունքի արգասիք, նրա
յուրաքանչյուր էտյուդի մեջ կամ նկարում դուք կգտնեք այդ կերպարների
մանրիկները։

Հայաստան բնաշխարհն ու Սարյանը այնքան են իրար ձուլված, որ դժվար
է նրանց անջատ պատկերել։ Ով մեր սքանչելի աշխարհը տեսնելուց առաջ
դիտում է Սարյանի պեյզաժները, հմայվում է Հայաստանով, իսկ Հայաստա-
նը տեսնելուց հետո հիանում է Սարյանով։

Կերպարային ընկալումների և նրանց ինքնատիպ վերարտադրությունների
մեջ է հենց Սարյանի նկարչության ներգործության ուժը։

Սարյանը հայրենի բնության երգիչն է, պոետը։

Մարտիրոս Սարյանի արվեստում խոշոր ու կարևոր տեղ է գրավում դիմանկարչությունը։ Վաթսունամյա ստեղծագործական գործունեության ընթացքում նա կերտել է մեր դարաշրջանի մարդկանց մի ամբողջական գալերեա։ Պորտրետների գեղանկարչական լեզուն ինքնատիպ է, լակոնիկ, ընդհանրացումներով, գույնով ձլատ, բայց խոսուն, գծանկարով ամուր։ Նրա ամեն մի դիմանկարն ապրող, կենդանի մարդ է, արտահայտում է որոշակի տրամադրություն։ Ելնելով բնորդի անհատական հատկություններից, հոգեբանությունից, խարակտերից, Սարյանը միշտ գտնում է կոմպոզիցիոն համապատասխան լուծում, գունային արտահայտիչ գամմա։ Նկարելու ժամանակ Սարյանը բնորդին թողնում է ազատ, հետո զրուցում և այդ ընթացքում որսում է նկարվողի խարակտերի ու հոգեբանության բնորոշ կողմերը։ Նկարչի ստեղծած դիմանկարների շարքը խիստ բազմազան է, կերպարային լուծումներով, գեղանկարչական ընդհանրացումներով հարուստ։

Ընդհանրացումը Սարյանի ստեղծագործական մեթոդի հիմնաքարերից է։

Բնությունից, մարդկանցից, շրջապատից ստացած տպավորություններն անցնում են նկարչի ստեղծագործական ֆիլտրով, զտվում, ազատվում մանրուքից, ոչ հատկանշականից։ Նա վերցնում է տվյալ երևույթի միայն բնորոշ, հիմնական կողմը և ընդհանրացնելով այն՝ տալիս է ինքնատիպ կերպավորում։ Մարդու հոգեվիճակ, նրա արտաքին դիմագիծ, թե բնության առանձին կտորներ է պատկերում վարպետը, միևնույն է, նկարչի վրձնի տակ դրանք դառնում են տվյալ օբյեկտի իսկական ու ճշմարտացի գեղարվեստական վերարտադրումը։ Այդ մեթոդը Սարյանը փայլուն կերպով կիրառում է ինչպես պեյզաժում, այնպես էլ պորտրետային ստեղծագործություններում։ Այդպիսիք են՝ Ինքնանկարը, Երեք հասակների ինքնանկարը, Ավ. Իսահակյանի, Ե. Չարենցի, Հ. Օրբելու, Կ. Սարաջևի, Ա. Թամանյանի, Մ. Լազինսկու, Ն. Ջարյանի, Հ. Դանիելյանի, Ս. Աղաջանյանի, Ս. Էյզենշտեյնի և շատ ուրիշների գեղարվեստական բարձր արժանիքներով օժտված պորտրետները։

Ե. Չարենցի դիմանկարում հեղինակն ընդգծել է ռևոլյուցիայի մեծատաղանդ պոետի խորաթափանց, սևեռուն ու խրոխտ հայացքը։ Այդ արտահայտության մեջ ամփոփված է բանաստեղծի պոեզիայի հատուկ ռևոլյուցիոն ռոմանտիկ թափը։

Այլ լուծում է ստացել մեծ բանաստեղծ Ավետիք Իսահակյանի դիմանկարը։ Դեմքն արտահայտում է մտքերի ու հույզերի բեռան տակ կքած, աշխարհի ու մարդկանց վշտով համակված փիլիսոփա պոետի կերպարը։ Ավ. Իսահակյանի հայացքը խորիմաստ է, երազկոտ և ուղղված է դեպի հեռուն։

Այլ է Հ. Օրբելու կերպարի մեկնաբանումը։ Նրա բաց ու բարձր ճակատը, խոհուն հայացքը, հազիվ նշմարվող ժպիտը, կամրջող ձեռքերը, գիտնականին բնորոշող մորուքի ու մազերի հարդարանքը, այս բոլորն արտահայտում են բարձր ինտելեկտով օժտված անձնավորության էությունը։

Սարյանը մի շնչով, արագ, ինչպես ճեպանկար, ստեղծել է իր լավագույն պորտրետներից մեկը՝ Կ. Սարաջևի կենսախինդ, խոսուն դիմանկարը։ Դիմագծերի մեջ արտահայտված է մարդու ողջ էությունը։ Ժպտում են աչքերը, շուրթերը, որքա՜ն բարություն կա հայացքի մեջ. կերտված է մարդը՝ իր խարակտերով, երազանքներով, լավատեսությամբ։

Ինքնանկարների շարքը հատուկ տեղ է գրավում Սարյանի պորտրետային ստեղծագործությունների մեջ։ Դրանց միջոցով նկարիչն արտահայտել է տարբեր շրջանների իր մտքերն ու տրամադրությունները. մի տեսակ ինքնակենսագրականներ են դրանք՝ գրված գեղանկարչական ինքնատիպ լեզվով։ Կոմպոզիցիոն մտահղացմամբ բացառիկ է և հետաքրքրական Հայրենական պատերազմի տարիներին նկարած Երեք հասակներ ինքնանկարը։ Այդ կտավում հեղինակը ներդրել է խոր բովանդակություն՝ կապված հասարակական և անհատական բնույթի հոգսերի, ապրումների ու մտորումների հետ։ Այլ է Սարյանը ավելի ուշ՝ 1948 թվականին։ Նա արդեն ձեռքին ամուր բռնել է վրձինը, անցել խաղաղ, ստեղծագործական աշխատանքի։ Թափանցող ու որոնող է նրա հայացքը՝ հառված ապագային։ Սարյանն ստեղծել է նաև անհատական ներքնաշխարհով հարուստ, խարակտերներով տարբեր դերասանների դիմանկարների մի գալերեա։ Նրանց մեջ արտահայտչականությամբ, կենսունակությամբ, գծանկարի լակոնիկ և կուռ կատարմամբ աչքի են ընկնում, հատկապես, Ա. Ոսկանյանի, Հասմիկի, Մ. Մանվելյանի և Վ. Փափազյանի դիմանկարները։

Սարյանի արվեստում գունագեղությամբ հարուստ, նշանակալի է նաև մի այլ, շատ կարևոր բնագավառ՝ թատերական նկարչությունը։ Սարյանի գեղանկարչական սկզբունքները, գունային վառ երանգապնակը արվեստի լակոնիզմն ու պարզությունը լիովին ներդաշնակ են և անմիջականորեն արձագանքում են թատերական նկարչության պահանջներին։ Այդ է հիմնականում պատճառը, որ Սարյանը դեռևս երիտասարդ տարիներին գրավվեց թատրոնով ու դարձավ թատերական նկարչության խոշորագույն վարպետներից մեկը։ Նա գործել է ռուսական բեմի մեծ վարպետներ Թաիրովի, Բուրջալովի և Բալիևի հետ։ Սարյանը բեմական այն հազվագյուտ նկարիչներից է, որ ամեն անգամ թարմ, ինքնատիպ տարածային ու գունային կոմպոզիցիոն լուծումներ գտնելով՝ օգնում է ռեժիսյորին ու դերասանին՝ ստեղծելով բեմադրական լայն հնարավորություններ։

Կ. Ստանիսլավսկին 1929 թվականին ծրագրում էր բեմադրել Ոսկե աքաղաղ օպերան։ Երկար ժամանակ նա չէր կարողանում գտնել իր մտահղացումներին համապատասխան նկարիչ-ձևավորող։ Մինչև բեմադրական աշխատանքներն սկսելը Ոսկե աքաղաղի վրա աշխատել են մի քանի նկարիչներ, ինչպես՝ Կրիմովը, Իվանովը, Լենտուլովը. սակայն նրանցից ոչ մեկի ձևավորման էսքիզները չէին բավարարում Ստանիսլավսկուն։ Մի օր նա տեսնում է Սարյանի պեյզաժներից մեկը և, նրա արվեստով հմայված, հրավիրում է նրան՝ ձևավորելու Ոսկե աքաղաղը։ Գեղանկարիչ Սարյանը, որ գիտե ներթափանցել կյանքի ու բնության խորքը, պատկերել այն հորդառատ զգացմունքներով, կենդանություն, նոր շունչ տալով իր ստեղծագործությանը, թատրոնում ևս, դրամատուրգիական գործի նկատմամբ դրսևորել է նույն մոտեցումը։ Նա ձևավորումներ է ստանձնել միայն այն դեպքում, երբ դրամատուրգիական երկը ներդաշնակել է իր մտքերին ու հույզերին, ոգևորել, կլանել է նրան։ Շատ հաճախ նա մերժել է, երբ գործը իր սրտի հետ չի խոսել։ Այդ է հիմնապատճառը, որ Սարյանը թատերական ձևավորման բնագավառը հարստացրել է այնպիսի սքանչելի գործերով, ինչպիսիք են՝ Ոսկե աքաղաղը, Ալմաստը, Դավիթ Բեկը և Ֆիլոմենա Մարտուրանոն։

Սարյանի բեմական ձևավորումները ներծծված են թատերայնությամբ. նա քաջ գիտե դրամատուրգի, ռեժիսորի, նկարչի, դերասանի համագործակցության մեծագույն նշանակությունը, նրանց ստեղծագործական միասնության

անհրաժեշտությունը, առանց որի դժվար է ստեղծել կատարյալ և բարձր բեմական արվեստ։ Սարյանի ձևավորումները միշտ էլ օգնել են ամրացնելու այդ կոմպոնենտների ներդաշնակ միասնությունը։

Մոսկվայում 1939 և 1956 թվականներին կայացած Հայաստանի գրականության և արվեստի տասնօրյակների ժամանակ, Ալմաստի ու Դավիթ Բեկի ձևավորումները գնահատվեցին որպես սովետական թատերական ձևավորման արվեստի մեծարժեք գործեր։ Սարյանի մեծ վարպետության, բարձր ճաշակի, բեմադրական արժանիքների մասին դրվատական խոսքեր են ասել ռուսական թատերական մշակույթի այնպիսի վարպետներ, ինչպես՝ Ա. Նեժդանովան, Գ. Կաչալովը, Վ. Նեմիրովիչ-Դանչենկոն, Պ. Վիլյամսը, Վ. Ռինդինը և շատ ուրիշներ, ինչպես նաև մամուլը։ Ալմաստը Սարյանի թատերական ձևավորումների բնագավառում կուտակած փորձի, հմտության, վարպետության գլուխգործոցն է։ Այդ ստեղծագործության մեջ առկա է հայկական պեյզաժի էպիկական ու ռոմանտիկ շունչը, մեր ճարտարապետության վեհության գաղափարը. երաժշտական կերպարների ներքին բովանդակությանը ներդաշնակող գունեղ ու պարզ արտաքին կերպավորումը։ Ալմաստը թատերական ձևավորման ազգային արվեստի փայլուն արտահայտություններից է։ 1956 թվականին Սարյանը ձևավորեց Դավիթ Բեկը։ Ձևավորման մտահղացումը ամբողջովին բխում է դրամատուրգիական երաժշտական երկի ներքին բովանդակությունից։ Այստեղ արդեն Սարյանի ձևավորումը ներդաշնակում է օպերայի հայրենասիրական-հերոսական բովանդակությանն ու տրամադրություններին։

Մարտիրոս Սարյանի՝ թատրոնի հետ ունեցած սերտ կապի ծնունդ է դեռևս 20-ական թվականներին սովետահայ դեկորատիվ նկարչության գոհարներից մեկը՝ թատրոնի հայտնի վարագույրը։ Հայաստան է կոչել նկարիչն իր այդ գործը, ուր նրան հաջողվել է մեծ վարպետությամբ պատկերել մեր բնաշխարհի հավաքական կերպարը։

Մարտիրոս Սարյանի ինքնատիպ ազգային արվեստը հենվում է հայ նկարչության տրադիցիաների վրա, նրա մեջ միահյուսված են ռուսական առաջավոր գեղանկարչության և արևմտաեվրոպական արդի արվեստի լավագույն տարրերն ու նվաճումները։ Սարյանի արվեստը դուրս է գալիս ազգային շրջանակներից, շատ ավելի լայն են նրա պարզ, գրավիչ ու գունեղ գեղանկարչության սահմանները. Նրա արվեստի արտահայտչական ձևերն արդիական են, մատչելի շատ ու շատ ազգությունների։ Ով գեթ մեկ անգամ տեսել է Սարյանի գործերը, չի կարող թոթափել նրա հմայքի կախարդիչ ուժը։ Սարյանի արվեստից ստացած տպավորություններն անջնջելի են։

## Վ. ՏԵՐՅԱՆԻ ԾՆՆԴՅԱՆ 80-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ

Վ. ՊԱՐՏԻԶՈՒՆԻ

Պրոֆեսոր, գիտության վաստակավոր գործիչ

# Վ. ՏԵՐՅԱՆԸ ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Գրականագիտությունը չի քննել այս հարցը։ Նախապատրաստության իմաստով էլ քիչ բան է արված. վաղուց հրատարակված են «Թումանյանը քննադատ», «Րաֆֆին գրականության մասին», «Վ. Փափազյանը գրականության մասին» և այս տիպի այլ ժողովածուներ, սակայն «հիշելու» հերթը Տերյանին չի հասել։ Եթե չհաշվենք «Հայ գրականության գալիք օրը» զեկուցման և Տերյան-սիմվոլիզմ հարցի առթիվ մամուլում տպագրված մի քանի հոդվածները, ապա Տերյանը գրականության մասին հարցը մեզ կներկայանա «գրականագիտական խոպանի» մեծ շերտերից։ Միայն զարմանալ կարելի է, որ հայ գրականագիտության տեսադաշտից դուրս է մնացել մեր ամենից սիստեմատիկ բանասիրական կրթություն ստացած, շատ զարգացած և առաջավոր հայացքներ ունեցող, կյանքի վերջին շրջանում պետական խոշոր գործիչ դարձած մեծ գրողի գրական հայացքների ուսումնասիրությունը։

Ուզում եմ, վաղվա ցնծության գուշակ,<br>
Կարոտըս նետած լուսեղեն հեռուն,<br>
Վառել երգերըս, որպես դրոշակ,<br>
Ու մեռնել, որպես հերոսն է մեռնում...

Շա՞տ են արդյոք հայ գրականության մեջ այսպիսի տողերը։ Եվ սկսած 1910 թվականին։ Կռվողների հզորազոր շարքերը տեսնելու, հաղթական մարտի ցնծությունը լսելու ցանկությամբ համակված բանաստեղծը գրականության դերը այդ կռվողների համար «հրեղեն խոսքեր» կռելու, նրանց խանդավառելու, «ցրիվ գնդերը զինելու» և պայքարի հանելու մեջ է տեսնում։ Այդ համոզումը Տերյանը արտահայտել է ո՛չ մի անգամ, ո՛չ մի առիթով, այլ սկսած գրական առաջին թոթովանքներից («Հոկտեմբերին», «Քաղաք» և այլն), մինչև աշխարհին ու մարդուն ուղղած վերջին խոսքերը («Հարյավ հավետ, հարյավ հոգին իմ որբ», «Գազել» (Սիրտդ որպես...) և այլն)։ Ինչո՞ւ

չեն նկատվել։ Ինչո՞ւ չեն նկատվել նաև ոչ այնպես «ուղղակի» («քաղաքացիական» պոեզիայի տեսակին մոտեցող կամ նրա սահմաններում գտնվող) ասված բազմաթիվ այլ գործեր։ Մի՞թե նրա համար, որ սրանք հայացքներ չեն թեզերի ձևով շարադրված, իբրև հոդված թղթին տրված, իբրև զեկուցում կարդացված։ Բայց ինչո՞ւ չի դիտված, որ պոեզիայի, գրականության մասին այսպիսի տեսակետի հեղինակը չէր կարող իր մտքերը չարտահայտել նաև հոդվածներում, նամակներում և այլ կարգի ելույթներում։ Եվ արտահայտել է—արտահայտել բավականին հիմնավոր, որոշակի, երբեմն նաև ոչ նուրբ՝ ուղղակի ու խիստ։ Կռվել է և՛ գրական հրապարակում տիրապետի պոզայով ամկարարությամբ ու մոդեռնի հրապուրանքով ցնքեր շաչեցնող «Նորարարների» («Մեհյան», ֆուտուրիստներ), և՛ տիրացուական-սեմինարիստական կուլտուրայի աղքատիմաց գաղափարախոսների, և՛ ապաշնորհ ոտանավորչիների, և՛ «արյան ձայներ» հնչեցնողների դեմ։ Կռվել է ազնվորեն ու բաց դաշտում, կռվել է իբրև քաջամարտիկ և կոչել ընթանալ դեպի արվեստի հեռուներն ու բարձրերը, ստեղծել ազգային ու համամարդկային մեծ արվեստ։ Կռվել ու իր դեմ է հանել հակառակորդների, որոնք մի տարածված օրենքով («Թույլերի միություն») միացել են և, դժբախտաբար հաջող, դավ նյութել՝ իրենց ստեղծագործության խիստ քննադատությունը համարել հայ գրականության (մի դեպքում արձակի, մի այլ դեպքում՝ արևմտահայ պոեզիայի) ժխտում, Տերյանին էլ՝ նիհիլիստ։

Մեծ գրողը «պոետական զբաղմունքը» հաճախ է ընդմիջել հասարակական-քաղաքական ու գրական կյանքի մասին ելույթներով և շատերին զարմացրել «լիրիկ պոետին ոչ բնորոշ» խստությամբ ու սկզբունքայնությամբ։ Անտեսելով այս, սովետահայ գրականագիտության մեջ ասել են, թե Տերյանը «պատրաստակամ» աշխատակցել է «այլ և այլ» «տարամերժ» պարբերականների։ Մեր ձեռքի տակ եղած գրեթե անհամար փաստերից նշենք մեկ-երկուսը։ 1914 թ. հունվարին, ի պատասխան ընկերոջ՝ Ց. Խանզադյանի հորդորի (աշխատակցել «Բաքվի ձայն» թերթին, որի խմբագիրներից մեկը ինքն էր), Տերյանը գրել է. «Ես չեմ աշխատակցել «Բաքվի ձայն»-ին, որովհետև այն չի եղել «խիստ սկզբունքների հետևող օրգան», «ցիտադել որոշ գաղափարների, քարոզիչ չընդունված մի սկզբունքի» (ընդգծումը բնագրում է։ Առանց այսպիսի վերապահության բոլոր ընդգծումները մերն են—Վ. Պ.)։ «Ձեր թերթը գաղափարական տեսակետից բոլորովին հեռու է իմ ըմբռնումներից», շարունակում է Տերյանը. «Ախր հանուն ի՞նչ գաղափարի ես պիտի գրեմ մի թերթում... որի գաղափարները իմ գաղափարները չեն, որի աշխատակիցների մեծ մասը ինձ հակառակ են գաղափարով և անհամակրելի»։ Այդ նույն դիրքերից նա մերժել է բազմաթիվ պարբերականների՝ աշխատակցելու հրավերները և զայրացել, որ համարձակվում են դիմել իրեն, «առանց դրա համար գաղափարական հիմունք ունենալու» (ընդգծումը բնագրում է—Վ. Պ.)։ Այս կարգի բազմաթիվ փաստերը ցույց են տալիս, որ Տերյանը ոչ միայն «պատրաստակամ» չի աշխատակցել «տարամերժ» «այլ և այլ» օրգանների, այլև հանդես է բերել այսօր իսկ հիացնող սկզբունքայնություն։ Մեծ պոետը շարունակ երազել է հիմնադրել «մի կարգին ամսագիր» կամ «իսկական, մեծ լրագիր» և ցույց տալ, «թե ի՞նչ է իսկական ժուռնալը, ի՞նչ է իդեական խոսքը և իսկական գրականությունը» (ընդգծումը բնագրում է—Վ. Պ.)։ Ու թեև չիրականացավ այդ երազանքը, բայց նա իրեն հուզող հարցերի մասին արտահայտվեց ամենատարբեր առիթներով։ Հոդվա-



ծի սահմանները մեզ հնարավորություն չեն տալիս անդրադառնալու Տերյանը գրականության մասին թեմայի բոլոր հարցերին, այդ պատճառով առանձնացնում ենք դրանցից մի քանիսը։

***

Տերյանին խորապես մտահոգել է անցյալում աշխարհին հիացնող գրական կոթողներ ստեղծած ժողովրդի նոր գրականության ետ մնալը կուլտուրապես առաջավոր ժողովուրդների գրականությունից։ Զբաղվարարվելով ետ մնալու բացատրությամբ, նա հետամուտ էր առաջ տանող ուղիների որոնման։ Հետաքրքրական է, որ «ետ մնացած լինելու» խիստ կարևոր հարցը ժամանակին հուզել է նաև ռուս գրականության մեծերին։ Ինչպես նշում են այդ գրականության պատմագիրները, վերածնության էպոխայից մինչև XIX դարի ռեալիզմը (շուրջ 400 տարվա ճանապարհ) ռուս գրականությունը պետք է անցներ մի հարյուրամյակում՝ XIX դարում։ Եվրոպական գրականությունները դանդաղ և հաջորդականությամբ անցել էին կլասիցիզմ, սենտիմենտալիզմ, ռոմանտիզմ, ռեալիզմ։ Ռուս գրականությանը զարգացման այդ արագությունը չէր կարող բավարարել։ Պուշկինի առիթով Բելինսկին նկատել է, որ «Արևմուտքում հետևողականորեն զարգացած եվրոպական կյանքի բոլոր մոմենտները մենք ապրում ենք միանգամից»։ Այդտեղ մեկը՝ Պուշկինը, պետք է նվաճեր Եվրոպայի անցած մի քանի աստիճանները, պետք է կտրեր ռուս և եվրոպական գրականությունների միջև ընկած ճանապարհը. «Պուշկինը,— գրում է այդ մասին Գ. Գուկովսկին,—անցավ Վալտեր Սկոտից մինչև Բալզակը ներառյալ ընկած ճանապարհը յուրովի ինքնուրույնաբար, առանձնահատուկ պայմաններում և ռուսական ազգային տրադիցիայի առանձնահատուկ գաղափարական հագեցումով» («Пушкин и проблемы реалистического стиля», 1957, стр. 130)։ Ապա հետևեց այնպիսի արագ մի ընթացք, որ մինչև XIX դարը Արևմտյան Եվրոպային գրեթե անծանոթ ռուս գրականությունը դարձավ աշխարհի ամենահարուստ գրականություններից մեկը, ընդհանուր հիացումի արժանի։

Պատմականորեն ավելի ծանր վիճակում էր հայ նոր գրականությունը։ Եվրոպական գրականությունների մեջ վաղուց անցած էտապները մեզ մոտ են նվաճված չէին։ Եթե իր զարգացումը համեմատաբար ուշ սկսած ռուս գրականության մեջ XIX դարի 30-ական թվականներին ռոմանտիզմը դիրքերը զիջում էր ռեալիզմին և իշխող ուղղությունը դառնում էր վերջինը, ապա հայ գրականության մեջ նույնիսկ դարի վերջին տասնամյակներին դեռ վիճում էին «կյանքը ինչպես որ է», «կյանքի պատկերներ» սկզբունքի շուրջ, դեռ Թումանյանն ու Շիրվանզադեն հոդվածներ էին գրում ի պաշտպանություն ռեալիզմի։

Հայ նոր գրականությունը ռուսականից ետ էր մնացել մի քանի տասնամյակով։ Ռուս գրականության երկնակամարից արդեն հեռացել էին Լոմոնոսովը, Դերժավինը, Ֆոնվիզինը, Ռադիշչևը, Կարամզինը, Գրիբոեդովը և շատ ուրիշներ։ Պուշկինն ու Լերմոնտովը համաշխարհային գրական մրցահանդեսին էին հանել ռուս գրականությունը, աշխարհն ակնդետ հետևում էր իրենց գրական գործունեությունն ավարտող Կռիլովին ու Գոգոլին (վերջինս երկնում էր իր աշխարհահռչակ «Մեռած հոգիներ»-ը), իսկ Աբովյանը դեռ խորին ցավով երկմտում էր, թե ինչ լեզվով գրի իր սրտի խոսքը՝ «Վերք Հայաստանի»-ն։ Ժո-

ղովուրդը դեռ նոր էր ազատվել պարսկական տիրապետության ամենակուլ զնդանից և «այրը գյուղլով էր վեր գցում»։

Իհարկե, դժվար չէ բացատրել հայ նոր գրականության այդ ուշացման պատճառները—պետք էր լուծել նախ ապրելու, գոյատևելու հարցը։ Հայ ժողովրդի ծանր ճակատագրի պայմաններում մեր գրականությունը մեծ սխրանք էր, սակայն, հաստատ է, որ այն ետ էր մնում կուլտուրական զարգացած երկրների առաջընթացից։ Մեր նոր գրականության «դանդաղաշարժությունը,— նշում է Տերյանը,— մեծապես կախում է ունեցել մեր հասարակական-տնտեսական և կուլտուրական զարգացման դանդաղությունից», բայց փաստ է, որ նա դանդաղ է առաջ ընթացել, «նա չի ստացել խոշոր նշանակություն, նա չի ստեղծել իր համար լայն ուղիներ, նա չի արտադրել համամարդկային նշանակություն ունեցող գրվածներ, նա նախապատրաստական մի գրականություն է եղել մինչև վերջին տասնամյակները»։ Պետք չէ մոռանալ, որ Բրյուսովի ու Բլոկի պոեզիայի ձևավորման շրջանում մեր գրականության մեջ դեռ շարունակվում էին առասպելների մշակումները, դեռ նոր էին գրականություն մտնում իսկական քաղաքաբնակն ու մտավորականը, գրականությունը նոր էր «մշակում» աշխարհի ընկալման «նրանց տեսանկյունը»։ Անդրադառնալով մեր գրականության ետ մնալու հարցին, Տերյանը գրել է. «Աբովյան, Նալբանդյան, Նալբանդյան, Շահազիզ, Պռոշյան, նույնիսկ Րաֆֆի, Աղայան, նույնիսկ ուրիշները, նույնիսկ նոքա, որ դեռ կենդանի են, որքա՜ն սրբագործված, նվիրական անուններ—և միևնույն ժամանակ կարմանալի չէ՞, որքա՜ն, որքա՜ն հեռավոր... մարդկանց անուններ են դոքա ինձ համար և այն սերնդի համար, որին պատկանում եմ ես»։

Ճշտենք՝ խոսքը պատմական արժեքի ու ծառայությունների մասին չէ (որքա՜ն սրբագործված, նվիրական անուններ), այլ ա՛յն, որ XX դարի մարդը՝ Տերյանի սերնդի մարդը, ապրում էր այլ հարցերով ու շահագրգռություններով։ Թեև անցյալը դեռ լրիվ անցյալ էլ չէ, ասում է Տերյանը, թեև շատերի սրտերում դեռ ապրում են այդ անցյալի գործիչների իդեալներն ու բաղձանքները, «սակայն չնայած այդ ամենին՝ մի անսահման հեռավորություն, մի անանցանելի անջրպետ բաժանում է ներկայի մարդուն այդ մոտիկ, կարծես դեռ չմեռած անցյալից։

Եվ իրավի, որքան տարօրինակ ու անհասանելի կերպով հեռավոր պիտի թվան մեր օրերի ինտելիգենտ մարդու համար թեկուզ Սմբատ Շահազիզի «Լևոնի վիշտը» կամ Ռափայել Պատկանյանի ազգային և ռազմական երգերը։ Կամ կարո՞ղ են տարօրինակ ու հեռավոր չթվալ մեր օրերի ինտելիգենտ մարդուն Պռոշյանի պարզամիտ հյուսվածները կամ Րաֆֆիի նման թեկուզև հանճարեղ մարդու ստեղծագործությունը, երբ մեր օրերի այդ ինտելիգենտը ոչ միայն Պուշկինին և Դոստոևսկուն ավելի լավ է ճանաչում, քան երեկվա սերունդը, այլ որն անցել է և նորագույն եվրոպական և մանավանդ ռուսական գրականության բովով»։

Տերյանը չէր սխալվում։ XX դարի տասնական թվականների «նոր ինտելիգենցիան» շատ բաներում հեռու էր Շահազիզից ու Պատկանյանից, մյուսներից։ Այդ ինտելիգենցիան այլ կերպ էր մտածում ու զգում, այլ կերպ արտահայտվում։ Որքա՜ն բաներ էին փոխվել «Լևոնի վշտից» մինչև Թումանյանի ու Մեծարենցի պոեզիան.

Ժամանակակից գրում եմ լեզվով,<br>Որ ամենայն մարդ կարդա, հասկանա-*ից*

մինչև Տերյանի պոեզիայի լեզուն, նրա ընկալումները, լիրիկական հերոսը, պատկերը, արտահայտչական միջոցները։ Այս իմաստով է Տերյանը գործածում «հարազատ զգալ» արտահայտությունը և ոչ այն, թե պետք է ժխտել նրանց ժառանգությունը, պատմական դերը, ծառայությունները։ Անցյալի ժառանգությունը թանկ է, բայց անցյալի գրողների մտքերի կրկնությունները և նրանց պես մտածելն ու գրելը՝ անթույլատրելի։ Աբովյանի, Նալբանդյանի, Րաֆֆու անունները Տերյանը «սրբագործված ու նվիրական» է համարում, բայց XX դարում նրանց պես գրելը՝ «զարմանալի», «անհասկանալի»։ Մեր գրականության զարգացման դանդաղաշարժության արտահայտություններից էր նրա մի միակողմանիությունը։ Մեր նոր գրականության թեման, գրել է Տերյանը, հիմնականում եղել է գավառը, գյուղը՝ չնայած այն հանգամանքին, որ նրա ծագումը եղել է մեծ քաղաքներում։

Անպայմանորեն ճիշտ է, որ, մանավանդ մինչև դարի վերջին տասնամյակները, մեր գրականության հիմնական նյութը եղել է գյուղը։ Հայաստանը եղել է գյուղաշխարհ, նրա գրականությունն էլ՝ հիմնականում այդ գյուղաշխարհի գրականություն։ Քաղաքի մարդը, մանավանդ մտավորականը, ավելի ուշ մուտք գործեցին գրականություն։ Ինչքա՜ն, ինչքա՜ն գյուղացի Սաքոներ («Առաքյալ»), Վեդունց Սարգիսներ («Նոյի ագռավը»), խոջաներ, տանուտերեր, պարտատեր ու պարտապան գյուղացիներ, մոլրոններ, պիսրներ և մի քանի Ալիմյաններ («Քաոս») ու Էլիզբարյաններ («Պատվի համար»), Նասիբյաններ ու Բաղդասարյաններ («Պայքար»)։ Ինչքա՜ն շատ գութանի երգեր, կալի երգեր և ինչքան քիչ «Մթնշաղի անուրջներ», «Կատվի դրախտ», «Ոսկի հեքիաթ»։ Իհարկե, և՛ գյուղը, և՛ քաղաքը պատկերող երկերում հերոսները մարդիկ են իրենց մարդկային հոգեբանություններով, բայց անկարևոր բան չեն հերոսի հասարակական միջավայրը, տիպական այն հանգամանքները, որոնց մեջ ձևավորվում են այդ հերոսների գծերը։

Պատկերացրեք մի գրականություն, որի բոլոր կերպարները միայն քաղաքաբնակներ լինեն։ Չէ՞ որ այդպիսի գրականության մեջ չեն լինի գյուղը, գյուղի մարդը, գյուղի բնանկարը, գյուղի բույրը, գյուղացու կյանքը, հոգեբանությունը, նրա մտորումները, լեզվամտածողությունը, բառ ու բանը։ Այնպես որ «կարևորը մարդն է» ասելով կարևոր այդ հարցի վերջերս նկատվող անտեսումը ճիշտ չէ։ Ո՞ր մարդը, տիպական ինչպիսի՞ հանգամանքներում գտնվող մարդը—սրանք շատ կարևոր խնդիրներ են։ Արդյոք նաև այդ չէ՞ր պատճառը, որ երկար ժամանակ ոմանք Տերյանի պոեզիան համարում էին ոչ հայկական. նաև այդ չէ՞ր պատճառը, որ Շիրվանզադեին խորթ էին համարում հայ գրականությանը։ Որքան էլ Տերյանի մոտ ընդգծված, չափազանցված լինի հարցը (ավելի ճիշտ՝ ձևակերպումը), մի բան անկասկած է՝ գյուղաշխարհի գրականության մեջ չէին կարող ստեղծվել Տերյանի պոեզիան, Շիրվանզադեի արձակն ու դրամատուրգիան, այդ գրականությանը խորթ կմնային շատ թեմաներ, նյութեր, կերպարներ։ Տերյանը ուրիշ պակասներ ու թերություններ նույնպես նշում է (առանձին դեպքերում գեղարվեստականության, «կիրթ ստեղծագործության» պակաս, թեմաների ու ձևերի պարզունակություն ու սահմանափակություն)։ «Մենք շատ ենք ետ մնացել,— ասում էր նա։—Այսպես չի կարող մնալ մեր գրականությունը։ Պետք է թափ տալ նրան և բարձրացնել» (Ստ. Զորյան, Հուշերի գիրք, 1958, էջ 191)։

Սա, իհարկե, չի նշանակում, թե Տերյանը չի տեսել մեր նոր գրականության նվաճումները։

«Մեր գրականությունը,— *գրել է նա,*— սկսում է ավելի մոտենալ գեղարվեստին, նա ավելի շատ է կքաղվում գեղարվեստական կողմով, աճում է կուտ գեղարվեստական նշանակություն ունեցող գրվածների թիվը, և պակասում են դիդակտիկ, միտումնավոր, եթե կարելի է այսպես ասել՝ հրապարակախոսական բանաստեղծությունները։ Ավելի խորն է դառնում պոեզիան, ավելի ներդաշնակ ու գեղեցիկ ձևի մեջ են շրջանակվում թեկուզև հին գաղափարները, ավելի նուրբ է դառնում և արտահայտիչ լեզուն, ավելի իրական պատկերները և բազմակողմանի, թեպետև ավելի պարզ մտածողությունը։ Այս գծերն անտարակույս **մեծ առաջադիմության** մասին են վկայում»։

*Եվ, այնուհանդերձ, Տերյանը դժգոհ էր հայ նոր գրականության վիճակից։ Պետք էր արագ ընթացքով կրճատել բաժանող ճանապարհը, լցնել վիհը։ Սա էր հիմնական հարցը։ Պետք էր ընտրել առաջընթացի ճիշտ ուղիներ, որոշել հայ գրականության գալիք օրվա խնդիրները։ Այս հարցով էին մտահոգված հայ մեծ գրողներն ու արվեստագետները, այդ թեմային էր նվիրել Տերյանը իր զեկուցումը՝ «Հայ գրականության գալիք օրը»։ Մեր կուլտուրայի երախտավոր մշակները չէին հաշտվում ետ մնալու, «ուշացման» ամենահամոզիչ բացատրությունների ու «արդարացման» հետ։ Ետ մնալը հաղթահարում, բաժանող տարածությունը կրճատում էին հայ մշակույթի մեծ երախտավորները՝ Շիրվանզադեները, Թումանյանները, Իսահակյանները, Տերյանները, Սիամանթոները։ Արևելահայ պոեզիայի նոր և ապա նորագույն աստիճանները (Թումանյանի արտահայտությամբ) նշանավորող ժողովածուները (Հ. Հովհաննիսյանի և Վ. Տերյանի) միմյանցից բաժանված են երկու տասնամյակով (1887—1908), սակայն ամեն տեսակետից դա մի մեծ թռիչք էր, սխրանք։*

*Դեռ քննադատությունը չէր ավարտել իր հիացումի խոսքերը նոր բանաստեղծի՝ Հ. Հովհաննիսյանի բերած նոր մոտիվների, նոր խոսքի մասին, երբ մեր գրականությունը հարստացավ «Մթնշաղի անուրջներով», տերյանական մյուս շարքերով։ Մեծերի, Տերյանի թռիչքը (նախապատրաստված նախորդների գործով) լցնում էր բաժանման վիհը, բերում տեղն էր գցում մեր գրականության ընթացքը և Թումանյանին, մեր նոր գրականության վիճակից ամենից դժգոհին, իրավունք տալիս ասելու, որ Տերյանը հայ նորագույն բանաստեղծության փայլուն ներկայացուցիչն է, և նրա երգերը կարող ենք պարծանքով հանել ռուսաց նորագույն բանաստեղծներից ամենալավերի դեմ։ Ոչ թե քաշվել, զգալ, որ ետ ենք մնացել, այլ դնել ռուսաց նորագույն բանաստեղծներից ամենալավերի դեմ և այն էլ՝ պարծանքով։*

***

*Գրականության գալիք օրվա նախանձախնդիր Տերյանը դժգոհ էր այդ գալիքին ժամանակի իմաստով ամենից մոտ գտնվող ժամանակակից՝ XX դարի առաջին քսանամյակի գրականության վիճակից։ Իհարկե, ճիշտ չէ այն տեսակետը, թե սկսած մեր դարասկզբից (ավելին՝ անցյալ դարի վերջերից) քննադատական ռեալիզմը անկում է ապրում, վերասերվում, քայքայվում և տեղը զիջում է նատուրալիզմին ու գրական այլ հոսանքների։ Նման տեսակետի հիմքերից մեկը սոցիալիստական ռեալիզմն ու քննադատական ռեալիզմն անջրպետելու և միմյանց հակադրելու միտումն է։ Այդ պնդումը ժխտվում է նաև հայ գրականության փաստերով՝ XIX դարավերջին ու XX դարասկզբին ստեղծված գեղարվեստական մեծարժեք գործերով։ Մի բան, սակայն, անկասկած է. XX դարի առաջին տասնամյակներում սունկի պես աճել էին բուրժուական անկումային, հակաժողովրդական հոսանքները, սրվել էր պայքարը գրականության դերի ու նշանակության մասին ամենատարբեր ըմբռնումների միջև, բավական մոդայական էին դարձել ձևապաշտական «նորարարությունները», փոխառված, չայրված զգացումների երգերը, էպիգոնությունը։ Պոեզիայում առատ հունձ էին սկսել «արյան ձայների» տարատեսակները, միստիցիզմի գեղգեղումները, կնոջ մարմնի ու շրջազգեստի վավաշ ներբողերգը, որ հաճախ ձայնակցում էր պոռնոգրաֆիային կամ միանում նրան։ Մի ուրիշ հոսանք բանը հասցնում էր մինչև Նիցշեն, Շոպենհաուերը և ռեակցիայի մյուս քուրմերը, մինչև Արցիբաշևն ու «սուտ հեթանոսությունը» («Մեհյան»)։*

*Ժողովրդի շահերով ու հայրենիքի ծանր բախտով ապրող մեծ գրողները տագնապով էին հետևում այս ամենին, դիմագրավում էին և շարունակում հարստացնել հայ գրականությունը նոր ու անմեռ երկերով։ Ինքնին հասկանալի է, որ այդ մթնոլորտում իսկական արվեստի ու գրականության պաշտպանները չէին կարող խաղաղ ու «ակադեմիական հանգստությամբ» խոսել գրականության վիճակի ու հեռանկարների մասին։*

*Հայտնի է, որ 1913 թվականին Տերյանը «ահով» ու խորին տագնապով այսպիսի տողեր է հյուսել.*

Մի՞թե վերջին պոետն եմ ես,
Վերջին երգիչն իմ երկրի...

*Պատահական տրամադրության արտահայտություն չէ՞։ Ո՛չ։ 1908 թվականի մարտին նա գրել է Ավ. Իսահակյանին. «Մեր գրականության հետևում ես սրտի ցավով և տեսնում նորա սոսկալի կրիզիսը—քո գիրքը (խոսքը «Երգեր ու վերքեր»-ի մասին է—Վ. Պ.) մի զվարթ օազիս է մեր գրական անապատում»։* «Մի խոսքով մեր գրական ասպարեզը բավականին ամուլ ու խղճալի է,— *գրում է Տերյանը նույն թվականի մայիսին։*— Սոսկալի հետամնացություն և տգիտություն»։ *Հետագա տարիներն ավելի են մռայլեցնում պոետի հոգին.* «Երբ մտածում եմ,— *գրել է նա 1915 թվականին,*— որ այս տարի հայերեն մի կարգին գիրք լույս չի տեսել (և արդյոք միայն ա՞յս տարի), դա ինձ սարսափեցնում է» *։ *Տերյանին, մասնավորաբար, զայրացնում էին այդ տարիներին բավական տարածված «վայրենի-շախսեական» գրականությունը, «արյան ձայներ»-ի հակամարդկային գոռում-գոչյունները։*

*Տերյանը մենակ չէր։ Ուրիշ «նիհիլիստներ» էլ կային։ Այդ շրջանի գրականությունից դժգոհ էին մեր նոր գրականության նշանավոր դեմքերը՝ Շիրվանզադեն, Թումանյանը, Իսահակյանը, Նար-Դոսը, Դեմիրճյանը, մյուսները։*

*Շիրվանզադեն 1911 թ. խոսում է «հայ գեղեցիկ գրականության ամայության» մասին։ Եվ շարունակվում է. «ո՞ւր է հայ վիպասանությունը», «մոտ 15 տարի է, որ հայ վեպ լույս չի տեսնում» (Շիրվանզադե)։ «Մեր գեղեցիկ գրականությունը առողջ ու ամբողջական գործեր շատ չունի» (Թումանյան)։ «Գե-*

---

** «Ռուսահայոց գրականությունը 1915 թվին» տեսության հեղինակը խոսելով հայ ժողովրդի աննախընթաց ծանր վիճակի մասին, գրում է. «Այս բոլորից հետո էլ ինչ խոսք կարող է լինել գրականության և այն էլ գեղեցիկ գրականության մասին» («Հորիզոն», 1961, № 1)։*

ղեցիկ հայ գրականության ներկա՞ն: Ո՞րն է այդ, ո՞ւր է այդ: Ես այդպիսի բան չեմ տեսնում, որովհետև չկա» (Նար-Դոս): «1909 թվականին ռուսահայ մեր գրականությունը մի ողորմելի պատկեր է ներկայացնում. այս երևույթը վերջին տարիներումս արդեն բնական իրերի կարգն է դասված» (Իսահակյան): «Մեր ներկա վեպը դեռ մշակման փուլի մեջ է» (Դեմիրճյան): Մենք կարող ենք շարունակել «նիհիլիստների» ասույթները, նրանց ցուցակը և այդ ցուցակից դուրս կմնան ոչ «նիհիլիստները», փոքրերը: Դա է օրինաչափությունը: Փոքրերը բավարարվել են փոքր բաներով, մեծերը՝ ձգտել ու երազել են բարձր, իսկական արվեստ, վեհ բարձունքներ: Այս հարկադրական շեղումից հետո կրկին դառնանք Տերյանին: Նա ոչ միայն մեր գրականության անցած ու ժամանակակից վիճակն է քննում, այլև գալիքի տարբեր ըմբռնումները: Քննադատելով դարասկզբին սունկի նման աճած մոդեռն հոսանքները, որոնք դրոշակ էին ծածանում հանուն նորի, նորագույնի, անցյալը բնավ չհիշեցնողի՝ «չեղած ու չակնկալված»-ի, Տերյանը, իբրև հայ գրականության գալիք օրվա նախանձախնդիր, հասկանալի է, որ ամենից շատ մտահոգված էր գալիքի անունով ասպարեզ մտածների գործունեությամբ: Նա, օրինակ, թեև համառոտ, սակայն անդրադարձել է նաև ֆուտուրիզմին, որի ներկայացուցիչներն այդ ժամանակ լայնորեն պրոպագանդում էին իրենց սկզբունքները: Տերյանը պնդում է, որ գրականությունը կյանքի հետ սերտորեն կապված պետք է լինի և ֆուտուրիզմը համարում է այդ սկզբունքից ետ կանգնելու փորձ: Իսկական գրականությունը պետք է առաջին հերթին իր ժամանակով ապրի, իր ժամանակին ծառայի, արդիական լինի՝ միայն դրանով նա կարող է ծառայել նաև ապագային: Պետք է «ներկայում պատրաստել ապագայի ուղին», ասում է Տերյանը: «Սխալ են նրանք, որ մեր ժամանակում ուզում են ապագայի գեղարվեստ ստեղծել: Դա անհնարին է, որովհետև մեր ժամանակն ուզում է նախ ունենալ իր գեղարվեստը: Այդօրինակ ֆուտուրիզմը անհնարին բան է: Դրա համար է, որ ծիծաղելի է, երբ այժմ հոգում են ապագայի մասին, թողած ներկան: Ապագան ինքը կհոգա իր մասին:

Նրանք, որոնք մտածում են ապագայի մասին, պիտի ներկայում պատրաստեն ապագայի ճանապարհը և ըմբռնելով գալիք օրերի ուղին, չպիտի շեղվեն և շեղեն նրանից»:

Տերյանն ավելի հանգամանորեն խոսել է «Մեհյան» խմբի գրական ըմբռնումների ու ստեղծագործության մասին: Այժմ մոռացության են մատնվել և՛ այդ խումբը, և՛ նրա մասնակիցները ու Տերյանի ասածները հաճախ վերագրվում են գրողների ավելի մեծ խմբի՝ ընդհուպ մինչև ամբողջ արևմտահայ պոեզիային ու գրականությանը:

Պատմությունն այստեղ շատ հարցեր կարող է պարզել, ցրել մշուշը և պայծառ հայացքի ուղի բացել: Բանն այն է, որ XX դարի 10-ական թվականներին արևմտահայ գրականության մեջ պոետների մի խումբ (ունեին և իրենց քննադատ տեսաբանները, օրինակ, Քյուֆեջյանը)՝ Սիրունի, Կ. Զարյան, Ահարոն և ուրիշներ, իրեն համարում էր հեթանոս անցյալի վերածնության, «հայկական ռընեսանսի» ներկայացուցիչը: Եթե նկատի չունենանք Վարուժանին (ժխտում էին նրա հեթանոսությունը), որի հուժկու և ազնիվ տաղանդը նրան փրկում էր այդ «ռընեսանսի» երգիչների մոլորություններից և հակադրվում էր բուրժուական գռեհիկ իրականությանը, ապա մյուսների ստեղծագործության համար բնորոշ էր կտրվածությունը արևմտահայ իրականությունից, ժողովրդին հուզող կենսական հարցերից: Նրանց ներշնչման աղբյուրը եվրոպական գրականության մեջ մոդայական դարձած ֆորմալիս-



տական ուղղություններն էին: Այս ավելի պարզորեն արտացոլվում է «Մեհյան»-ում *:

«Մեհյանի» ինքնառեկլամը աննախընթաց էր՝ «սրբապիղծնե՛ր, զգո՛ւյշ, ջահեր կան հոս...», գրված է հանդեսի առաջին էջում: «Պիտի ըլլանք կարճ, կծու, արյունոտ», «ու մեր գնահատումներուն մեջ մենք պիտի մնանք բացարձակապես անկախ ընկերային (սոցիալական—Վ. Պ.) պայմաններուն սարուկ որոշադրություններեն: Ոչ մեկ հոսանք, ոչ մեկ կուսակցություն, ոչ մեկ գռեհիկ կամ հաջողած հավատք կշիռ չունին մեզի համար»: Առանց հավատքի ու հասարակական շահագրգռությունների, «զուտ գրականություն» ստեղծելու համար նրանք մտնում էին գրականության սրբավայրը և, իրենց իսկ ասելով, մուրճը փորձում բոլոր աստվածների ու կիսաստվածների վրա: «Հարթենք»— այսպես էր հանդեսի բաժիններից մեկի խորագիրը: Դա արշավանք էր մեր գրականության անմեռ արժեքների վրա: Մեհենականները ոչ թե մեր գրականության թերություններն էին քննադատում (որ այնպիսի սրտացավությամբ անում էին Թումանյանն ու Տերյանը), այլ ժխտում էին հայրենի գրականությունն ու արվեստը. մենք «մակաբույծ» ենք, գրում էին նրանք, «որ սարուկ հպատակությամբ» յուրացնում ու «արտադրում» ենք ուրիշների գրածն ու ասածը: Ու թեև «վաղվան գրականության» անունից էին խոսում, բայց չգիտեին, թե ինչպիսին պետք է լինի այդ «վաղվան գրականությունը»:

Քարոզելով «չլսվածն ու չտեսնվածը», նրանք գտնում էին, որ նույնիսկ անհրաժեշտ չէ իմանալ «թե ի՞նչ կուզեն նորերը, եթե գտնվածներուն չեն հավնիր»: «Զուզածն ու չհավնածը» մարդկության դարերով երկնած արժեքներն էին, իսկ ուզածը՝ մթամած դատողություններ «ցեղային զանգվածի» և «ազգայնամոլ իդեալի» մասին, գրականության փսկական ու նվիրական դերի ժխտում: «Արվեստը խենդություն մըն է,—գրում էին նրանք,— և իբր այս, ան կը մնա վեր հեղափոխություններե և ետաշրջություններե: Ինքն իսկ ըլլալով կրոնական մոլեռանդություն մը, վե՛ր է նաև ամեն կրոնքե»:

«Մեհենական խումբը» հայհոյում ու ժխտում էր ռուս գրականությունը, բողոքում «Կուրի ափերեն» (Ռուսաստանից—Վ. Պ.) «վարակիչ ախտի մը պես» տարածված երևույթի՝ գրականությունը կյանքին ծառայեցնելու դեմ: Կյանքից, ժողովրդից, հասարակական շահագրգռություններից կտրված և որևէ սկզբունքի ու նպատակի ծառայելուց հրաժարված «իմացական մարզանքներ»: Հայ գրականության մեջ անկումայնությունը երբեք այդքան բացահայտ չէր դրսևորվել:

Այս ամենից հետո տարօրինակ չէ՞, որ Տերյանին մեղադրել են «հանկարծակի հեթանոսացած» այս գրողներին թերագնահատելու, հայրենի գրականությունը նրանց արշավանքից ամրակուռ դռներով պաշտպանելու պահանջի համար (չէ՞ որ կոչ էին անում «ջարդել դռները»): Տերյանին մեղադրողների հանցանքի «նրբացուցիչը» փաստերին անգիտակ լինելն է, և այդ պատճառով «Մեհյան»-ի ու պոլսահայ հանկարծակի հեթանոսացած պոետների (Տերյանը զեկուցումը կարդացել է 1914 թ. ապրիլի 30-ին, իսկ մեհենականները 1914 թ. հունվարից) մասին ասվածը սխալմամբ արևմտահայ պոեզիային վերագրելը: Ընդ որում, լռելյայն առաջին պլան է մղվել ... աղմկում ու գրում էին

* «Մեհյան»-ի մասին հանգամանորեն խոսել ենք «Գրականության ուժն ու հմայքը» գրքում:

Վարուժանը, մինչդեռ հայտնի է, որ նա չի եղել այդ ամսագրի ոչ «խմբագրապետը», ոչ իսկ խմբագրական օրգանի անդամը։ Նա միայն ստորագրել է «Մեհյան»-ի «Հանգանակ»-ը, 1-ին և 2-րդ համարներում տպագրել մեկական բանաստեղծություն («Բարտիներ» և «Հասուն արտ») ու երբ պարզվել են «Մեհյան»-ի սկզբունքները, գժտվել-հեռացել է։ Ավելին՝ մեհյանականների կողմից դիտվել է թշնամի և ենթարկվել հարձակումների (տե՛ս «Շանթ», 1914, թիվ 56)։

Տերյանը, չթաքցնենք, ասում է, որ «պոլսական և առհասարակ արևմտյան (նկատենք, որ տարբերում է պոլսականը արևմտյանից, արևմտահայից—Վ. Պ.) գրականությունն ու լեզուն բնավ այն հմայքը չունեն, որ գոյություն ունի շատերի համար»։ Այսինքն բանավիճում է արևմտահայ գրականության ու լեզվի գերագնահատության, այն «առաջին կարգի», ավելի մշակված ու «ազնվական» համարելու և արևելահայ գրականությունն ու լեզուն ստորադասելու, թերագնահատելու տեսակետի դեմ։ Հայտնի է, որ արևմտահայ գրականության առանձին դեմքեր քամահրանքով էին խոսում արևելահայ գրականության ու լեզվի մասին և մեր նույնիսկ խոշորագույն գրողներին առաջարկում էին իրենց «լեզուն, բառարանը», արվեստը։

Տերյանն ուներ նաև ուրիշ նկատառում։ Պոլսեցիների լեզուն Մխիթարյանների լեզվից «ավելի լավ» համարելով հանդերձ, նա գտնում էր, որ «պոլսեցոց լեզվի կենտրոնը շատ է հեռու բուն հայ ժողովրդի բնակավայրից»։ Արևելահայ «գրականությունն ու արվեստը նույնքան, եթե ոչ ավելի, հասկանալի են էրզրումցուն ու վանեցուն, որքան և Պոլսինը։ Էրզրումցին ու վանեցին մեզ գուցե ավելի մոտ են, քան նրանց *։ Եվ ինչու պետք է ցանկանալ, որ պոլսական ճոռոմ ու կեղծ գրականությունն ու արվեստը տարածվեն այնտեղ և ոչ թե մերը»։ Տերյանը, ուրեմն, առաջին՝ տարբերում է պոլսականն ու արևմտահայը։ Երկրորդ՝ պոլսական գրականությունն ու լեզուն չի համարում անարժեք, այլ գերագնահատված, որին ինքը համաձայն չէ, և երրորդ՝ պոլսական ճոռոմ ու կեղծ գրականություն ասելով նկատի ունի «այն բոլոր ծամածռությունները, որ անում են, թեպետև գուցե շատ շնորհալի գրողներ, անվանելով այդ վերադարձ դեպի հայկական հին կրոնը, հեթանոսությունը»։

Ավելի խոցելի է համարվել և «նիհիլիզմի» հիմք դարձել Տերյանի մի ուրիշ խոսքը. «Թումանյանի մի «Փարվանա»-ն ես չեմ փոխի պոլսահայ բոլոր հանկարծակի հեթանոսացած պոետների արտադրությանց հետ»։ Այս քաղվածքի հիման վրա ասել են (ու ասում են), թե Տերյանը ժխտել է ողջ արևմտահայ գրականությունը։ Անհեթեթ պնդում։ Ճշտենք։ Առաջին՝ Տերյանը պոետների մասին է խոսում։ Ուրեմն, խոսքը արձակագիրներին ու դրամատուրգներին չի վերաբերում։ Երկրորդ՝ Տերյանի ասածը պոլսահայ պոետների մասին է. անկախ նրանից նրանք «շատ շնորհալի» են, թե ոչ։ Ով քիչ թե շատ ծանոթ է արևմտահայ գրականությանը, չի կարող չիմանալ, որ իրենք արևմտահայերը ևս պոլսահայը բնավ չեն շփոթել արևմտահայի հետ, ավելին՝ սահմանազատել են, երբեմն նաև հակադրել։ Հիշեցնենք արևմտահայ մամուլում երբեմն-երբեմն այդ առթիվ բռնկած վեճերը և անդրադառնանք դրանցից մեկին. «Մասիս» թերթում 1900—1901 թվականներին «վաղվան գրականության» (Տերյանը կասեր՝ «Հայ գրականության գալիք օրը») մասին սկսված վեճին *։ Խոսում էին երկու գրականության մասին՝ պոլսական և գավառական ու վիճում, թե որին է պատկանում «առավելակշռությունը», ապագան, որն է ավելի կենսունակ, որ պետք է հիմք դառնա «վաղվան գրականության»։ Եթե մի կողմ թողնենք առանձին գրողների ու քննադատների իսկապես նիհիլիստական հոդվածներն այն մասին, թե հայ գրականություն գոյություն չունի, ապա դժվար է չնկատել երկու դիրքորոշում, երկու տեսակետ՝ պայմանական ձևով ասենք «գավառամերժ» և «պոլսամերժ»։ Առաջին տեսակետի կողմնակիցները (օրինակ, Ռ. Պերպերյանը) բարձր էին գնահատում պոլսական գրականությունը, նրան էին վերագրում «թրքահայ գրականության համար կենդրոնի մը առաջնորդող դերը» և խիստ թերագնահատում էին գավառական գրականության դերն ու նշանակությունը («Մասիս», 1901, № 10 և ուրիշ.)։ «Պոլսամերժ» տեսակետի կողմնակիցները, ընդհակառակը, գտնում էին, թե Պոլիսը եվրոպականի առջև տեղի տված, ազգային կյանքի շատ գծեր զեղծած, խաթարած պատկեր է ներկայացնում, թե պոլսական գրականությունը «օտարահամ, օտարահոտ, օտարաձև» է, կտրված է բուն ժողովրդի կյանքից, նրա հետաքրքրություններից, նրան հուզող հարցերից, նրա լեզուն «թույրե ու բույրե զուրկ է»։

Ռ. Զարդարյանը, օրինակ, այդ գրականությունը համարում էր պոլսեցու՝ «մայրաքաղաքին մարդուն սեփականություն» և անընդունակ «ցեղային կորովամիտ ու կանխապատրաստված գիտակցության»։ Պահանջում էին «բնատոհմիկ», «բնահայկական», ժողովրդի կյանքն արտացոլող և նրան ծառայող գրականություն։ Անկասկած են և՛ «գավառամերժ», և՛ «պոլսամերժ» տեսակետների կողմնակիցների ծայրահեղությունները։ Մեզ, սակայն, այժմ այդ չի հետաքրքրում, այլ ա՛յն, որ պոլսականը չի նշանակում արևմտահայ, որ իրենք արևմտահայերը դրանք չեն նույնացրել, որ Տերյանը ասելով պոլսահայ (կամ պոլսական) չի հասկացել արևմտահայ։

Երրորդ՝ Տերյանի խոսքը չի վերաբերում պոլսահայ բոլոր պոետներին, այլ, ինչպես ինքն է ասել, «պոլսահայ բոլոր հանկարծակի հեթանոսացած պոետներին»։ Ուրեմն, խոսքը չի վերաբերում ո՛չ հեթանոսներին՝ Պեշիկթաշլյանին, Դուրյանին, Մեծարենցին, Սևակին, Սիամանթոյին (Շանթին էլ չէր կարող վերաբերել, որովհետև նա պոետ չէր), մյուսներին։

Երկմտություն կարող է լինել միայն մեկի՝ Վարուժանի նկատմամբ։

Տեսանք, որ խոսքը Վարուժանին էլ չի վերաբերում, որովհետև նրա հեթանոսությունը և հանկարծակի հեթանոսացածների հեթանոսությունը ոչ միայն նույնը չէին, այլև հակադրվում էին, պայքարի մեջ էին։ Այժմ արդեն հասկանալի է դառնում, թե Տերյանը ինչ է նկատի ունեցել «պոլսական ճոռոմ ու կեղծ գրականություն» ասելով—ոչ թե ամբողջ պոլսական գրակա-

* Գավառի և Պոլսի հարաբերության մասին Տերյանի ասածը հերետիկոսական մի բան չէ։ Ահա, օրինակ, Ռ. Զարդարյանի կարծիքը այդ մասին. «Թլկատինցին (գավառական գրականության ներկայացուցիչը—Վ. Պ.) անկասկած անհասկանալի է պոլսեցիներեն շատերուն». «խառնվածքի, նկարագրի, հոգեկան տրամադրության ու հայացքներու պայմանները տարբեր են երկուքին մեջ՝ մեկմեկու անհասկանալի ըլլալու չափ» («Մասիս», 1900, № 40)։

* Վեճը Ա. Հարությունյանի նախաձեռնությամբ սկսեց «Մասիս» թերթը (1900, № 26) «Հին ու նոր բոլոր գրագետներուն» ուղղած «Հարցարան»-ով։ Ընդ որում, «Բիւրակն»-ի խմբագրությունն էլ պնդում էր, թե ինքը դեռ 1898—1899 թթ. քննել է այդ հարցը։

նությունը (այդպես էին վարվում իրենք արևմտահայ «պոլսամերժ» մտավորականները), այլ հանկարծակի հեթանոսացածների «արտադրությունները»: Նշված քաղվածքում «պոլսահայը» (նույն իմաստով գրականության մեջ գործածվել է նաև «պոլսական» բառը) ածականի իմաստ ունի, նրա, ինչպես և «պոլսականի», տակ հասկացվել է գրական սեթևեթանքն ու «հակագեղարվեստական պչրանքը»: Հետաքրքրական է, որ գրեթե նույնպիսի գնահատականի ենք հանդիպում Շիրվանզադեի մոտ: «Կյանքի բովից» մեմուարներում խոսելով Գր. Զոհրապի մասին, նա ասում է. «Ես Գրիգոր Զոհրապին ճանաչում էի հեռուեն, կարդացել էի նրա գեղեցիկ պատմվածքները Կ. Պոլսի կյանքից: Ուղղությամբ ռեալիստ էր. ուներ շատ սիրուն ոճ, միանգամայն վերծ *պոլսական սեթևեթանքից և ավելորդ ու հակագեղարվեստական պչրանքից*» (էջ 156: Ընդգծումը բնագրում է—Վ. Պ.):

Հիշենք նաև հեթանոսական շրջանի աշխարհիկ գրականությանը Տերյանի տված բարձր գնահատականը և համեմատենք «հանկարծակի հեթանոսացածների» դավանանքին՝ արվեստը «կրոնական մոլեռանդություն» է: Ահա թե ինչու է Տերյանը մեհենականների հեթանոսությունը «սուտ» համարում:

Քննադատելով «Մեհյան»-ի իսկ բնորոշմամբ «ազգայնամոլ իդեալին» հետամուտ, իսկ ըստ էության հայրենի հարուստ գրականությունը ժխտող առավել ակտիվ մեհյանականների երկերը (երկեր էլ չի ասում, այլ «ծամածռություններ»), Տերյանը գրել է. «Դա նույն սնամեջ ազգամոլության ախտն է, դա նույն զարհուրելի բառերի սերն է, դա նույն անիմաստ բառերի կույտն է, որը ծանոթ է մեզ վաղուց ու վաղուց»:

Այնուհետև Տերյանը, կարծես կանխելով իր ոչ բարեխիղճ քննադատներին, նոր վերապահություն է անում (քանի՞երորդ անգամ). «Դուրյանին թող չմատնանշեն, թող չհիշեն և ուրիշներին, իմ խոսքը հոսանքին, ընդհանուր ուղղությանն է վերաբերում և ոչ առանձին գրողներին» (ընդգծումները բնագրում են—Վ. Պ.): Դուրյանի և ուրիշների մասին Տերյանն արտահայտվել է սիրով, հիացմունքով*: Այո՛, Տերյանը կռվում էր հենց այն «ուղղության» ու «հոսանքի» դեմ, որը «չլսվածի ու չտեսնվածի» պահանջով ժխտում էր ինչպես նախորդ ողջ գրականությունը («հինցած» ու հարկադրական «բեռ» համարելով), այնպես էլ, ըստ էության, արևմտահայ գրականությունը: Այսինքն՝ նիհիլիստ համարված Տերյանը ինքն էր կռվում նիհիլիզմի դեմ:

Տերյանն իր խստություններով, իր «նիհիլիզմով» եզակի՞ է: Ո՛չ: Պուշկինը, որ այնպես ջերմորեն սիրում էր ռուս գրականությունը և նրա պարծանքներից է, ընդունելով, որ «ռուսական պոեզիան հասել է զարգացման բարձր աստիճանի», որ «Դերժավինի մի քանի օդաներ... գրված են իսկական հանճարի պոռթկումներով», որ Բատյուշկովը, Լոմոնոսովը, Ժուկովսկին շատ մեծ արժեքներ են ստեղծել, այնուամենայնիվ խստորեն դժգոհում է ռուս գրականության այն ժամանակվա (անցյալ դարի 20-ական թվականների) վիճակից: Տարիներ անց՝ 1833 թվականին, նա գրել է. «իսկական քննադատություն մեզ մոտ դեռևս գոյություն չունի», «մեզ մոտ գրականությունն էլ հազիվ գոյություն ունի», իսկ 1834 թվականին գրած մի հոդված վերնագրել է «Ռուս գրականության չնչինության մասին»: Սա ևս նիհիլիզմ չէ՞:

Դիմենք հայ գրականության փաստերին: Սկսենք մեծերից և տեսնենք, թե ինչպես են գնահատել նրանք հայ գրականությունը, արդյոք նրանց խոս-

* Տե՛ս «Գրականության ուժն ու հմայքը», էջ 263—266:



տությունները էլ չե՞ն սահմանակցվում նիհիլիզմին: Դիմենք Թումանյանին՝ հայ գրականության ընթացքին ամենից լավատեղյակ ու ամենից «քննադատ-գրողին», «տեսաբան գրողին». «Եվ, իհրավի,—*գրել է նա*,—գրեթե առանց բացառության, ոչ մի հայ գրող չի կարողացել գրականությամբ պարապի: Ամենքն էլ գրականությամբ պարապել են ի միջի այլոց, պատահաբար, ոտի վրա: Ամենքն էլ եղել են խանգարված գրողներ, և ամբողջ մեր գրականությունն էլ **խանգարված գրողների խանգարված գրականություն է**» («Թումանյանը քննադատ», 1939, էջ 418): Խանգարված գրականություն—այսպես է ասել մեր գրականության մեծ երախտավոր, մեծ հայրենասեր Թումանյանը և այն ո՛չ 1914, այլ 1917 թվականին, և այն ո՛չ զեկուցման կամ նամակի, այլ հոդվածի մեջ: Այդ դեռ բոլորը չէ. «դեռ մի ընդհանուր գրական լեզու չունենք: Եղածն էլ աղքատ ու աղճատ և անկազմակերպ»: Էլի բոլորը չէ. «գիտություն չկա մեր մեջ: Եվ դպրոց, և գրականություն, և հրապարակախոսություն, և հասարակական ու ազգային գործեր մեծ մասամբ հիմնված են տգիտության վրա»: Կա՞ այս ամենի մեջ նիհիլիզմ: Ո՛չ: Կա սրտացավ վերաբերմունք, ավելի բարձր մակարդակների ու պայծառ հորիզոնների բաղձանք ու կարոտ:

Գուցե Թումանյանի այս խոսքերը պատահակա՞ն բնույթի են, գուցե նա հետո հրաժարվե՞լ է այդօրինակ «նիհիլիզմից»: Նիհիլիզմ տեսնողներին ունկնդիր չենք կարող մխիթարել. «մինչև այժմ,—գրված է 1919-ին,— մեր գրականությունը հարազատ հող չի ունեցել իր ոտի տակ, մեծ մասով գաղութային գրականություն է եղել: Բանաստեղծի ոտը հարազատ ու իրական հողի վրա պիտի լինի, նրանից հետո միայն կարող է բարձրանալ, թեկուզ գլուխը մինչև երկինք հասնի»: Եվ այս ասված է ոչ բանավոր խոսքի մեջ, այլ «հայ գրականության վիճակի» մասին իրեն ուղարկված հարցաթերթին տրված պատասխանում:

Խոսելով տարիներ առաջ հայ գրողների երկերից ստացած տպավորություններ մասին, Թումանյանը գրել է. «Էն ժամանակից դեսը շատ են փոխված իմ գրական ճաշակն ու հասկացողությունները և իմ աշխարհայացքը: Ինչ որ էն ժամանակ թվում էր գեղեցիկ ու հերոսական, այժմ տգեղ է ու բարբարոսական: Ես վերջին տարիներս, երբ պետք է լինում՝ վերադառնում եմ իմ հին կարդացածներից մեկին կամ մյուսին՝ հիասթափվում եմ հաճախ: Ընդհանուր տպավորությունս ու կարծիքս էն է, որ **մեր գեղեցիկ գրականությունը առողջ ու ամբողջական գործեր շատ չունի**»: Սա արդեն նիհիլիզմից էլ մի բան այն կողմն է—կասեն նիհիլիզմ որոնողները: Բա ինչո՞ւ չեն ասել, չէ՞ որ Տերյանը «այդքան հախուռն» չի գնահատել ամբողջ «մեր գեղեցիկ գրականությունը», այլ առանձնացրել է արձակը կամ «պոլսական գրականությունը» և գնահատականներն էլ տրված են զեկուցման մեջ կամ մասնավոր նամակներում: Որովհետև դժվար է գտնել մի համոզիչ պատասխան, ուստի իբրև պատասխան դնենք Տերյանի սիրած մի խոսքը՝ «իրանք ալ չեն գիտեր»:

Այժմ դիմենք ռեալիստական արձակի ամենախոշոր դեմքին՝ Շիրվանզադեին: Նա 1893 թ. գրած մի հոդվածում, ընդունված չափանիշների տեսակետից մոտենալով մեր գրականությանը, գրել է. «Դժվար է ասել թե մենք՝ հայերս ունենք գեղարվեստական գրականություն»: Նա աններելի մոլորություն և ինքնախաբեություն է համարում այն միտքը, թե հայ «հասարակությունը արդեն կարողացել է ստեղծել գրականություն այս բառի անխառն նշանակությամբ»: Հակառակ կարծիքի («մեր վիպական գրականությունը», «մեր բանաստեղծությունը» և այլն), կույր ինքնախաբեության հիմնական պատճառն այն է, ասում է Շիրվանզադեն, որ «մեզանում տաղանդին չէ ստեղծ-

վել գրականություն ասած բանի մասին ճիշտ գաղափար», չկա նուրբ հանկացողություն, էսթետիկական ճաշակ։ Հետագա տարիներին չի՞ փոխել իր կարծիքը։ Ո՛չ։ Ահա 1911 թվականի մի վկայություն. «Արդեն այդ ժամանակ (1883 թվականին—Վ. Պ.) հայ գեղեցիկ գրականության վիճակը մի ողորմելի բան էր. եթե ինձ հարցնեին՝ ո՞րն է հայ հեղինակներից ազդել ինձ վրա, կպատասխանեի՝ ոչ ոք։ Ես կարդացել եմ «Վերք Հայաստանին» պատանի հասակում ոգևորությամբ, Պռոշյանի գրվածքները հետաքրքրությամբ, կարդացել եմ Րաֆֆին հափշտակությամբ, սակայն առանց ոչ մեկից լիովին գրավվելու։ Ինձ վշտացրել են «Վերք Հայաստանիի» մեջ նրբության բացակայությունը, Պռոշյանի տարրականությունը, Րաֆֆիի հոգեբանական սխալները հանուն մի կանխակալ գաղափարի, որ գեղարվեստի համար սպանիչ տարր է... Ես հայ հեղինակների մեջ վարպետ չեմ ունեցել նույնիսկ լեզվի կողմից»։

Դիմենք ավելի հեղինակավոր աղբյուրի՝ Շիրվանզադեի ավելի ուշ շրջանի գրածին՝ «Գրական-գեղարվեստական ալմանախ»-ի հարցերին տված պատասխանին (տպագրված 1919 թ.). «Գեղեցիկ հայ գրականության ներկան ես այնքան էլ հուսատու և մխիթարական չեմ տեսնում, նույնիսկ աչքի առջև ունենալով պատերազմը և հայ ազգի վերջին տարիների տառապանքները։ Խոսքս մանավանդ վիպասանությանն է վերաբերում (Տերյանը ևս արձակից էր դժգոհ— Վ. Պ.)։ Ո՞ւր է նա, այդ հայ վիպասանությունը։ Ինձ թվում է, որ առհասարակ մենք վաղաժամ ենք գործածում այդ բառը հայ գրականության մասին խոսելիս։ Անցյալի մի քանի քիչ թե շատ գեղարվեստական երկեր դեռ իրավունք չեն տալիս մեզ ասելու, թե կա հայ վիպասանություն բառիս ընդարձակ իմաստով։ Ասացի անցյալի, որովհետև ներկան այն էլ չի տալիս, ինչ որ տվել է անցյալը»։

Կարելի է եվրոպական, ռուս և հայ գրականությունից ուրիշ փաստեր ևս բերել, բայց կարծում ենք դրա հարկը չկա։ Մշակույթի անցյալի մեծ գործիչների գնահատականներն ամեն մի կոնկրետ դեպքում կարող են ճիշտ կամ չափազանցված, նույնիսկ սխալ լինել, սակայն սխալը բացատրելիս պետք է զգույշ լինել (այլ դեպքերում նույնիսկ զգուշավորության պակաս չի զգացվում) և նկատել, որ մեծերի այդպիսի խիստ կարծիքները հաճախ նիհիլիստական կարող են թվալ առաջին հայացքից, ըստ էության դրանք բխում են գրականությունն ավելի բարձր նվաճումների մղելու բուռն ձգտումից։ Տերյանին նիհիլիզմ վերագրողները հաշվի չեն առել, որ նա այլ չափանիշ էր ընտրել՝ հայ գրականությունը գնահատել ոչ թե նեղ շրջանակներում, այլ «իսկական արվեստի անծայրածիր լայնության»։ «Իսկական գեղարվեստ և ոչ թե սուրրոգատ», խորապես ազգային ու համամարդկային արվեստ։ Հակառակ քչով բավարարվողների սակավապետության, ազգային սահմանափակ ինքնագոհության, մեծերի չափանիշները խիստ են և դա գիտակցվել է։ Ռուս գրականագիտությունն այդ մեկնակետից է գնահատել Պուշկինի՝ «ռուս գրականության չնչինության մասին» խոսքը և նրան չի մեղադրել նիհիլիզմի մեջ, հասկացել է, որ նա չի ժխտել Ժուկովսկուն, Կռիլովին, Լոմոնոսովին, մյուսներին *։

---

* Արևմտահայ գրականության (և առհասարակ ամբողջ հայ գրականության) նկատմամբ նիհիլիստական վերաբերմունք պետք է որոնել ոչ թե չեղած տեղերում, փաստեր հորինելով և խոշորացույց ապակու տակ դնելով, այլ եղածը տեսնելով։ Այդպիսի նիհիլիզմ դրսևորվել է արևմտահայ մշակութային մի շարք գործիչների (դժբախտաբար նաև մի երկու նշանավոր գրողի) հոդվածներում։ Իբրև օրինակ (շատերից) նշենք «վաղվան գրականության» շուրջ սկսված բանավեճի մասնակիցներից ոմանց հոդվածները։ «Պոլսահայ գրականությունը հնչուն՝ այլ դատարկ



Պետք չէ նաև մոռանալ, որ ամբողջ գրականությանը տրված այդպիսի ընդհանուր գնահատականները չեն կարող լրիվ ճշգրիտ լինել. «այդպիսի ընդհանուր բնորոշումները միշտ էլ որոշ չափով միակողմանի են լինում»,— ասում է Տերյանը։ Հիրավի, ինչպիսի՜ սիրով է խոսել Տերյանը Աբովյանի, Թումանյանի, Իսահակյանի, Դուրյանի, Րաֆֆու, Սունդուկյանի և էլի շատերի մասին, բայց «ընդհանուր գնահատության» ժամանակ խորին ցավով նշել է, որ հայ գրականությունը ետ է մնացել, որ պետք է այն մղել դեպի իսկական արվեստի բարձունքները։ Նույնը չէ՞ Թումանյանի վերաբերմունքը՝ գնահատում, պառնաս է բարձրացնում առանձին գրողների (Աբովյան, Սունդուկյան, Իսահակյան, Շիրվանզադե, Տերյան և ուրիշներ), բայց դժգոհ է, երբ խոսում է ամբողջ հայ գրականության մասին։ «Ընդհանուր բնորոշումների» ժամանակ, ասում է Տերյանը, չեն տալիս «գրական-հասարակական կյանքի» «մանրակրկիտ ու ամբողջական ուրվագիծը»։ «Շատերին չպիտի հիշատակեմ իսկ։ Ներկա դեպքում ինձ հետաքրքրողը ընդհանուր հարցերն են», ասում է նա, և «թյուրիմացության տեղիք չտալու համար» (այնուամենայնիվ տվել է—Վ.Պ.) դիմում կոնկրետ օրինակի. «Պարզեմ ասածս։ Ինչպես հայտնի է, Լոմոնոսովը հսկայական դեր ունի ռուս գրական, գիտական, առհասարակ մտավոր զարգացման պատմության մեջ, դա հայտնի է ամենքին, սակայն երևակայեցեք, որ դուք այժմ կարդում եք նրա ոտանավորները—որպիսի կարծիք կհայտնեք դուք այդ ոտանավորների մասին։ Օրինակ, եթե կարդաք նրա «Ապակու օգտակարության» մասին գրած ոտանավորը։ Բնականաբար դուք շատ բացասական վերաբերմունք պիտի ցույց տաք դեպի այդ գրողը։ Սակայն չէ՞ որ Լոմոնոսովը իսկապես մի հսկա է ռուսաց կուլտուրայի պատմության մեջ, մի չտեսնված մեծություն, մի մարդ, որին ամենայն իրավամբ կարելի է մի շարքում դասել ռուսական կուլտուրայի ամենաերախտավոր գործիչների հետ»։ «Հսկայական դեր», «հսկա», «մի չտեսնված մեծություն» և, այնուամենայնիվ, այսօր նրա գրվածքները չեն բավարարում ընթերցողին։ Այսինքն՝ այլ բան է գրողի, գործչի պատմական դերը, այլ՝ արդիականությանը բավարարող երկը, ժամանակակից հարցերով ապրող ընթերցողին բավարարելը։ Դրան պետք է հավելել նաև «հոգեբանական պատճառներ»*—վերագնահատությունների, հնի ու նորի կռվի ժա-

---

բառ մըն է միայն. գավառական գրականություն չկա»,—ասում է Շ. Շավարշը («Մասիս», 1900, № 30)։ Մեր գրականությունը, ավելացնում է Ռ. Որբերյանը, «նախափորձեր իսկ անվանելու կը քաշվիմ» («Մասիս», 1900, № 31)։ «Պոլիս եվրոպական մատենագրության ծիծաղելի հետևողություն մը ըրած է միայն»,— ձայնակցում է Ռ. Պերպերյանը («Մասիս», 1901, № 10)։

Ընդ որում, նիհիլիզմի սահմանները այնքան լայն էին, որ իրենց մեջ էին առնում մեր ամբողջ գրականությունը՝ սկսած քերթողահայր Խորենացուց մինչև Նարեկացի ու Քուչակ, մինչև Սայաթ-Նովա ու նոր գրականություն։ «Տեսական» հիմքը մեկ էր—օտար ազդեցությունները։ Մեզ շրջապատող ազգերի քաղաքակրթությունը, պնդում է Ա. Ալպոյաճյանը, ավելի բարձր է եղել քան մերը. ուստի «ոչ մեկ ժամանակի մեջ կրցած ենք արտադրել գործ մը, որ օտար չհոտի» («Մասիս», 1900, № 35)։ «Հայ միտքը,— գրում է Ռ. Որբերյանը,— արտադրած է եբրայական գրականության հզոր ազդումին ներքև» («Մասիս», 1900, № 31)։ Հետաքրքրական է, որ հայ գրող չէր համարվում նաև սրբերի կարգը դասված Նարեկացին։ Նույնիսկ Նարեկացուն, ասում է Ա. Ալպոյաճյանը, չի կարելի ճշմարտապես հայ գրականության «ներկայացուցիչն համարել, որովհետև արաբական կաղապարին ենթարկված և տոհմային դրոշմը կորուսած» է («Մասիս», 1900, № 35)։ Իբրև այդ ամենի եզրակացություն. «բովանդակ անցյալին մեջ չենք ունեցած մեկ հատիկ գիրք մը, որ զուտ տոհմային (հայկական—Վ. Պ.) դրոշմ ունենա»։ Գրերի գյուտից մինչև այժմ, ձայնակցում է Ռ. Որբերյանը, «ինչ որ եկած է մեզի, երբեք գրավոր ցոլացումն ու հիշատակարանը չէ՛ մեր ցեղին կյանքի երևույթներուն» («Մասիս», 1900, № 31)։

մանակ մարդիկ դիմում են ավելի «խիստ ու կտրուկ լեզվի, քան նորմալ ժամանակ»: Իսկ ի՞նչ էր տեղի ունեցել:

«Եթե դուք գիտեք մեր վերջին տարիների կյանքը,— գրել է Տերյանը,—չեք կարող չնկատել, որ այնտեղ կատարվել է և մասամբ կատարվում է մի խոր հեղաշրջում... Մեր երկրի ամբողջ տնտեսական կերպարանքը վերափոխվում է, և դրա հետ միասին հիմնական վերափոխության առջև է կանգնած և նրա հասարակական և կուլտուրական կերպարանքը»:

Այդպիսի մի ժամանակ, ասում է Տերյանը, անհրաժեշտ է պարզել ոչ միայն այն, թե դեպի ուր ենք գնում, այլև՝ «թե որտեղից ենք ելնում»: Այսինքն անցյալի, անցած ուղու վերագնահատությունը դառնում է օրակարգի հարց: Ընդ որում, հնի ու նորի պայքարի ընթացքում կատարվող այդ վերագնահատությունները չեն կարող սուր ձևեր չընդունել: «Չպետք է մոռանալ,— գրում է Տերյանը,— որ վերջին տարիների ընթացքում հայ իրականության մեջ ծագել է մի նոր ինտելիգենցիա, մի նոր սերունդ, որին օտար չէ եվրոպական կուլտուրան, գոնե իր խոշոր գծերով, որ եվրոպական կրթություն ստացած, եվրոպացու կյանքով ապրած, դառնում է հայրենիք և բնականաբար գոհ չէ մնում իր հայրենիքում տիրող կարգերից ու հասկացողություններից: Բացի այդ, չէ՞ որ կյանքի մեջ գործող ինտելիգենցիան էլ անցել է 1905 թ. մակընթացությունն ու դրան հետևող տարիների ավերիչ ու հոգեսպան տեղատվությունը»: Այդ նոր ինտելիգենցիան, ասում է Տերյանը, որքան էլ տարբեր շերտավորումներ լինեն նրա զանազան հատվածներում, իր ըմբռնումներով նման չէ հին սերնդի ինտելիգենցիային: Դրանով է պայմանավորված այդ սերունդների միմյանց չհասկանալը, նրանց կովի բուռն ընթացքը: Հինը դեռ չի անցել «պատմության գիրկը», գրում է Տերյանը, նորն էլ հաստատ ու ամուր չի կանգնած իր ոտների վրա: Հինը դեռ շատ տեղ ապրում է, պահպանում իր որոշ ազդեցությունը, երբեմն կովի ելնում «իր իրավունքների համար»: Այդ պատճառով էլ, ասում է Տերյանը, մեր գրականության «մերձավոր անցյալի» մասին ես խոսելու եմ իբրև «ներկայի մարդ, իմ բոլոր համակրություններով ու հակակրություններով»: Տերյանը այդպիսի խիստ լեզվով է արտահայտվել ոչ միայն «Հայ գրականության գալիք օրը» զեկուցման մեջ, այլև (և ավելի շատ) նամակներում: Եվ բացատրել է այդ խստությունների պատճառները, բացատրել է մեկնաբան-գրականագետի բացատրություններից էլ լավ. «Թեպետ նամակս չեմ կարդացել,—գրել է նա Ց. Խանզադյանին 1913 թ. օգոստոսին,—բայց զգում եմ, որ շատ խիստ բաներ եմ ասել և զուսպ չեմ եղել: Մի դատապարտի ինձ, բարեկամս: Գուցե որոշ բաներ այնպես չեմ արտահայտել, բայց ճշմարիտ, մեր կյանքում այնքան այլանդակ ու հիմար բաներ կան, որ ակամա սահմանն անցնում ես, երբ մտածում ես այդ իրականության մասին և երբ այդ բոլորը մինչև հոգուդ խորքը հուզում է քեզ և հատկապես երբ կրքոտ կերպով ծարավի ես, որ այդ բոլորը լինի այլ կերպ, լինի այնպես, ինչպես լավ, կուլտուրական երկրներում»:

***

Թեև քննադատելուց, ինչը ժխտելուց ևս մասամբ երևում է, թե քննադատողն ու ժխտողը ինչ է ուզում, սակայն անհրաժեշտ է հանգամանորեն անդրադառնալ այն հարցին, թե ըստ Տերյանի ո՞րն է հայ գրականության գալիք օրը, այն ճանապարհը, որը պետք է մեր գրականությունը հասցներ առաջավոր գրականությունների ընթացքին: Հետաքրքրական է, որ ոչ հայ բանաստեղծ համարված գրողը պահանջում է, որ հայ գրականությունը դառնա ազգային գրականություն:



Մեր ազգային գրականությունը սկիզբ էր առել անցյալ դարի կեսերից՝ «Վերք Հայաստանի»-ից: Տերյանը գիտեր այդ: Սակայն կռվելով «սեմինարիստ ինտելիգենցիայի» պաշտպանած «ազգային կուլտուրայի» դեմ, նա ազգայինը գործածում է ավելի բարձր իմաստով: Ազգայինը նրա մոտ նույնանում է համամարդկայինի, բարձր արվեստով ստեղծվածի, «սիմբոլիստականի» * հետ: Բարձր արվեստով գրված երկերում, ասում է Տերյանը, «համամարդկայինը միացած է ազգայինի հետ»:

Ընդ որում Տերյանը ճիշտ էր ըմբռնում ու բացատրում ազգայինը, այն դիտում էր իր զարգացման ընթացքի մեջ: Թումանյանը, Շիրվանզադեն, Տերյանը տեսնում էին, որ կյանքը նոր հերոսներ, ազգային նոր կերպարներ, ազգային խառնվածքի նոր գծեր է ստեղծում: Չէր կարելի ազգային գրող լինել և չտեսնել այս ամենը, ավելին՝ այս ամենից երես դարձնել: Տերյանը նշում է, որ դարասկզբի պահպանողական ինտելիգենցիան, որը «ահ ու սարսափով է դիտում» կյանքում տեղի ունեցող «հեղաշրջումը», շատ չի հեռացել Արծրունու ժամանակվա «խավարամիտ ինտելիգենցիայից», որը «ապավինում էր փարաջային ու տգիտությանը». «կարծում էր, որ ազգը կպահպանվի, եթե տգետ մնա ու խավար» և ընդհակառակը, կկորցնի ազգային գծերը, եթե կրթություն ստանա ու ազատվի իր «ավանդական սնահավատություններից և սովորություններից»: Այս տեսակետը Բելինսկու քննադատած լապոտա-սերմյագային «տեսության» հայկական տարբերակը չէ՞ արդյոք: Ռուս մեծ մտածողն ու ռևոլյուցիոները ամբողջ կրքով քննադատում էր նրանց, ովքեր ազգային էին համարում այն ամենը, ինչ տեղավորվում էր «զիպունի, տրեխի, հացի օղու և թթու կաղամբի» շրջանակներում և ընդհակառակը, օտարացած, խորթ (ոչ ազգային) էին համարում «ֆրակ հագած ռուսին կամ կորսետ հագած ռուս կնոջը», վախենալով, թե կրթության և առաջադիմության հետևանքով բոլոր ռուսները «կօտարանան», կդադարեն ռուս լինելուց:

Տերյանի համար ազգայինը սոսկ արտաքին հատկանիշները չէին, ոչ էլ սնահավատություններն ու հետամնաց սովորությունները: Նա, ճիշտ հասկանալով ազգայինի ու համամարդկայինի փոխհարաբերության հարցը, կրկնենք՝ կռվում էր ազգայինի խեղաթյուրումների դեմ և գտնում էր, որ ազգայինը զարգացում է ապրում, որ զարգացման հետ կապված անհրաժեշտ փոփոխությունները նույնպես ազգային են: Այդ տեսակետից քննելով հարցը, նա, հակառակ բուրժուական քննադատության, որ աշխատում էր Շիրվանզադեի ինքնատիպ տաղանդը չնկատել և նրան դուրս դնել ազգային գրականության շրջանից, նրա ընտրած ուղին է համարում մեր գրականության գալիք ճանապարհը:

Այստեղ Տերյանն արդեն պատասխանում է իր իսկ դրած դեպի ո՞ւր, ինչպիսի՞ն պետք է լինի հայ գրականության գալիք օրը հարցերին: Մատնանիշ անելով Շիրվանզադեի ընտրած ուղին, նա գալիք օրվա հարցը կապում է կյանքում կատարվող «խոր հեղաշրջման» և սպասվող «հիմնական վերափոխության» հետ: «Համեմատեցեք մեր այժմյան կյանքը,—գրում է Տերյանը,— նախահե-

---

* Տերյանը «սիմբոլիստականը» գործածում է սիմվոլի, խորապես ռեալիստականի և համամարդկայինի իմաստով: «Պեպոն մարդ է,— գրում է նա,— կենդանի և հավիտենական— ահա թե ինչու նա սիմբոլ է դառնում»: «Սիմբոլիստականը» այդ իմաստով է գործածել նաև Հովհ. Թումանյանը:

ղափոխական կյանքի հետ, ներկա դարու սկզբի տարիների կյանքի հետ և դուք կտեսնեք, թե որքան հեռու են նրանք իրարից, որքան տարբեր, որքան միմյանց ժխտող: Սակայն արդեն կատարված և կատարվող տնտեսական-քաղաքական և կուլտուրական հեղաշրջումը այնքան նշանակալից, այնքան իմաստալից չէ, որքան այն, որ պիտի կատարվի դեռ, այն, որ վերահաս է, որի նախերգանքն է միայն ներկայի սոցիալական և կուլտուրական խլրտումը: Մեր երկրի ամբողջ տնտեսական կերպարանքը վերափոխվում է, և դրա հետ միասին հիմնական վերափոխության առջև է կանգնած և նրա հասարակական և կուլտուրական կերպարանքը»:

«Ուրեմն կուլտուրական մի ազգ լինելու համար,—*շարունակում է Տերյանը,*— մենք պետք է ամբողջապես յուրացնենք Եվրոպայի ժամանակակից կուլտուրան և միայն այն ժամանակ կարող ենք ազգային կուլտուրա ստեղծել: Այսինքն ազգային կուլտուրայի ձգտելով, այսպես ասած, մենք պետք է նախ դուրս գանք մեր այժմյան ազգային կճեպից և ընդգրկենք լայն հորիզոններ»:

*Ազգային սահմանափակության, ծխականության, պարզունակության, մի փոքր հոգաբարձուական հարցի շուրջ հարյուրավոր էջեր լցնելու և մոդեռնիզմի տարատեսակների դեմ կռվելով, Տերյանը ցանկանում էր մեր գրականությունը նոր սավառնումների մղել՝ նրա մեջ տեսնել ժողովրդի կյանքն ու ոգին, մարդը, նրա հարուստ ներաշխարհը: Ազգային մեծ բանաստեղծը գիտակցում էր ազգային կճեպի մեջ կծկվել-ամփոփվելու աղետալի հետևանքները: Ստեղծվող նոր գեղարվեստը «չպիտի ետ մնա եվրոպական գեղարվեստից,— շարունակում է Տերյանը,— չպիտի մխիթարե իրան սին ինքնահավանությամբ և ինքնագոհ ծուլությամբ, նա պիտի ընդգրկե ամենալայն հորիզոններ»: Դուրս գալ, ուրեմն, ազգային սահմանափակության խեղդող շրջանակներից և ընթանալ դեպի համաշխարհային մշակույթի հեռաստանները: Դրա համար ամենից առաջ պետք է կյանքի ընթացքի հետ լինել, տեսնել այդ կյանքի հեղաբեկումները, զարգացող նորը, պատասխան գտնել կյանքի առաջադրած նոր հարցերին և ոչ թե ազգայինի անվան տակ ինքնաբավական պոզայով ետ-ետ նայել և ապրել «հին-հին երգերով».* «Ոչ Մասիսի ձյունափայլ կատարներին պետք է հառել ակնկալող հայացքով, ոչ էլ Էջմիածնի խարխուլ գմբեթին, այլ քաղաքների հարաշարժ ամբոխին, վերամբարձ ծխաններին ու բազմահարկ շենքերին, դաշտերի ծովածավալ լայնությանը, որ արդեն ճեղքում է մեքենան, և լեռների փշրվող քարակույտերին դինամիտի հզոր հարվածի տակ»: **Արդիականությամբ ապրելու և արդիականը պատկերելու այս պահանջը սերտորեն կապված է գրականության գալիք օրվա պահանջին:**

*Տերյանն այդ տեսակետից էր գնահատում Տոլստոյի, Շիրվանզադեի, Թումանյանի ստեղծագործությունները, կյանքի զարկերակը զգացող, կյանքի հետ ընթացող, նրա առաջադրած պրոբլեմները, արդիականության հուզող հարցերը արծարծող գրողներին, նրանց բարձր արվեստը, խստապահանջությունը: Գրականության մասին Տերյանի հայացքները իրենց մեծ մասով ունեն խիստ այժմեական նշանակություն և օգնում են մեր այսօրվա գրականության առաջընթացին:*

# Գիտությունը և կյանքը

Ա. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

## ԷԿՈՆՈՄԻԿԱՆ ԵՎ ԿԻԲԵՌՆԵՏԻԿԱՆ

Գիտությունն այն ժամանակ է հասնում կատարելության, երբ նրան հաջողվում է օգտվել մաթեմատիկայից:

Կ. ՄԱՐՔՍ

*Վերջին տարիներս էկոնոմիկայի պլանավորման և կառավարման գործում լայնորեն կիրառվում են մաթեմատիկական մեթոդները: Այդ պայմանավորված է ո՛չ միայն մաթեմատիկական հաշվիչ մեքենաների կատարելագործմամբ, այլև ժողովրդական տնտեսության առջև ծառացած բարդ ու բազմապան խնդիրներով:*

*Այսպես, եթե առաջին հնգամյակի հետ համեմատած, ներկայումս արդյունաբերության համախառն արտադրանքն աճել է մոտ 40 անգամ, ապա այդ նշանակում է, որ պլանավորման գործը բարդացել է ամենաքիչը 1600 անգամ: Շատերը չեն պատկերացնում այն գործողությունների քանակը, որն անհրաժեշտ է պլանավորման համար: Գիտնականների հաշվումներով ապացուցվում է, որ եթե միավորն ընդունենք մի թվաբանական գործողություն հինգ-վեց նիշանոց թվի հետ, ապա էկոնոմիկայի զարգացման այսօրվա աստիճանում հաշվեկշռված ժողովրդա-տնտեսական պլան կազմելու համար տարեկան կպահանջվի մոտ $10^{16}$ գործողություն: Փորձված հաշվարկողն աշխատելով ավտոմատ արիֆմոմետրի վրա, մի տարվա ընթացքում ընդունակ է կատարելու 300—400 հազար գործողություն: Նման ձևով հաշվարկում կազմակերպելու դեպքում $10^{16}$ գործողություն կատարելու համար կպահանջվի երեսուն միլիարդ մարդ-տարի:*

*Էկոնոմիկան կիբեռնետիկայի կիրառման ամենակարևոր, ամենաբարդ և ամենահեռանկարային բնագավառներից մեկն է: Այդ է պատճառը, որ շատ ավելի ուշ սկսվեց կիբեռնետիկայի արմատավորումը էկոնոմիկայի մեջ: Ինչպես մնացած բնագավառներում, այնպես էլ էկոնոմիկայում, կիբեռնետիկայի կիրառման անհրաժեշտ նախապայմանն ուսումնասիրվող օբյեկտի որակական խոր վերլուծությունն է: Բայց եթե մյուս բնագավառներում կիբեռնետիկայի կիրառման նկատմամբ տնտեսակարգը որոշիչ դեր չի խաղում, ապա էկոնոմիկայում այն մեծ չափով կախված է հասարակարգից: Էկոնոմիկայի մեջ կիբեռնետիկայի կիրառման ոլորտը կապիտալիզմի ու սոցիալիզմի պայ-*

մաններում հիմնովին տարբեր է, այն պայմանավորված է տնտեսության տարբեր սիստեմների ընձեռած հնարավորություններով:

Կապիտալիստական մասնավոր սեփականության պայմաններում ամբողջ հասարակության մասշտաբով գոյություն ունեցող մրցակցությունն ու արտադրության անարխիան, ճիշտ է, զուգակցվում են առանձին ձեռնարկությունների և մոնոպոլիստական միավորումների սահմաններում արտադրության պլանային կազմակերպման հետ, բայց այդ հասարակությունը նեղացնում է կիբեռնետիկայի կիրառման մասշտաբները և իջեցնում նրա արդյունավետությունը:

Կիբեռնետիկայի հիմնադիր Նորբերտ Վիները, չնայած բուրժուական անարխիայի նկատմամբ ունեցած իր համակրանքին, անարխիա, որը նա անվանում է «դեմոկրատիա», իր **Կիբեռնետիկան և հասարակությունը** գրքում նշում է, որ բուրժուական հասարակության մեջ նպատակի բացակայությունն անշահավետ է դարձնում հասարակության ղեկավարման բնագավառում կիբեռնետիկական մեթոդների կիրառումը: Բուրժուական գիտնականի կողմից այդպիսի փաստի ընդունումը բավականին բազմանշանակ է: Չնայած դրան, մոնոպոլիստական միավորումները լայնորեն կիրառում են էլեկտրոնային հաշվիչ մեքենաները՝ տվյալների հաղորդման, հիշման և մշակման համար: Այսպես՝ Սիլիվանիա էլեկտրատեխնիկական կոնցեռնում Յունիվակ էլեկտրոնային հաշվիչ մեքենայի օգնությամբ (վայրկյանում կատարում է 25 հազար գործողություն), կենտրոնացված է ամբողջ հաշվարկումը: Այդ մեքենան սպասարկում է 118 կազմակերպությունների և ձեռնարկությունների, որոնք գտնըվում են 61 տարբեր քաղաքներում: Սկզբնական ինֆորմացիան հաղորդվում է կոնցեռնի հաշվողական կենտրոնին աբոնենտային հեռագրական կապի միջոցով, որի ընդհանուր երկարությունը 36 հազար կմ է: Բոլոր մշակված փաստաթղթերը (հաշվետվությունը, բալանսը, ամփոփումը, աշխատավարձի ցուցակը և այլն) էլեկտրոնային հաշվիչ մեքենաների միջոցով մշակվելուց հետո հեռագրական կապով հաղորդվում են ձեռնարկությանը կամ կոնցեռնի ղեկավարությանը:

ԱՄՆ-ի խոշոր ավտոընկերություններից մեկը յուրաքանչյուր ամսում ԷՀՄ-ի (էլեկտրա-հաշվիչ մեքենա) միջոցով ստուգում են սպառման բոլոր տվյալները, հաշվի առնելով համարյա 8000 ֆակտոր: Ըստ ընկերության տվյալների, այդ նպատակի համար օգտագործվում է Յունիվակ ԷՀՄ-ը, որը վայրկյանում կատարում է 1700 թվաբանական գործողություն: Յուրաքանչյուր ամիս այդ հաշվարկների վրա ծախսվում է 10 մեքենայական ժամ, որի շնորհիվ ֆիրման տարեկան տնտեսում է 6 միլիոն դոլար:

Մինչդեռ կիբեռնետիկան, լինելով նպատակասլաց կառավարման գիտություն, չի կարող հաղթահարել կապիտալիստական էկոնոմիկայի տարերայնությունը: Որպես օրինակ, կարելի է բերել թեկուզ այն փաստը, որ ԱՄՆ-ում Յունիվակ տիպի էլեկտրոնային հաշվիչ մեքենայի օգնությամբ ուսումնասիրվել են արտադրության 500 ճյուղերի միջճյուղային կապերը: Սակայն 1957 թվականին ԱՄՆ-ի կառավարությունն այդ աշխատանքների ֆինանսավորումը դադարեցրեց, նկատի ունենալով, որ ճյուղային կապերի ուսումնասիրության արդյունքները չեն կարող ամերիկյան էկոնոմիկան ազատել, ճգնաժամից ու գործազրկությունից:

Չնայած մեր էկոնոմիկայում ուշ սկսեց կիրառվել կիբեռնետիկան, բայց



արդեն զգալի է առաջընթացը: Սիբիրի ցեմենտի գիտահետազոտական ինստիտուտում ԷՀՄ-ի օգնությամբ որոշվեց Սիբիրի և Հեռավոր Արևելքի ցեմենտի գործարանների տեղաբաշխման ու մասնագիտացման (մինչև 1970 թվականը) էֆեկտիվ տարբերակ, որի իրացումից մոտավորապես կստացվի 20 միլիոն ռուբլու խնայողություն: Այդ բացատրվում է նրանով, որ նախագծողներն ու ինժեներները համեմատել են մի քանի տարբերակներ, իսկ մեքենան հազարավոր հնարավոր տարբերակներից ընտրել է ամենաշահավետը:

Ճշգրիտ մաթեմատիկական մեթոդների և ԷՀՄ-ի միջոցով հաշվարկվել է Նովոսիբիրսկի տնաշինական կոմբինատի արտադրության օպտիմալ տարբերակ, ըստ որի կոմբինատն առանց լրացուցիչ ծախսերի, առկա սարքավորումներով տարեկան կարող է լրացուցիչ արտադրանք թողարկել 21 հազար քառակուսի մետր բնակելի տարածության համար: Այդ մեթոդն այժմ ներդրվում է արտադրության մեջ:

Ինչպես հայտնի է, ժամանակակից մեքենաները, սարքերը և կառուցվածքները տարեցտարի բարդանում են: Նոր հայտնագործված մեքենան, սարքավորումը կամ նախագծված կառույցը մինչև արտադրության մեջ արմատավորվելը կամ շահագործման հանձնվելը բավականին երկար ճանապարհ է անցնում, որովհետև այն կապված է գիտական և արտադրական բազմաթիվ կոլեկտիվների համատեղ աշխատանքի հետ: Իսկ ինչպե՞ս պլանավորել և կոորդինացնել բազմաթիվ կոլեկտիվների գործողությունները, որպեսզի կրճատվեն լրացուցիչ ծախսերը: Այդ խնդրի լուծման համար, ինչպես մեզ մոտ, այնպես էլ արտասահմանում, մշակվել են մի շարք նոր մեթոդներ. դրանցից է «Կրիտիկական քայլերի մեթոդը»:

Այդ մեթոդի էությունը հետևյալն է: Մաթեմատիկական լոգիկայի յուրահատուկ լեզվով պատկերվում է օբյեկտի կառուցման սխեման: Այն ընդգրկում է բոլոր տեսակի անհրաժեշտ աշխատանքները և նրանց միջև գոյություն ունեցող կապը: Օրինակ՝ էլեկտրակայանի կառուցման համար այդպիսի աշխատանքներ են՝ տեղի ընտրությունը, ամբարտակի, տուրբինի նախագծումը և կառուցումը, ճանապարհների և հաղորդման գծերի անցկացումը, սարքավորումների մոնտաժումը և այլն: Իրենց հերթին այդ հանգույցներից յուրաքանչյուրը բաժանվում է ավելի մանր մասերի: Այս սխեման արտաքինով շատ նըման է ցանցի, որը բաղկացած է գծերից ու հանգույցներից: Յուրաքանչյուր գիծ պատկերում է աշխատանքը, իսկ նրա ծայրերի հանգույցները, որոնց սովորաբար անվանում են երևույթ, ցույց են տալիս այդ աշխատանքի սկսման և ավարտման ժամանակը: Յուրաքանչյուր հանգույց (երևույթ) հանդիսանալով մի գծի (աշխատանքի) վերջը, միաժամանակ մյուս գծի (աշխատանքի) սկիզբն է: Այսպիսով, յուրաքանչյուր աշխատանք մոդելի մեջ պատկերվում է երկու կետի և մեկ ուղիղ գծի միջոցով, որը կարելի է ներկայացնել թվերի ձևով: Այդ սխեման շատ դիտողական է, բայց առանց ԷՀՄ-ի ինքն իրեն ոչինչ չի տալիս: ԷՀՄ-ը հաշվարկում է սկզբնական պլանի բոլոր ցուցանիշները. օրինակ՝ ժամանակը և արժեքը, ինչպես աշխատանքի առանձին մասերի, այնպես էլ ամբողջ կառույցի համար:

Մշակելով թվային տվյալները, ԷՀՄ-ն ընտրում է կառույցի միմյանց հետ կապված աշխատանքների ամենաերկար հաջորդականությունը, որով և որոշվում է կառույցի ավարտման ժամանակը: ԷՀՄ-ը միաժամանակ հաշվում է ընտրված հաջորդականության յուրաքանչյուր օղակի ավարտման ժամկետը:

Ամենաերկար հաջորդականությունն իր օղակներով կոչվում է «կրիտիկական ճանապարհ»։ Կառույցի ավարտման ժամկետը կարելի է կրճատել միայն «կրիտիկական ճանապարհի» կրճատման միջոցով։ Հաշվի առնելով և գնահատելով մնացած հաջորդականությունների ժամանակի ռեզերվները, էլեկտրոնային հաշվիչ մեքենան գտնում է «կրիտիկական ճանապարհի» կարճացման հնարավորություններ, կատարելով ռեզերվների նոր, առավել շահավետ վերաբաշխում։

Այս մեթոդի առավելություններից մեկն էլ նրա կիրառելիությունն է աշխատանքի կատարման ողջ ընթացքում։ Դրա օգնությամբ կարելի է ստանալ ոչ միայն օբյեկտիվ ինֆորմացիա աշխատանքի փաստացի վիճակի մասին, այլև ցուցումներ այն մասին, թե ինչպիսի միջոցառումներ պետք է ձեռնարկել աշխատանքի ետ մնացած տեղամասերն առաջ շարժելու համար։

«Կրիտիկական քայլերի մեթոդով» էլեկտրոնային հաշվիչ մեքենաների օգտագործումը մեծ չափով կրճատում է նոր տեխնիկայի ներդրման և խոշոր կառույցների շինարարության աշխատանքների ժամկետները, որը հնարավորություն է տալիս ավելի արդյունավետ օգտագործելու ֆինանսական և նյութատեխնիկական միջոցները։ Այսպես, օրինակ, 60 մետր երկարություն ունեցող կամրջի մեկ տարբերակով հաշվարկումները կատարելու համար ճարտարապետության համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի ինժեներները կորցրել են երկու ամսից ավելի ժամանակ, իսկ «Ուրալ—2» էլեկտրոնային հաշվիչ մեքենան 45 րոպեում տվեց ավելի արդյունավետ տարբերակ։ Եթե այդ մեթոդը կիրառվեր Կրասնոյարսկի խոշոր հիդրոէլեկտրակայանը կառուցելիս, ապա կառուցման ժամանակը կկրճատվեր 30—40 տոկոսով, իսկ նրա արժեքը՝ 100—150 միլիոն ռուբլով (տե՛ս «Ивестия» 27 ապրիլի 1963 թ. Վ. Բարցովի և Զ. Նայդով-Ժելեզովի Արագ և էժան, հոդվածը)։

***

Սոցիալիստական վերարտադրության հիմնական օղակներից մեկը նյութատեխնիկական մատակարարումն է։ Ներկայումս ՍՍՌՄ-ի մատակարարման և սպառման օրգաններն ամեն տարի կազմում են 10,5—12 հազար նյութական բալանսներ, տարբեր տեսակի արտադրանքների համար (տե՛ս, «Вестник» АН СССР, 1960 № 8, стр. 63)։ Նյութատեխնիկական մատակարարման դժվարությունները մեծ մասամբ առաջանում են ոչ այնքան ժողովրդական տնտեսության մեջ այս կամ այն նյութի պակասության, որքան նրանց ոչ ճիշտ բաշխման պատճառով։ Այսպես, օրինակ, 1959 թ. առ մեկը հունիսի Միության ժողտնտխորհների որոշ ձեռնարկություններում նյութական արժեքները 320 միլիոն ռուբլով ցածր են եղել պլանից, այն ժամանակ, երբ մյուս ձեռնարկություններում պահանջից ավելի մնացորդները հասնում էին 1,5 միլիարդ ռուբլու («Правда», 28 հոկտեմբերի, 1959 թ.)։ Հենց սրանով է բացատրվում այն փաստը, որ վերջին տարիներին ժողովրդական տնտեսության պլանավորման օղակներից ոչ մեկն այնքան չի քննադատվել, որքան նյութատեխնիկական մատակարարման օրգանները։

Նյութատեխնիկական մատակարարման աշխատանքները շատ բարդ են, քանի որ դրանց ճիշտ կազմակերպումը պահանջում է հաշվի առնել ամբողջ



երկրով ցրված արտադրության և սպառման օբյեկտների, միմյանց հետ կապող տրանսպորտի հնարավորություններն ու պահանջները։

Հայրենական և արտասահմանյան փորձը ցույց է տալիս, որ նյութատեխնիկական մատակարարման գործում էհմ-ի օգտագործումը տալիս է տնտեսական մեծ օգուտ, միաժամանակ կրճատելով այդ բնագավառում աշխատողների թիվը։ Այսպես, օրինակ, ԱՄՆ-ի մոտո-մեքենայացված բանակի նյութատեխնիկական մատակարարման հետ կապված բոլոր հաշվարկումներն ու փաստաթղթերը կազմում է «Բիզմակ» էլեկտրոնային հաշվիչ մեքենան, որը վայրկյանում ունի 25 հազար գործողություն կատարելու արագություն։ Մեքենայի հիշողությունից ցանկացած պահին կարելի է ստանալ այդ պահին համապատասխանող 250 հազար նյութերի բոլոր ցուցանիշները։ Մեքենան օրական մշակում է 65 հազար փաստաթուղթ, որոնք պարունակում են 1,3 միլիոն տվյալ և հաղորդում հաղորդալարերով ու ռադիոհեռագրերով։

ՍՍՌՄ ԳԱ ղեկավարող էլեկտրոնային մեքենաների գիտահետազոտական ինստիտուտում «M—2» էհմ-ի միջոցով հաշվարկվեց ածխի տեղափոխման օպտիմալ սխեման ՍՍՌՄ մասշտաբով։ Այդ սխեման ընդգրկում էր 30 արտադրող և 98 սպառող տնտեսական շրջաններ։ Հաշվարկումները ցույց տվին, որ 1957 թ. և 1960 թ. ածխի տեղափոխման սխեման կարելի էր լավացնել փաստացի սխեմայի նկատմամբ համապատասխանաբար 10,2 տոկոսով և 9,8 տոկոսով, որը կտար, առաջին դեպքում՝ 100 միլիոն, երկրորդ դեպքում՝ 80 միլիոն ռուբլու տնտեսում (տե՛ս «Применение цифровых вычислительных машин в экономике», Изд. АН СССР, 1962 г., ст. 51)։

Մոսկվայի քաղաքային ավտոտրանսպորտի վարչության ավտոճանապարհային ինստիտուտը և ավտոտրանսպորտի գիտահետազոտական ինստիտուտը համատեղ մշակեցին Մոսկվայի և Մոսկվայի մարզի 13 հազար բեռնատար ավտոմեքենաներով շինարարական և առևտրական բեռների փոխադրման օպտիմալ պլանը և 1962 թվականին ներդրեցին պրակտիկայում։ Ըստ այդ պլանի, միայն Մոսկվա քաղաքում այդ տեղափոխումների ծախսերը 1962 թվականին կրճատվեցին 2,5 միլիոն ռուբլով։

Ինչպես ցույց են տվել նախնական հաշվարկումները, էհմ-ի կիրառման շնորհիվ նյութատեխնիկական մատակարարման բնագավառում՝ ծախսերը կպակսեն հինգ անգամ, իսկ ղեկավարման ապարատը կկրճատվի երկու անգամ (տե՛ս «Кибернетика на службе коммунизма», сборник статей, ст. 198)։

Կիբեռնետիկայի կիրառման կարևոր օբյեկտ է ՍՍՌՄ-ի պետական բանկը, որտեղ հավաքվում և մշակվում է դրամաշրջանառության վերաբերյալ ողջ ինֆորմացիան։ ՍՍՌՄ պետական բանկը սպասարկում է հարյուր հազարավոր ձեռնարկությունների, կազմակերպությունների և տասնյակ հազարավոր կոլտնտեսությունների, իսկ անձնական քարտերի թիվն անցնում է 3,5 միլիոնից։

Պետական բանկի բոլոր օղակներում օրական միջին հաշվով կատարվում են 3300 հազար, իսկ տարեկան՝ մեկ միլիարդից ավելի հաշվային գործողություններ։ Վերջին տարիներին մեծ ուշադրություն է նվիրվում ՍՍՌՄ պետական բանկի աշխատանքների մեքենայացմանը, քանի որ մշակվող փաստաթղթերի ծավալի աճող տեմպերը մոտակա տարիներում կարող են հասցնել այնպիսի վիճակի, որ անհնար կլինի նախատեսված ժամանակամիջոցում

մշակել ամբողջ ինֆորմացիան: Արտասահմանյան բանկերը նույնպես հանդիպել են այդպիսի դժվարությունների: ԱՄՆ-ի և Արևմտյան Եվրոպայի բանկային սիստեմներում կիբեռնետիկական մեթոդների հիման վրա կազմված են կապի հատուկ կանալներ, որոնք ԷՀՄ-ի հետ միասին ստեղծում են բանկային ինֆորմացիայի մշակման, հաղորդման և պահպանման մի ընդհանուր սիստեմ: Սկզբնական տվյալները ֆիքսելու համար պերֆոքարտը պաշտոնական փաստաթուղթ է: Օգտագործվում են նաև բանկի տարբեր տեսակի քարտերը՝ մագնիսական գրանցումով, որոնք նույնպես պաշտոնական փաստաթուղթ են:

Ակնհայտ է, որ տնտեսության սոցիալիստական սիստեմը ավելի լայն հնարավորություններ է ստեղծում էկոնոմիկայի բնագավառում կիբեռնետիկայի կիրառման համար: Բայց, ինչպես հայտնի է, այդ հնարավորությունները մինչև վերջին տարիները բավարար չափով չէին օգտագործվում:

ՍՄԿՊ Կենտկոմը և ՍՍՌՄ Մինիստրների սովետը, մեծ նշանակություն տալով ժողովրդական տնտեսության պլանավորման և կառավարման բնագավառում ժամանակակից մաթեմատիկական մեթոդների օգտագործմանը, և պլանային-տնտեսական ապարատը էլեկտրոնային հաշվիչ մեքենաներով (ԷՀՄ) զինելուն, 1963 թվականի մայիսի 21-ի որոշմամբ ստեղծեցին մի շարք կենտրոնական օրգաններ և գիտական հիմնարկներ, որոնք կոչված են մշակելու ժողովրդական տնտեսության օպտիմալ պլանավորման և կառավարման սիստեմ, պետական միասնական հաշվիչ կենտրոնների ցանցի հիման վրա:

Այդ որոշումը նոր թափ հաղորդեց կիբեռնետիկական մեթոդների կիրառմանը ինչպես Միության մեջ, այնպես էլ մեր ռեսպուբլիկայում:

***

Մեր ռեսպուբլիկայի արդյունաբերության մեջ մաթեմատիկական մեթոդների և էլեկտրոնային հաշվիչ մեքենաների ներդրման, այդ բնագավառում կատարվող գիտահետազոտական աշխատանքները ղեկավարելու և կոորդինացնելու համար 1963 թվականին ՀՍՍՌ Մինիստրների սովետի գիտահետազոտական աշխատանքների կոորդինացման պետական կոմիտեում ստեղծվեց միջտեսչային խորհուրդ: Այն ունի տարբեր սեկցիաներ, որոնք զբաղվում են այդ պրոբլեմի առանձին հարցերով:

ՀՍՍՌ ԳԱ տնտեսագիտական ինստիտուտում ստեղծվեց էկոնոմիկա-մաթեմատիկական սեկտոր, որի առաջ խնդիր դրվեց մաթեմատիկական մեթոդների և ԷՀՄ-ի օգտագործմամբ ուսումնասիրել ռեսպուբլիկայի արդյունաբերության առաջատար ճյուղերի հիմնական ֆոնդերի օպտիմալ օգտագործման հնարավորությունները և միաժամանակ օգնել ինստիտուտի մյուս սեկտորներին՝ իրենց տնտեսագիտական ուսումնասիրություններում արմատավորելու կիբեռնետիկական մեթոդները:

Սեկտորի կողմից մշակվել է ՀՍՍՌ ԺՏԽ մեքենաշինության հիմնական ֆոնդերի օպտիմալ օգտագործման փորձնական էկոնոմիկա-մաթեմատիկական մոդելը, որը ներկայումս փորձարկվում է մեքենաշինական երեք ձեռնարկությունների համար: Ըստ այդ մոդելի հաշվարկումները կատարվել են



ՍՍՌՄ ԳԱ հաշվողական կենտրոնում, «БЭСМ-2» էլեկտրոնային հաշվիչ մեքենայի միջոցով:

Մաթեմատիկական մեթոդների և ԷՀՄ-ի օգտագործմամբ մշակվել է Մասիս կոշկի արտադրական միավորման (ֆիրմայի) տեղարդ-ֆինպլանի էկոնոմիկա-մաթեմատիկական մոդելը, որը կիրառվել է ֆիրմայի մեջ մտնող № 3 կոշկի ֆաբրիկայի տեղարդ-ֆինպլանի կազմման համար: Այս եղանակով որոշվել է ձեռնարկության օպտիմալ պլանը, հաշվարկվել են նյութական ու դրամական ծախսերը, թողարկվող արտադրանքի յուրաքանչյուր տեսակի ինքնարժեքը:

Օպտիմալ պլանավորման խնդիրը լուծված է նաև № 1 կոշկի ֆաբրիկայի և ավտոպահեստամասերի գործարանի առանձին արտադրամասերի համար: Ավտոպահեստամասերի գործարանի երրորդ արտադրամասի օպտիմալ պլանավորման խնդիրը լուծելիս Հրազդան—2 էլեկտրոնային հաշվիչ մեքենան վերլուծեց պլանի 56 առավել շահավետ տարբերակներ և հաջորդաբար լավացնելով դրանք, ընտրեց օպտիմալը, ծախսելով 15 րոպե մեքենայական ժամանակ, որը հավասարազոր է 3 մարդ-տարի ժամանակի:

ՀՍՍՌ ԳԱ տնտեսագիտության ինստիտուտում ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության զարգացման 1956—1970 թթ. ճյուղային կտրվածքով պլանը կազմելու համար օգտագործվեց Հրազդան—2 էլեկտրոնային հաշվիչ մեքենան, որն ստուգելով 33.122 տարբերակները՝ ընտրեց 18 հնարավոր տարբերակ և ծախսելով 1,5 մեքենայական ժամ, կատարեց 27 միլիոն գործողություն: Այդ աշխատանքն ավտոմատ արիֆմոմետրերով կատարելու համար հարկավոր է 90 մարդ-տարի ժամանակ: Վերոհիշյալ ինստիտուտում այժմ մաթեմատիկական մեթոդներով մշակվում է Հայաստանի ժողովրդական տնտեսության միջճյուղային կապերի բալանսը:

Չնայած այս ամենին, հաշվողական տեխնիկան դեռևս չի հասել կատարելության, իսկ եղածն էլ չի օգտագործվում լրիվ կարողությամբ:

Հաշվողական տեխնիկայի զարգացումը մինչև վերջին ժամանակները կրել է միակողմանի բնույթ, հիմնականում ուշադրություն է նվիրվել այնպիսի մեքենաների թողարկմանը, որոնք կարող են կատարել միայն գիտատեխնիկական հաշվարկումներ, որտեղ սկզբնական տվյալները համեմատաբար շատ քիչ են և պահանջում են գործողությունների կատարման բարձր արագություն: Տնտեսագիտական հաշվարկումների համար կարևորը ոչ թե գործողությունների կատարման մեծ արագությունն է, այլ մեծ ծավալի հիշողությունը և տվյալների ընդունման ու հաղորդման կատարելագործված սարքավորումը: Բանն այն է, որ «տնտեսագիտական» մեքենան պետք է մշակի բավականին մեծ թվով տվյալներ և արդյունքը հաղորդի ոչ թե կոդավորված ձևով, այլ որպես պատրաստի փաստաթուղթ, որը հնարավոր լինի միանգամից օգտագործել:

Գոյություն ունեցող ԷՀՄ-ի համար տվյալների նախապատրաստումը, ստացված արդյունքների մշակումը հաճախակի պահանջում են մի քանի հարյուր անգամ ավելի ժամանակ, քան խնդրի լուծումը: Այս ամենը, ինչպես ՍՍՌՄ, այնպես էլ ՀՍՍՌ ժողովրդական տնտեսության պրակտիկայում կիբեռնետիկական մեթոդների դանդաղ ներդրման կարևոր պատճառներից մեկն է: Բացի դրանից անհրաժեշտ է թողարկվող սերիական ԷՀՄ-ի համար նախատեսել օպերատիվ հիշողության տարբեր դիապազոնի ստանդարտ սար-

քեր, որոնք հնարավորություն կտան սպառողին՝ ընտրելու սարքերի այնպիսի կոմպլեկտ, որոնք ավելի հարմար են իրենց խնդիրների լուծման համար։

ԷՀՄ-ի լայն կիրառումը տնտեսության մեջ անիմաստ է առանց սկզբնական տվյալների հավաքման գոյություն ունեցող սիստեմը հիմնովին վերանայելու։ Հարկավոր է առավելագույն չափով ավտոմատացնել տվյալների հավաքումը, հաղորդումը և մշակումը, հասնել սկզբնական ինֆորմացիայի խիստ սիստեմավորման և նրա ճշտության բարձրացման։ Էլեկտրոնային հաշվիչ մեքենաները պլանավորման, ղեկավարման պրակտիկայում լայնորեն ներդնելու համար անհրաժեշտ է նաև լուծել կազմակերպական մի շարք հարցեր։ Մինչև մեքենայի տեղադրումը պետք է պարզել, թե ինչպիսի խնդիրներ պետք է այն լուծի, կապի ինչպիսի միջոցներով պետք է ստացվեն տվյալները, ինչպես պետք է հաղորդվեն արդյունքները և այլն։ Առանց դրան ԷՀՄ-ի էֆեկտիվությունը հասնում է զրոյի։ Այս է այն հիմնական պատճառը, որի հետևանքով ռեսպուբլիկայում մեքենաներն օգտագործվում են իրենց հնարավորություններից շատ ցածր, իսկ որոշ մեքենաներ լրիվ անգործության են մատնված։

Ռեսպուբլիկայի կիբեռնետիկական մեթոդների անբավարար արմատավորումը բացատրվում է նաև համապատասխան կադրերի պակասով։

Կադրերի հարաճուն պահանջը բավարարելու և տնտեսագետների մաթեմատիկական պատրաստությունը բարձրացնելու համար, մեր կարծիքով, նպատակահարմար է Լենինգրադի և Նովոսիբիրսկի համալսարանների օրինակով Երևանի պետական համալսարանի տնտեսագիտական ֆակուլտետում ստեղծել էկոնոմիկա-մաթեմատիկական ամբիոն։ Ցանկալի է, որ այդ նույն համալսարանների օրինակով միջոցներ ձեռնարկվեն մաթեմատիկական կադրերի տնտեսագիտական պատրաստականությունը բարձրացնելու ուղղությամբ, քանի որ տնտեսագետի և մաթեմատիկոսի համատեղ աշխատանքի դեպքում միայն կարելի է հասնել ցանկալի արդյունքի։

Տնտեսագիտական հետազոտություններում, ժողովրդական տնտեսության պլանավորման և արտադրության ղեկավարման պրակտիկայում կիբեռնետիկական մեթոդների կիրառումն ավելի արդյունավետ դարձնելու համար անհրաժեշտ է մեր ռեսպուբլիկայի տեխնիկական ուսումնական հաստատություններում ավելի մեծ տեղ հատկացնել կիբեռնետիկայի նորագույն նվաճումների ավանդմանը։

Կիբեռնետիկան գիտություն է օպտիմալ ղեկավարման մասին։ Այն մեծ ապագա ունի։ Ինչպես նկատում է ակադեմիկ Ա. Ի. Բերգը՝ մենք կկառուցենք կոմունիզմ էլեկտրոնային հաշվիչ մեքենաների բազմակողմանի օգտագործման բազայի վրա, որոնք ընդունակ են ժամանակի փոքր հատվածում մշակելու մեծ քանակությամբ արտադրական, տնտեսական և բիոլոգիական ինֆորմացիաներ։



## ՀԱՅՐԵՆԻ ՊԱՏԳԱՄԱԲԵՐԸ ՍՓՅՈՒՌՔԱՀԱՅՈՒԹՅԱՆ ԾՈՑՈՒՄ

ՍԻԼՎԱ ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ

ՔԱՐԱՎԱՆՆԵՐԸ ԴԵՌ ՔԱՅԼՈՒՄ ԵՆ

«Հայաստան» Հրատարակչություն. Երևան. 1964

«Քարավանները դեռ քայլում են»,—այսպես է վերնագրված Սիլվա Կապուտիկյանի նոր գիրքը, որն, ի տարբերություն նրա այլ երկերի, չափածո չէ շարադրված, այլ արձակ։ Բանաստեղծուհու «անձնական հաշվետվությունն» է բավական ստվար այս հատորը՝ 1963 թվականին դեպի Մերձավոր Արևելք՝ Լիբանան, Սիրիա և Եգիպտոս կատարած երկամսյա ուղևորության վերաբերյալ։ «Այցելածս կանայան քաղաքներում ու կանայան ձեռնարկումների ժամանակ մոտ 150 անգամ առիթ ունեցա խոսք ասելու. դրանցից 30—40-ը՝ մեծ դահլիճներում, մի քանի հարյուրից մինչև երկու հազարի հասնող բազմության առաջ,— գրում է նա ու ավելացնում,— և ամեն անգամ ես, որ սովոր չէի բանավոր ընդարձակ խոսքի, ինքս էլ էի զարմանում, թե այս որտեղից են գալիս բառերը, ինչպես են այսպես անխափան շարադրվում նախադասությունները, պատկերներ կառուցվում, ճարտասանական շեշտեր առաջանում»։ Այո՛, ուղեգրությունների սովորական մի գիրք չէ սա, այլ հայրենասերի բորբոք շնչով տոգորված մի կերտվածք, բանաստեղծական գեղեցիկ մի ստեղծագործություն։

Ո՞րն է խանդավառության այն հորդաբուխ աղբյուրը, որ սնել է բանաստեղծուհու միտքը, ուժ տվել նրա գրչին։ Ամեն քայլափոխում՝ իր շրջագայության միջոցին, և ամեն րոպե՝ իր տպավորությունները ամփոփելիս ու գրի առնելիս, նա կզացել է իրեն իբրև իր պանծալի հայրենիքի դուստրը, իբրև նրա պատգամաբերը սփյուռքահայ կանգվածի ծոցում, իբրև իր ժողովրդի նվիրական իղձերի արտահայտիչը։ Այս է, որ ուժ է տվել նրան ու կորով։

Ուղևորության անմիջական առիթը եղել է Լիբանանում կազմակերպվող Մեսրոպյան փառատոնին մասնակցելու հրավերը։ Եվ այստեղ արդեն, տեղ հասնելուն պես, Բեյրութի «Կապիտոլ» կինոթատրոնի իր բանախոսության մեջ, նա չի վարանում ասել, թե «...անհնարին պիտի լիներ դիմանալ ձեր անսահման մեծարանքին, սիրո ու ջերմության այս անսանձ հորձանքին, եթե չիմանայի, որ այս սիրո ու մեծարման մեջ առավել բաժին ունի ինքը, մեր սիրելի Մայր Հայաստանը, որ իմ մեջ, Հայաստանից եկող յուրաքանչյուր անձի մեջ, դուք տեսնում եք խոր-

հըրդանիշը հայրենիքի, շունչն ու ձայնը հայրենիքի»:

Այս միտքը գրքում կրկնվում է վանազան առիթներով, բայց չի մնում իբրև հեղինակի սոսկ անձնական մի կցացողություն: Այն միս ու արյուն է առնում նկարագրվող բազմաբնույթ հանդիպումների մեջ, որոնցից շատերը վերին աստիճանի սրտառուչ են:

— Աս մորաքույրը ո՞վ է, ձագուկս:

— Սիլվա Կապուտիկյանն է:

— Ո՞վ է Սիլվա Կապուտիկյանը:

— Հայաստանեն է...

Մանկապարտեզումն է այս հարց ու պատասխանը՝ պարտիզպանուհու և նրա սանիկի միջև:

Ահա և «կողմնակի» մի դեպք, որ բանաստեղծուհուն պատմում է խելք ու միտքը ֆուտբոլի տված մի երիտասարդ, վերհիշելով Երևանի «Սպարտակ» թիմի այցը Բեյրութ:

— Մարզադաշտը լեփ-լեցուն էր, 40 հազար հայեր: Մեր առջև մամիկ ու պապիկ մը նստած էին, երկուքն ալ կույր... Քովինները հարցուցին «դուք ինչու եկած եք»... Պատասխան չեղավ... Երբ, առաջին անգամ ըլլալով, այդպես հրապարակով հնչեց Հայաստանի հիմնը, և ամենքը ոտքի ելան, շատերու աչքին արցունք երևցավ... Իսկ անոնք, կույր ծերուկները, դարձան քովիններուն և ըսին. «Ահա ասոր համար էինք եկած»...

Ահա այս հողի վրա, խորունկ հայրենասիրության այս մթնոլորտում է, որ փոխըմբռնում է ստեղծվում ու շատ շուտով նաև փոխադարձ համակրանք է առաջանում «հյուրի» և «հյուրընկալների»՝ տարբեր խավերի պատկանող մարդկանց միջև: Եվ մեր առջև հառնում է մեր բանաստեղծուհին՝ իբրև իր հայրենիքի՝ Սովետական Հայաստանի արժանավոր դուստրը, որի սրտին մոտ են սփյուռքահայ աշխատավոր մարդկանց հոգսերն ու կարիքները, իղձերն ու երազանքները:

Առավոտյան ուղևորությունից արդեն հոգնած, նա երեք ժամից ավելի շրջում է Բեյրութի «Զարչապուք» թաղում, անցնում տնե-տուն, բակից բակ,—«եթե տուն ու բակ կարելի է կոչել մամռած փայտից ու ժանգոտած թիթեղից, պատահական քար ու աղյուսից իրար բերած, մի կերպ ոտքի վրա կանգնեցրած հյուղակները և ցեխով ու լվացքաջրի լճակներով ճողփացող, մգլահոտ այն անցքերն ու անցուղիները, որ ընկած են այդ հյուղերի արանքում»:

Հաջորդում են ցնցող պատկերներ հանդիպումների՝ այս թաղի, այսօր էլ աղետյալ, հայրենակարոտ բնակիչների հետ:

Համակրանքով, սրտակցությամբ ու հիացմունքով է գրում հեղինակը հայ արհեստավորների ճարտարության, նրանց հոգսերի մասին, ու մեր առջև գծագրվում են յուրօրինակ, համակրելի ու երբեմն իրենց ինքնատիպությամբ անմոռանալի դեմքեր: Ահա «Թեքեյանի վարչական Քյություռ Հակոբը»: Դերձակ է սա, չնայած «քառասունի հետ բանակցող» տարիքին, դեռ ամուրի: Ահա նրա տունը. «հնացած կարասիներ, հին մի մայր, խոնարհ ու սևաչյա քույր, որ օգնում է Հակոբին արհեստանոցում»: «Դեռ բնակարանս չեմ շտկած»,— արդարանում է Հակոբը: Ու վազում է նա, վազում, «ոտքերի փոխարեն գործի դրած ձեռքերը՝ հայ արհեստավորի շնորհառատ, ամուր ու համառ ձեռքերը... Հիմա այդ ձեռքերի մի ժամվա աշխատանքը ոսկիներ է բերում: Եվ սակայն Հակոբը, որքան էլ իր գործը գիտցող և հրապաշտ, հաճախ է հավաքում, մի կողմ դնում կիսակար զգեստը և գլխարկը գլուխը քաշում. «Թեքեյանի տարեկան շուկան է՝ չունևոր աշակերտներու օգտին... Այսօր ալ չեմ վերադառնար»...

Ահա ոսկերիչ Հակոբ Կյուլոյանը, պարթևահասակ, բայց վարմանալի քաշվող ու դյուրազգաց մի մարդ: Հոգով սրտով իր նրբարվեստին և ընկերային, արհեստավորական հոգսերին նվիրված «այս քառասնամյա պատանին», գործը թողած, շրջում է հայաբնակ քաղաքներում և արտասանում վանական սրահներում, իր հասույթը նվիրելով հայկական հաստատություններին՝ ծերանոցին, մայրանոցին, աղքատախնամին, դըպրոցներին: Բանաստեղծուհին Հալեպի «Մինեմս-Սուրիայում» լսում է «Վերք Հայաստանիի» նրա արտասանությունը. «արվեստից ու վարպետությունից ավելի՝ սիրտ ու հոգի կար այդ կատարման մեջ, վառք ու սպառում»:

Լաթաքիա քաղաքում կայացած Մեսրոպյան հանդեսի ժամանակ մենք հանդիպում ենք «քյամանչիստ Ռուբենին»: Խորշոմած, սպիտակահեր, բայց այսօր էլ ժպտերես ու կվարթ, նա շրջում է աշխարհիս բոլոր հայաշատ վայրերն ու նվագում, ալեկոծելով մարդկանց սրտերը հայրենաշունչ իր մեղեդիներով:

Ահա մի ուրիշ, իր կյանքի պատմությամբ ոչ պակաս զարմանալի մարդ՝ Հակոբ Թոմբալյանը: Պատանի հասակից, կյանքի դժնդակ պայմաններին դիմանալու համար, նա որոշել է *ուժեղ լինել*, և շուտով կարողացել է դառնալ Մերձավոր Արևելքում հայտնի մի կռփամարտիկ: Ներկայումս՝ տարիքն առած, ուրիշ իղձեր ունի նա: Ցույց է տալիս մի լուսանկար. «Աս ալ երգահան Արամ Խաչատրյանն է, մեկտեղ քաշված ենք, պայուսակ նվիրելու առենը... Ուխտած եմ, Հայաստանեն եկող ամեն մի մարդու պիտի նվիրեմ ձեռքիս գործը...»:

Շա՜տ ու շատ են այսպիսի մարդիկ, որոնց ծանոթանում ենք գրքում: Ջերմ ու սրտագին խոսքեր է գտնում հեղինակը նաև «հյուրընկալների» համար, այն է՝ տեղական արաբ ժողովրդի ներկայացուցիչների և, առհասարակ, օտարազգիների, որոնք մարդասիրաբար ջանացել են թեթևացնել 1915-ի աղետից հետո Միջերկրականի ափերին ապավինած հայ վանգվածի վիճակը: Չենք կարող անտարբերությամբ կարդալ «Թռչնոց բույն» մանկատանը նվիրված տողերը: Դանիացի մի կին՝ Մարիա Ժակոբսոնը, դեռևս 1907-ին գալիս է Հայաստան և Խարբերդում որբանոց հիմնում: 1915-ից հետո նա վերստեղծում է այդ հաստատությունը Լիբանանի ծովափնյա «Թռչնոց բույն» փոքրիկ քաղաքում: Այնտեղ ներկայումս նրա քրոջ՝ Աննա Ժակոբսոնի խնամակալությամբ ապրում են մոտ 200 հայ որբեր, որոնք հանրակրթարանն ավարտելուց հետո ուղարկվում են վանական արհեստների: Իր հայերեն ձեռագիր նամակով Աննա Ժակոբսոնը որբանոց է հրավիրում բանաստեղծուհուն, ապա «անդորր, ախորժալուր հայերենով» ողջունում օրվա հյուրին, այս առթիվ նորից «լույսի, բարու և ազնվության կոչելով յուր «տղոցը և աղջիկներուն»: Մարիա Ժակոբսոնի՝ հենց այստեղ, որբանոցի բակում գտնվող համեստ շիրմաքարին է թողնում բանաստեղծուհին երեխաների իրեն նվիրած ծաղկեփունջը:

Եվ որքան էլ բարեգթորեն հյուրընկալվել և իրենց սեփական ճիգ ու ջանքի, անօրինակ աշխատասիրության, համառության և բացառիկ ճարտարության ու հնարագիտության շնորհիվ կարողացել են ապրուստ ստեղծել, Մերձավոր Արևելքի հայ աշխատավորներն այսօր էլ մնում են օտարության մեջ դեգերող, հայրենազուրկ ու հայրենակարոտ մի վանգված: Եվ այս իրողությունն իր բազում արտահայտություններն է գտնում գրքի էջերում ինչպես առարկայական նկարագրությունների, այնպես էլ հեղինակի խորհրդածությունների մեջ: Թե՛ մեկ և թե մյուս դեպքում նա իր ժողովրդի նվիրական իղձերի արտահայտիչն է: Գրքի ամենահուզիչ դրվագներից են Ջեբել Մուսացիների հայրենակցական միության անդամների հետ ունեցած հանդիպման առնչությամբ (էջ 143—146) և Անթիլիասում՝ Դեր-Զոր անապատից բերված ոսկորներն ամփոփող մատուռն այցելելու առթիվ (էջ 407—409, նաև 176) գրված տողերը: Սոսկ սուգի ու ողբի մոտիվներ չեն սրանք: «Օ՜, այդ աճյունները,—բացականչում է բանաստեղծուհին,—այս սպիտակ, բաց ու անթաղ ոսկորները... նրանք օծված են այն կմուռով, որը շաղախված է մեր արցունքի խեժից, մեր կենսունակության ավիշից, հայրենի ժողովրդի հանդեպ մեր անշիջանելի հավատի մոմից, նրանք պիտի մնան... պիտի մնան այնքան ժամանակ, մինչև որ ապրողների հետ վերադառնան հայրենիք»: Այո՛, տարագրյալ բազմության գալիքն է, որ մտահոգում, մտատանջում է մեր հեղինակին:

Հալեպում, հայ գրքի առաջին տպագրության 450-ամյակին նվիրված հանդեսին նա շատ տեղին վերհիշում և մեջ է բերում հայկական ամենամեծածավալ ձեռագրի՝ Մշո «Ճառընտիրի» լեգենդար պատմությունը, թե ինչպես բազում փորձություններից անցնելով, նրա երկու կեսերը տարբեր ճանապարհներով եկել, միացել են Երևանում՝ մեր Մատենադարանի հարկի տակ: «Հարազատներ, հայ ժողովուրդն էլ Մշո «Ճառընտիրի» նման աղետի օրերին բաժանվեց, երկու կես եղավ,— ասում է նա: — Մի կեսը հայրենի հողի վրա է հիմա, իսկ մյուս կեսը դեռ դեգերում է աշխարհի ճանապարհներին... բայց Մշո «Ճառընտիրը» վկա, կգա, պիտի գա այն օրը, երբ մեր ժողովուրդն էլ, տառապած, սրբացած և, այնուամենայնիվ, հաղթանակած իր Մատյանի պես, կմիանա մի հարկի տակ, հայրենի Հայաստանի հանգիստ ու ապահով երկնքի ներքո»...

Ահա սփյուռքահայության այն նվիրական իղձը, որ բաժանում է սովետահայ բանաստեղծուհին, որի համար պետք է մաքառել, որը պետք է մոտեցնել ամեն հնարավոր եղանակով: Դեր-Զորի նահատակների աճյունն ամփոփող մատուռից նա այցի է գնում ոսկերիչների արհեստակցական միությանը: Այստեղ խնդրում են հայտնել Հայաստանի իրենց արվեստակիցներին, որ ամբողջ օրն աշխատելուց հետո, արդեն հոգնած, գիշերները նստում, մայրենի լեզուն են սովորում: Քիչ հետո ֆուտբոլի գնդակ կարող Կարապետ Ավագյանի տանն է բանաստեղծուհին, «ծամածռված պատերով, ցածլիկ ու խոնավ մի հյուղակում»: Ուրի՛շ խորհուրդ է առնում, մի նոր, խոր իմաստ է ձեռք բերում տանտիրոջ մատաղահաս դստեր՝ «սպիտակ գոգնոցով, առատ մազերը պսակաձև ժապավինած սիրունիկ մի աղջնակի» արտասանությունը.

Ծովուն վրա նավակ մը կա,<br>Կարապի պես կերթա-կուգա.<br>Սիրուն նավակ, եկուր կիս առ,<br>Իմ հայրենի աշխարհս տար...

«Մեկի օր առաջ հայրենիք տանելու է, օր առաջ»,— այս թախանձագին կանչն է, որով տարբեր վայրերում դիմում են հայրենի պատգամաբերին սփյուռքահայ վանգվածի ընդերքում:

Անշուշտ, ամենքը չէ, որ տոչորվում են հայրենիքի կարոտով: Ահա, իրերի բերումով, բանաստեղծուհին այցի է գնացել Բեյրութի «Ֆենիսիա» հյուրանոցը, որն «աշխարհիս հոթելներու մեջ իր շքեղությամբ երրորդ տեղը կգրավե»: Հյուրանոցի տիրուհու երկու խոսքից մեկն սկսվում է «Ամերիկայի մեջ...» բառերով: Նրա

աշխարհը: Եվ այդ է, որ հմայք է հաղորդում այս գրվածքին: Իրոք, նրա լավագույն էջերը, որոնք կարդալիս երբեմն դժվար է լինում զսպել հրճվանքի, հպարտության կամ տխրության արցունքը, քնարական պեղումներն են, երբ բանաստեղծուհին ազատություն է տալիս իր հոգուն, բաժանելով ընթերցողի հետ իր նվիրական հույզերը, ինքը ևս ունկնդիր՝ իր հոգու ձայնին: Դրանում հավաստիանալու համար կարդացեք թեկուզ հեղինակի համառոտակի եկրահանգումը՝ ուրախ, զվարթ, սրախոս մի մարդու կերուխումի սեղանի շուրջը կրկնվող համառ թախանձանքի առիթով («Տարեք, տարեք մեզի...» էջ 183—184), կարդացեք խորհրդածությունները մայրանոցին տված այցի տպավորության տակ (էջ 173—175), նրա մտորումներն իր հորեղբոր կույր դասընկերոջը հանդիպելիս և Կահիրեի հայկական գերեզմանատանը՝ Սիրանույշի մահարձանի, Օտյանի, Արփիարյանի, Թեքեյանի, Ալպոյաճյանի գերեզմանների առջև (էջ 338—342), ապա՝ նրա հուզումնալից խոսքը, նվիրված «հայրենի տնակին», այն փոքրիկ, համեստ տընակին, որ երևում է Ծաղկաձորի իր աշխատասենյակից (էջ 417—419) կամ՝ սքանչելի վերհուշը, նվիրված Ծաղկաձորի պիոներական ճամբարին ու Ծաղկաձորին, իբրև «մանկաձորի», իբրև «մանկաշխարհի», որոնցով սկսվում են սփյուռքահայ կրթարաններին նվիրված նույնպես հուզաթաթավ էջերը (185—228):

Գրքին դեռևս անծանոթ ընթերցողը կարող է զարմանալ. ի՞նչ գործ ունեն Ծաղկաձորն ու պիոներական ճամբարը Մերձավոր Արևելքի սփյուռքահայ օջախներին նվիրված ուղեգրության էջերում: Այո՛, թեև նեղ իմաստով ճամփորդական տպավորությունների մի գիրք է սա, բայց ամեն մի գլուխը վերստին ու վերստին սկսվում է... Հայաստանում: Հեղինակն ամփոփում է արդեն անցած ու հեռացած ուղևորության տպավորությունները, գրի առնում դրանք, նստած Ծաղկաձորի մի սենյակում, Հայաստանի գրողների միության «ստեղծագործության տանը»: Եվ ամեն անգամ նոր նյութի անցնելիս, նա հայացք է նետում շուրջը, վերստին մտաբերում ու հաստատում իր համար (և ընթերցողի համար), թե ով է ինքը, որտեղ է գտնվում, ինչի՞ համար է գրում: Գրքի ինը գլուխներն սկսվում են նույնիսկ միևնույն, ընթերցողին արդեն սիրելի դարձած գողտրիկ պատկերով.

«Հիմա ամիսներ են անցել այդ օրից:

Հիմա սենյակիս լուսամուտից բացվում է հարազատ մի բնանկար՝ լեռներ են, բարդիներ, իսկ լուսամուտիս տակ, կանաչների մեջ կորած ուրախ ձորակում աղմկում է փոքրիկ, մտերիմ մի գետակ...»

Ծաղկաձորն է սա՝ ամենքին ծանոթ ու սիրելի:

Այսպիսով, այն, ինչ սկզբնապես եղել է, ըստ երևույթին, սոսկ ենթագիտակցորեն գտնված կոմպոզիցիոն մի հնար, որը կոչված էր «հավաքագրելու», կենտրոնացնելու իր՝ հեղինակի, ապա նաև ընթերցողի ուշադրությունը, վերջին հաշվով մեծապես օժանդակել է նաև, որպեսզի գիրքը կաղապարվի իբրև բովանդակության ու ձևի մի գեղեցիկ ներդաշնակություն: Իրոք որ երջանիկ մի ներդաշնակություն, որտեղ մեկնակետը միշտ հայրենիքն է, թեև գիրքը նվիրված է սփյուռքին, և որտեղ, ի դեպ, սփյուռքի իրականությունից մի շարք օգտավետ, նույնիսկ նեղգործնական բնույթի ցանկություններ և առաջարկներ են արվում: Այդ առաջարկներն, իրոք, այնքան գնահատելի են, որ չեն կարող ուշադրության չառնվել: Այսպես, օրինակ, խոսելով արաբ մտավորականության այն ներկայացուցիչների մասին, որոնց հատկապես հետաքրքրում է հայկական մշակույթը կամ թե, որոնք եռանդով օժանդակում են սփյուռքահայ մշակութային գործիչներին, բանաստեղծուհին ցանկալի է գտնում Հայաստան հրավիրել նրանց և հնարավորություն ընձեռել այստեղ մոտիկից ծանոթանալու մեր մշակույթի նվաճումներին: Դըժվար է չողջունել այդպիսի ցանկությունը: Ապա գրքի էջերում սփռված են կյանքից բխող այլ և այլ դիտողություններ, որոնք կարող են օգտակար լինել ներգաղթի գործն ավելի լավ կազմակերպելուն շահախնդիր մեր ընկերների համար:

Բանաստեղծուհու ուշադրությունից չի վրիպել և այն իրողությունը, որ երբեմն մայր հայրենիքին սատարելու տենչով վառված հասարակ մարդիկ, ձգտելով Հայաստան ուղարկել տարիների ընթացքում հավաքած կամ պատահմունքով իրենց ձեռքն անցած գրական-պատմական արժեքները (հազվագյուտ գրքեր, վկայաթղթեր, ձեռագրեր, արվեստի կերտվածքներ), դժվարանում են հոգալ փոխադրածախքը: Այդպիսի դեպքերում մեր համապատասխան օրգաններն, անշուշտ, պետք է կարողանան օգնության հասնել նրանց: Վերջապես, հեղինակը ընթերցողների, մանավանդ երիտասարդ սերնդի ուշադրությունն է հրավիրում նաև օտար լեզուները հիմնավորապես ուսանելու կարևորության վրա, ինչ որ միջազգային կուլտուրական կապերի զարգացման ներկա պայմաններում իրոք հրատապ անհրաժեշտություն է մեզ համար:

Բայց այս ամենը՝ ի միջի այլոց: Մենք խոսում էինք «Քարավանները դեռ քայլում են» գրքի մասին, իբրև արվեստով կերտված մի ստեղծագործության: Այդ արվեստը արտահայտվել է գունագեղ, ճոխ լեզվով: Գրքի հիմնական գաղափարը՝ հայ ժողովրդի, նրա աշխատավոր զանգվածների միասնության գաղափարը, որին ոգեշնչված գրիչ է վերցրել հեղինակը, իր մարմնացումն է գտել նաև նրա լեզվի մեջ: Ընդհանուր առմամբ հարուստ և ճկուն, թեկուզ տեղ-տեղ փոքր-ինչ «բարդբարդված», բայց և հաճախ պատկերավոր, հիմնականում մեր արևելահայ գրական լեզուն այս գրքում իր մեջ է առնում շատ ու շատ արևմտահայ բառեր ու արտահայտություններ, որոնք, մեծ մասամբ, հիանալի կերպով մերվում են նրա հետ: Կապուտիկյանի գրքում ո՛չ միայն տեղին ու հասկանալի, այլև դյուրընկալ են հնչում բազմաթիվ այնպիսի բառեր, ինչպես «մարզավայր» «դափնեկիր», «խնդուք», «վերացապաշտություն», «օդուղեկցուհի», «հարկաբաժին» (շենքի), «պաշտոնազգեստ» և այլն, որոնց գործածության առաջնությունը թերևս պատկանում է արևմտահայ գրագետներին: Կապուտիկյանը մեկն է մեր այն հեղինակներից, որոնց համար բնորոշ է լեզվի սուր և նուրբ զգացողությունը, որոնք ո՛չ միայն ամբողջ հոգով սիրում են մեր մայրենի լեզուն և ջանում ըստ ամենայնի տիրապետել նրա հարստությանը, այլև մշտական որոնումների մեջ են՝ իրենց երկերում ավելի բարձր արտահայտչության հասնելու համար: Այդ սերը դեպի մայրենի լեզուն, հպարտությունը նրանով, խորին պատկառանքը նրա առջև, որ պաշտամունքի է հասնում, այնքան վառ արտահայտված նրա «Խոսք իմ որդուն» հանրածանոթ բանաստեղծության մեջ, իր կնիքն է դրել նաև նրա առաջին արձակ ստեղծագործության վրա: Եվ այդ, իր հերթին, գալիս է ամբողջացնելու ձևի ու բովանդակության այն ներդաշնակությունը, որպիսին ներկայացնում է այս գիրքը:

Ունի՞ թերություններ այս գիրքը: Ունի, և գուցե այնքան էլ քիչ չեն դրանք: Նախ՝ թըվում է, կշահեր գիրքը, եթե հեղինակը կարողանար ավելի մեծ չափով խուսափել կրկնվող մոտիվներից: Ճիշտ է, շարադրման այն եղանակը (ընթանալ հաճախ «իրերի տրամաբանությամբ», ապավինել «հուշերի ասոցիացիային»), որ ընտրել և ընդհանուր առմամբ հաջող կերպով գործադրել է նա, պիտի դժվարացներ այդ որոշ չափով: Այս դեպքում տուժել է, մեր կարծիքով, մանավանդ եկրափակիչ գլուխը՝ նվիրված Եգիպտոսին ու եգիպտահայությանը: Իր բանաստեղծական շարադրանքի փոխարեն այս գլխում հեղինակն, ասես թե տեղ-տեղ որդեգրում է այնպիսի մի ոճ, որը, թվում է, ավելի հարմար կլիներ ի պաշտոնե ներգաղթի կազմակերպման գործնական հարցերով զբաղվող մարդկանց: Այստեղ նկարագրությունները ևս (օր. Քեոպսի բուրգերի) կարծեք թե չեն կրում այլևս հեղինակի կրքոտ անհատականության կնիքը, ինչպես ասենք, Բաալբեկի հնություններին նվիրված էջերը, և քիչ բան են ավելացնում պատմագիտական ու աշխարհագրական գրականությունից հանրածանոթ տվյալներին: Թերևս շահեր գիրքը, եթե այս գլուխը, առհասարակ, ձուլված լիներ նախընթաց բաժինների մեջ, ինչպես «եգիպտական» տպավորությունների մյուս ուշագրավ դրվագները (օր. Սիրանույշի մահարձանի առնչությամբ արվող խորհրդածությունները, լուսանկարչուհի Շաքե Ալպանին վերաբերող վերհուշը և այլն), որոնք իրենց տեղում շատ տպավորիչ են: Առհասարակ գրքի կանազան մասերում զգացվում է լակոնիզմի պակասը, որը «մշակման թերություն» պետք է համարել, քանի որ այլ դեպքերում հեղինակը կարողանում է դիպուկ լինել իր խոսքի մեջ:

Եվս մի դիտողություն: Որքան էլ որ մեզ ուրախացնում են հայրենի պատգամաբերը հանդիսացող մեր գրագիտուհու մեծարման բուռն արտահայտությունները և նա ինքը ևս ընկալում է դրանք գերազանցորեն իբրև հայրենի երկրի պատվին արվող անկեղծ ցույցեր, նրա գիրքը կշահեր թերևս, եթե նա կարողանար փոքր-ինչ ավելի սահմանափակել իրեն, երբ խնդիրը գալիս է սոսկ իր անձին վերաբերող խոսք ու զրույցին, իր հագուստ-կապուստին, վերջապես, իր կատարածի գնահատությանը, իր տրամադրությանը և այլն: Անշուշտ, մենք հասկանում ենք նաև, որ ամեն մի կնոջ համար, ով էլ լինի նա, շատ թանկ են համակրանքի այն ցույցերը, որոնք նյութական արտահայտություն են գտնում ճաշակավոր, նուրբ ու գեղեցիկ նվերների մեջ: Բայց և այնպես այդպիսի հոգեհաճ եղելությունների փոքր-ինչ ավելի ժլատ թվարկումն այնքան էլ չէր վնասի գրքի հաջողությանը և նրա ժողովրդականությանն ընթերցողների շրջանում:

Գրքում կան և լեզվական վրիպումներ, որոնցից կարելի էր խուսափել:

Ընդհանուր առմամբ, իր թերություններով հանդերձ, սա մի գիրք է, որը ո՛չ միայն հեղինակի, այլև մեր ամբողջ սովետահայ գրականության ակնառու նվաճումը կարող է համարվել: Իր հետևողական աշխարհըմբռնմամբ, հատկապես իր խոր մարդասիրությամբ, հայրենասիրության հետ օրգանապես միահյուսված իր ինտերնացիոնալիզմով, կյանքի բազմակողմանի իրատեսական պատկերումով, ինչպես նաև իր գեղեցիկ կառուցվածքով և հարուստ ու ճկուն լեզվով, սա մի երկ է, որ համահավասար հետաքրքրությամբ կկարդան և կսիրեն ինչպես սովետահայ, նույնպես և սփյուռքի ընթերցողները: Գոհունակությամբ նշելով այս, մենք ևս, սովետահայ գրողներս, կարող ենք շնորհավորել մեզ՝ «արձակի անցած» մեր բանաստեղծուհի ընկերոջ հաջողության համար:

ՌԱՖԱՅԵԼ ԱԹԱՅԱՆ

նարկություններում աշխատող բանվոր-բանվորուհիները նպաստեցին պետական առաջադրանքների հաջող կատարմանը և գերակատարմանը» (էջ 134)։ Իսկ ովքե՞ր էին. «...պետական առաջադրանքների հաջող կատարման և գերակատարման» ոգեշնչողները, ինչպիսի՞ դեր կատարեցին պարտիական և կոմերիտական թիկունքային կազմակերպությունները։ Այս մասին հոդվածագիրը շատ քիչ բան է ասում, թեև այդ պետք է լիներ նրա թեմայի ողն ու ծուծը, որովհետև, ըստ էության, նա խնդիր է դրել Հայաստանի կանանց օրինակով ցույց տալ սուբյեկտիվ գործոնների դերը արդյունաբերության և տրանսպորտի մեջ՝ հայրենական պատերազմի տարիներին։ Նա, ով ձեռք է զարկում այսպիսի թեմայի, պետք է լավ իմանա նաև կոնկրետ էկոնոմիկան, մասնավորապես աշխատանքի արտադրողականության բարձրացման ուղիները, որպեսզի գիտականորեն պատասխանի ինչպե՞ս հարցին, մինչդեռ հոդվածագիրը տարրական գիտելիքներ հանդես չի բերում այդ խնդրում։ Այսպես, նա գրում է. «...բազմադազգահայինների շարժումը խտացրեց աշխատանքային օրը» (էջ 133), «...էլեկտրասարքավորումների ճիշտ օգտագործման շնորհիվ... գործարանը չունեցավ պատահար և աշխատուժի կորուստ» և այլն (էջ 134)։ Ընթերցողների զարմանքը կարող է շարժել հոդվածագրի այն ապշեցուցիչ «հայտնագործությունը», որ «էլեկտրաէներգիայով ջերմացնող վառարանը տեխնիկական մի նորություն էր Սովետական Միության մեջ, որի հեղինակներն էին Մարիա Բաբաջանյանը և Մինասյանը» (էջ 135)։

«Բանվոր դասակարգի դերը Հայաստանի գյուղատնտեսության կոլեկտիվացման նախապատրաստման գործում» հոդվածի հեղինակ Ս. Ալավերդյանին չի հաջողվել բացահայտել քննարկվող հարցի էությունը, որովհետև Հայաստանի բանվոր դասակարգի մասին նա չունի ճիշտ պատկերացում։ Այսպես, հեղինակի կարծիքով «...տարիներ շարունակ մեր ռեսպուբլիկայում գրեթե չկային գործող արդյունաբերական ձեռնարկություններ՝ կենտրոնացված բանվորական խոշոր կոլեկտիվներ» (№ 2, էջ 107), այստեղից էլ բխում է հեղինակի սխալ կողմնորոշումը։ Նա բանվոր դասակարգի դերը Հայաստանի գյուղատնտեսության կոլեկտիվացման նախապատրաստման գործում փնտրում է հողաշինարարական աշխատանքների կարգավորման, արոտավայրերի վերաբաժանման, վերաբնակեցման, այդ շրջանում սովետական պետության կողմից աշխատավոր գյուղացիությանը ցույց տրված տնտեսական և ֆինանսական օգնության մի շարք այլ ձևերի մեջ։ Մինչդեռ հոդվածագրի խնդիրն էր բացահայտել կոլեկտիվացման նախապատրաստման շրջանում բանվոր դասակարգի՝ որպես առաջամարտիկի, դերը։ Ինչ վերաբերում է գյուղացու տների կազմակերպմանը և շեֆական օգնությանը, ապա դրանք լիովին չեն բացահայտում կոլեկտիվացման նախապատրաստման շրջանում գյուղի սոցիալիստական վերակառուցման գործում բանվոր դասակարգի կատարած մեծ դերը։

Քննարկվող հանդեսի երրորդ համարում Ստ. Ստեփանյանը հանդես է եկել «Աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության մի քանի հարցերը Հայաստանի պարտիական կազմակերպությունների գործունեության մեջ» հոդվածով։ Ի՞նչ խոսք, թեման և՛ կարևոր է, և՛ այժմեական։ Սակայն հոդվածագիրը սահմանափակվել է Հայաստանի կոմունիստական պարտիայի Կենտկոմի, քաղկոմների, շրջկոմների և սկզբնական պարտիական կազմակերպությունների՝ աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության հարցերին վերաբերող որոշումների վերաշարադրանքով։ Հոդվածագրի տեսադաշտից դուրս են մնացել աշխատավորության ինտերնացիոնալ դաստիարակության պրակտիկայում արդարացրած ձևերի ու մեթոդների մասսայականացման ու տարածման, պարտիական որոշումների կենսագործման խնդիրները։ Բնորոշ է, որ այդ հայեցողական բնույթի հոդվածը զուրկ է վերլուծությունից։

1964 թվականի Բանբերի էջերում հրապարակված են մի շարք հետաքրքրական ու բովանդակալից հոդվածներ՝ նվիրված հայ ժողովրդի պատմության նախասովետական շրջանի համեմատաբար քիչ ուսումնասիրված հարցերի լուսաբանմանը։ Այսպես, պատմական գիտությունների թեկնածու Ա. Գրիգորյանցի հոդվածում (№ 2, էջ 132—149) բազմակողմանի վերլուծված է ռևոլյուցիայի վերելքի տարիներին հայ գյուղացու սոցիալ-տնտեսական վիճակը, հայ գյուղի քայքայումն ու շերտավորումը։

Ըստ ամենայնի ուսումնասիրելով XX դարի սկզբի հայ ժողովրդի պատմությունը, Խ. Բարսեղյանը իր «Մի էջ հայ ժողովրդի ազգային-ազատագրական պայքարի պատմությունից» հոդվածում արխիվային փաստաթղթերի հիման վրա բացահայտել է ցարական կառավարության կողմից կիրառվող հալածողական քաղաքականությունն Անդրկովկասի ժողովուրդների և, հատկապես, հայ ժողովրդի նկատմամբ։ Հոդվածագիրը ցույց է տալիս հայ ժողովրդի հակացարական ռևոլյուցիոն այն շարժումը, որը հարուցեց 1903 թ. հունիսի 12-ի հայկական եկեղեցական հողերը և գույքը բռնագրավելու օրենքը և լենինյան-իսկրայականների կողմից այդ հուզումների նկատմամբ ցուցաբերած վերաբերմունքը։ Հայաստանում գործած նարոդնիկական խմբակներից մեկի՝ Երևանի «Հայասեր-ազգասեր»-ի գործունեությանն է նվիրված Ռ. Հովհաննիսյանի «Մի էջ հայ ազատագրական շարժումների պատմությունից» հաղորդումը, որը տպագրվել է Բանբերի № 2-ում (էջ 89—94)։

Քննարկվող հանդեսի համարներում տպագրվել են Ա. Գալստյանի «Աշտիշատի 354 թ. ժողովի ընդունած օրենքները» (№ 1, էջ 83—96) և Ռ. Աբրահամյանի «Հայկական աղբյուրներն ու փաստաթղթերը Հնդկաստանի ու հայ-հնդկական հարաբերությունների մասին» (№ 3, էջ 149—166) պատմագիտական արժեք ներկայացնող հոդվածները։ Սակայն դրանք թե՛ իրենց բնույթով և թե սկզբնաղբյուրներով չեն համապատասխանում Բանբեր հանդեսի պրոֆիլին։ Այս առումով, անհարկի է և շռայլություն Ա. Հարությունյանի «Շահերի ներհակություններն ու զուգադիպումները Անտանտի ներսում (1917—1918 թթ.)» մոտ երեք մամուլանոց հոդվածի հրապարակումը (№ 1, էջ 122—167), որը ո՛չ միայն գրված չէ մեզ անհայտ արխիվային փաստաթղթերի հիման վրա, այլև չի շոշափում հայ ժողովրդի պատմությունը։ Ի դեպ, հոդվածի վերնագիրը չի համապատասխանում բովանդակությանը, Անտանտայի և նրա զինված ուժերի միացյալ հրամանատարության ստեղծման պրոցեսը քննության է առնըվում սոցիալ-տնտեսական և քաղաքական գործոններից անջատ, որը հակասում է մարքսիստական պատմագրության պահանջներին։

Հանդեսի էջերում տպագրվում են նաև թեմատիկ և ֆոնդային տեսություններ, որոնք օգնում և որոշակի ուղղություն են տալիս ուսումնասիրողին հետաքրքրող թեմայի վերաբերյալ համապատասխան նյութերի հայտնաբերման գործում։ Սակայն այդ տեսությունները պետք է տարբերվեն միմյանցից։ Այսպես, եթե ֆոնդային տեսության խնդիրը պետք է լինի ծանոթացնել տվյալ ֆոնդում պահվող արխիվային նյութերի բովանդակությանը, ապա թեմատիկ տեսությունը մատնացույց պետք է անի այս կամ այն թեմայի վերաբերյալ արխիվում եղած նյութերի տեղը։ Հետևաբար, Ա. Ալեքսանյանի և Մ. Թումանյանի կազմած բովանդակալից ու հետաքրքրական տեսությունը՝ Գ. Սունդուկյանի անվան թատրոնի պատմության վերաբերյալ (№ 2, էջ 149—156) պետք է տպագրվեր որպես թեմատիկ տեսություն, իսկ Մ. Սողոմոնյանի հաղորդումը՝ Անդրֆեդերացիայի կազմակերպման մասին՝ որպես ֆոնդային տեսություն (№ 1, էջ 168—176)։ Լավ տպավորություն է թողնում Օ. Բալիկյանի կազմած ֆոնդային տեսությունը՝ «Կովկասի փոխարքայի գրասենյակը» (№ 3, էջ 186—211)։ Ուսումնասիրելով Կովկասի փոխարքայի գրասենյակի փաստաթղթերը, հեղինակը կարողացել է տարբերել հիմնականը երկրորդականից, նյութերը դասակարգել ո՛չ միայն ըստ բովանդակության, այլև ժամանակագրական կարգով և տալ այդ ֆոնդի ամբողջական պատկերը։

Բանբեր Հայաստանի արխիվների հանդեսը տպագրում է նաև գրախոսություններ՝ հանրապետության արխիվների նյութերի հիման վրա գրված աշխատությունների վերաբերյալ, ցույց տալու համար, թե հեղինակներն ինչպիսի բարեխղճությամբ են օգտագործել փաստաթղթերը և սկզբնաղբյուրները։ Նման գրախոսականներն, ինչ խոսք, կնպաստեն գիտաշխատողների պատասխանատվության բարձրացմանը։

Սակայն, երբ նման պահանջներով մոտենում ենք 1964 թ. հանդեսի համարներում տպագրված երեք գրախոսականներին, նկատում ենք, որ չնայած խմբագրությունը 1964 թվականին գրախոսել է այնպիսի գրքեր[1], որոնք գրված են արխիվային նյութերի հիման վրա, սակայն դրանցում ոչ մի խոսք չի ասվում գրախոսվող աշխատություններում օգտագործված փաստաթղթերում տեղ գտած անճշտությունների կամ աղբյուրների սխալ հիշատակման (ֆոնդերի, ցուցակների, գործերի և թերթերի համարների) ու մեկնաբանման մասին։ Այս տեսակետից բացառություն է Ա. Պողոսյանի՝ «Սոցիալ-տնտեսական հարաբերությունները Կարսի մարզում (1878—1920 թթ.)» աշխատության մասին Ա. Դավթյանի և Գ. Սարգսյանի գրախոսությունը։

Հանդեսի անցած տարվա համարների ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ խմբագրությունը դեռևս պատշաճ լրջությամբ չի վերաբերվում նյութերի գրական մշակմանը։ Դժվար է գտնել մի հոդված, որը զերծ լինի լեզվական և ոճական արտառոց արատներից։ Բերենք մի քանի օրինակ։ Հանդեսի 1964 թվականի առաջին համարի առաջնորդողում հանդիպում ենք այսպիսի դարձվածքների՝ «Պարտիայի պատմական XXII համագումարի որոշումները և ծրագիրը կենսագործելու համար պահանջվում է ...արխիվային փաստաթղթերը ժողովրդական տնտեսության կարիքների համար ժամանակին ու հմտորեն օգտագործելու կողմնորոշում» (էջ 3), «...նրանց ուշադրություն չպետք է վրիպի խնդրի արագ լուծումը, կարևոր փաստաթուղթը երկրորդականից ջոկելու կարողությունը...» (էջ 5), «Հարցի դրական լուծումը կապահովի... նրանց (նյութերի) մշակման ուղիները, օգտագործման ձևերը» (էջ 5), «Արխիվների դոկու-

[1] Ա. Ն. Մնացականյան, «Վ. Ի. Լենինը և հայ ժողովրդի ազատագրական պայքարը», գրախոսող Ա. Հայրապետյան (Բանբեր № 1, 1964 թ. էջ 178—182). Հ. Ն. Կարապետյան, «Մեծ պայքարի մարդիկ», գրախոսող Ա. Հովսեփյան (Բանբեր № 2, էջ 162—164).

— Սովոր է, կգրի,— ասացին,— մեզ նույնպես շատ է գրել։ Զբաղվել ենք նրա հարցով, շրջկենտրոնում մի քանի տեղ աշխատանք ենք առաջարկել, բայց խուսափել է…

***

Եվ ահա մենք նստած ենք դեմ-դիմաց։ Գառնիկ Մարտիրոսյանը բավականին ամրակազմ, ջլապինդ երիտասարդ է։ Հիրավի, երևում է, որ կոփվել է ֆիզիկական աշխատանքում և դեռ էլի կարող է աշխատել։ Նա ժպտում է, ծխում, նորից ժպտում։

— Շնորհակալություն, որ ինձնով հետաքրքրվել եք, հասել մեր սարերը, մեր անհրապույր գյուղը…

Օ՜, այդ սարերը… վեռվեռուն ալիքների պես բարձրանում և իջնում են դրանք ու հայացքդ իրենց վրա գամած՝ տանում հորիզոնից հորիզոն, շլացնում, գերում, ապա ձուլում կապուտաչյա Սևանի պաղպաջուն ալյակներին։ Գարնանը զմրուխտ են հագնում այդ սարերը. այնտեղ ծաղկում է ալպիական մանուշակը, կակաչները վառվռուն գորգեր են սփռում չորս դին, ու մինչև խոր աշուն բուրում են ծաղիկները, կարկաչում զուլալ աղբյուրները…

Իսկ անհրապույր գյո՞ւղը… գրասենյակի պատուհաններից այն կողմ փռվել է իմ դեմ՝ սարալանջի շեղ մի տափարակի վրա, իր նորաշեն տներով, փոքրիկ ձորակով, ուր կենարար առվակն է հոսում, ձմռան ցրտից նիրհող ծառերով, ծխնելույզներից պալան-պալան երկինք հառնող ծխով, որից թվում է, թարմ լավաշի բույրն է սփռվում շրջապատի վրա։ Ինչպիսի՞ն կլինի այն, երբ բնությունն արթնանա։ Հավանաբար զմրուխտաշող, աղմկաշատ, կայտառ մանուկների անխառն հրճվանքով, գործի շտապող մարդկանց գոչ ու կանչով լի։

Ու փորձում եմ կռահել. այս ամենից բաժին հասնո՞ւմ է Գառնիկին և ինչպե՞ս է, որ սովխոզի ղեկավարները նրան զրկել են կյանքի չափ թանկ այդ բերկրանքից։ Մի՞թե մարդուն կարելի է զրկել ազնիվ աշխատանքից, ընդհանուր գործին մասնակցելու հաճույքից, իր գյուղը շենացնելու մարդկային մեծ ու քաղցր հոգսից։

***

Շատ է փոխվել Ղարանլուղը վերջին երկու-երեք տարվա ընթացքում։ Հետամնաց, ոչ եկամտաբեր կոլտնտեսության բազայի վրա ստեղծված սովխոզը դարձել է շրջանի առաջավոր տնտեսություններից մեկը։ Գյուղատնտեսության հիմնական ճյուղերը դաշտավարությունն ու անասնապահությունն են։ Սովխոզը մշակում է հացահատիկ, ծխախոտ, կարտոֆիլ, նրա խաշները արածում են ալպյան արոտներում։ Տնտեսությունը հազարից ավելի խոշոր ու մոտ 4 հազար գլուխ մանր եղջերավոր անասուն ունի։ Ավելացել են և բանվորների եկամուտները, մի բան, որի շնորհիվ միայն անցյալ տարի 80 ընտանիք բնակելի նոր տներ են կառուցել։ Հենց միայն այս փաստը վկայում է, որ աշխատանքով ստացած եկամուտները հիմք են տալիս նրանց կյանքը դարձնելու բարեկեցիկ ու կուլտուրական։

Հարցուփորձից և հաշվապահական թղթերից պարզվում է, որ սովխոզի եկամուտներից քիչ բաժին չի հասել և Գառնիկ Մարտիրոսյանին։ Դիրեկտորի՝ 1964 թվականի փետրվարի 1-ի № 36 հրամանով նա նշանակվել է շինանյութերի պահակ, բայց, ինչպես վկայում են գյուղում, ամենևին էլ պահակություն չի արել, քանի որ դրա կարիքը չի զգացվել։ Ըստ երևույթին հենց այդ պատճառով էլ պահակի հաստիքը կրճատվել է և նույն թվականի սեպտեմբերի 20-ի № 221 հրամանով Մարտիրոսյանն ազատվել է աշխատանքից։ Բացի այդ, նա հուլիս, օգոստոս և սեպտեմբեր ամիսներին մասնակցել է դաշտային աշխատանքներին։ Ընդհանուր առմամբ փետրվարի 1-ից մինչև սեպտեմբեր ստացել է 429 ռուբլի։

— Դուք հրամանով աշխատանքի մեջ եք եղել և, չաշխատելով հանդերձ, աշխատավարձ եք ստացել։ Ինչո՞ւ եք գրել, թե երեք տարի է չեք աշխատում,— զարմանում եմ ես։

— Դա ի՞նչ աշխատանք է որ։

— Այնուամենայնիվ՝ աշխատել եք։

— Այո՛, շատ բողոքեցի, լաց եղա, ստիպված տվեցին։

— Մի՞թե դա լավ վերաբերմունք չեք համարում։

— Ո՛չ, ես հո մուրացկան չեմ, որ ինձ ձրի փող տան…

Մարտիրոսյանը խոսում է անկաշկանդ, կարծես նախապես գիտենալով, թե ինչ հարց են տալու։ Առհասարակ պետք է ասել, որ նա կարդացել է, գիտե մեր կլասիկներին ու սովետահայ գրողներին։ Եվ երբ հարկ է լինում, նա կարողանում է մարդկային արժանապատվության մասին գեղեցիկ և ճշմարտացի խոսքեր գտնել։ Բայց երբ համադրում ես խոսքն ու վարքագիծը, զգում ես, որ այդ բոլորը սին բառեր են, սերտած դաս, չեն բխում մարդու էությունից։

— Ձեր ընտանիքում ոչ մեկը չի աշխատում, ինչո՞վ եք ապրում։

— Դե, ապրում ենք էլի, մի կերպ։

— Բայց ինչո՞վ, ի՞նչ միջոցներով։

— Տնամերձ ունեմ, կարտոֆիլը ծախեցի, ալյուր առա, մի քիչ էլ հոնորար եմ ստանում



թերթերից՝ ծխախոտի փող է դուրս գալիս։

— Գրո՞ւմ եք։

— Շա՛տ։ Էնքան բանաստեղծություններ ունեմ տպագրված։ Է՛լ շրջանային թերթում, է՛լ «Ավանգարդ»-ում, է՛լ…

— Իսկ դիրեկտորը չի՞ խանգարում տպագրելուն։

— Ինչպե՞ս կարող է խանգարել…

— Հապա ինչո՞ւ եք գրել, թե դիրեկտորը խանգարում է։

— Այո՛, աշխատանք չի տալիս։

— Աշխատանքն ի՞նչ կապ ունի բանաստեղծությունները տպագրելու հետ։

— Ո՞նց թե, բա որ յուղ չուտեմ, ո՞նց գրեմ։

— Իսկ ինչո՞ւ չեք ուտում։

— Աշխատանք ունե՞մ որ…

— Ինչո՞ւ չունեք։

— Սովխոզի դիրեկտորը աշխատանք չի տալիս։

— Բայց չէ որ շրջգործկոմի նախագահն անձամբ ձեզ երեք տեղ աշխատանք է առաջարկել, ինչո՞ւ ոչ մեկը չեք ընտրել։

Գառնիկն օրորվում է տեղում, ժպտում արհամարհանքով։ Ծխախոտի ծուխը մի անգամ ներս քաշելով, բողոքում…

— Ծխախոտի չորանոցում աչքե՞րս քոռացնեի…

— Իսկ հաշվետարի՞ աշխատանքից ինչու հրաժարվեցիք։

— Աշխատավարձը ցածր էր։

— Ավելի լավ չէ՞ աշխատել ցածր վարձով, քան ամենևին չաշխատել։

Լռում է, դժգոհությամբ գլուխն օրորում։ Երևում է, բարկանում է մտքում՝ ինչպե՞ս չեն հասկանում իրեն։

— Դա ի՞նչ աշխատանք է որ։

— Բայց չէ՞ որ ձեր հարևան Վոլոդյան այդ նույն աշխատանքն է ստանձնել և շատ գոհ է։

— Ամեն մարդ իր մտածելակերպն ունի։ Նա Վոլոդյան է, ես Գառնիկ Մարտիրոսյանը։

— Լա՛վ, ընկեր Մարտիրոսյան, ի՞նչ աշխատանք եք ուզում։

— Դե, ի՞նչ ասեմ մի աշխատանք, էլի։

— Ահա սովխոզի հաստիքների ցուցակը. դիրեկտոր՝ մեկ, տնտեսագետ՝ մեկ, գլխավոր գյուղատնտես, ինժեներ-մեխանիկ, գլխավոր զոոտեխնիկ, ևս մեկ գյուղատնտես ու զոոտեխնիկ, որոնք բոլորն էլ պետք է համապատասխան բարձրագույն կրթություն ունենան։

— Դա առանց ասելու էլ գիտեմ։

— Շարունակենք։ Բրիգադավարներ տասը հոգի, մեկ գլխավոր հաշվապահ, երկու պահեստապետ…

— Բրիգադավար եմ ուզում դառնալ։

Կողբից—Պարտիական ժողովում առաջադրեցին, ժողովը մերժեց…

— Թեկուզ պահեստապետ…

Հիմա, երբ գրում եմ այս տողերը, հիշում եմ նրա լարված, արդեն անժպիտ դեմքը։ Նա ծխում էր և չար հայացքներ նետում իրեն շրջապատողներին։ Մինչդեռ այդ մարդիկ որքա՜ն բարյացակամ էին նրա նկատմամբ, ինչպե՜ս էին խղճում նրան։ Այո՛, դառն է ասել, դառն է իրողությունը, բայց նրան խղճում էին։ Ահա թե ինչ աստիճանի էր հասել սովետական բանակի նախկին զինվորը, նախկին թունելագործը, նախկին ալյումինագործը, նախկին կոմբայնավարը, ՀամԼԿԵՄ Կենտկոմի և Հայկական ՍՍՌ Գերագույն սովետի պատվոգրերով պարգևատրված բանվորը, որի մկաններն այսօր էլ ամուր են, և որի բազուկը կարող է և՛ կոմբայնի ղեկ բռնել, և՛ գերանդի հեսանել։ Որտե՞ղ մնաց փառաբանված բանվորի քո փառքը, Գառնիկ Մարտիրոսյան։ Ո՞վ գիտե, դեռ էլի ի՜նչ փառք ու պատվի արժանացած կլինեիր դու, եթե շարունակեիր քո ուղին։ Ու հիմա չար ու ողորմելի, նստել ես ընկերներիդ դեմ և ասում ես.

— Խղճացե՜ք ինձ, աշխատանք տվեք։

Դու բողոքում ես, որ չաշխատած ամիսների համար քեզ վճարել են, դու արժանապատվության մասին վերամբարձ խոսքեր ես ասում, դու ողորմություն չես ուզում խնդրել, բայց երբ քեզ ասում են, որ սովխոզում ղեկավար աշխատանք չկա, երբ առաջարկում են աշխատել դաշտավարության կամ անասնապահության բնագավառում, դու կուրծք ես ծեծում, թե հիվանդ ես։ Մինչդեռ բժշկական բազմաթիվ զննումներից պարզվել է, որ առողջ ես և ֆիզիկապես ուժեղ։

Ահա քո նամակը դրված է իմ սեղանին, և ես կարդում եմ. «Իմ երիտասարդ հոգին դեռ վաղ մանկուց փայփայել է մի քնքուշ երազանք, բանաստեղծություններ գրելը և դա որոշ չափով հաջողվել է ինձ»։ Մինչև այսօր քեզ ոչ ոք չի արգելել իրականացնել այդ քնքուշ երազանքը, խմբագրություններն ընդառաջել են և տպագրել այն, ինչ արժանի է եղել տպագրության։ Բայց դու դարձյալ բողոքում ես։ «… Բայց ոչ մի օգնության ձեռք մեկնող չկա։ Ընդհակառակը, նրանք ոտնահարում են իմ իրավունքներն ու արժանապատվությունս, բաժան-բաժան մասնատում ու քամուն են տալիս երազանքներս ու հույզերս։ Փափագում եմ մի փոքրիկ սեփական գիրք ունենալ հիշատակի համար, բայց ցավոք սրտի այդ հույսը կապված է սովխոզի դիրեկտորի…» և այլն։ Սովխոզի դիրեկտորը ոչ տպարաններ ունի, ոչ էլ կարող է պաշտոնական գրությամբ դիմել «Հայաստան» հրատարակչությանը՝ սովխոզի բանաստեղծի գիրքը տպագրե-

լու համար։ Ո՞վ է խանգարում քեզ՝ գիրք ունենալ։ Վերջերս հայ գրականության անդաստանն են եկել շատ շնորհալի գրողներ, որոնք տարբեր մասնագիտություններ ունեն։ Ոմանք հասարակ աշխատանքի մարդիկ են, ոմանք՝ ավելի բարձր։ Նրանք կյանք չեն մտել բանաստեղծի, գրողի կոչում նվաճելու համար, չեն երազել «սեփական գիրք ունենալ հիշատակի համար»։ Նրանց կոչումն այլ է եղել, սակայն կյանքի, մարդկանց խոսք ասելու ցանկությունը այդ շնորհալի երիտասարդներին տվել է և երկրորդ կոչումը։

Ճշմարտացի խոսքը բարեկամական մաղթանք է։ Ուստի մի քանի խոսք այն արձակ բանաստեղծությունների մասին, որոնք ես կարդացի ամենայն ուշադրությամբ։

Բանաստեղծությունը հորդում է մարդու սրտից, նրա էությունից, նրա ապրումներից։ Երբ զգացումը ապրված չէ, կեղծ է, երբ բանաստեղծի խոսքը չի բխում նրա կյանքից ու ժամանակից, չի ընդհանրացնում անհատի ու հասարակության, անհատի ու շրջապատի շահերը, խոհերը, ձգտումները, ապա դառնում է վերացական, չի հուզում, չի առինքնում, չի համոզում։ Բոլոր իսկական գրողներն իրենց դարաշրջանի ու ժամանակի մունետիկներն ու փողհարներն են եղել, դրոշակակիրներ են եղել աշխատավոր մարդկանց շահերն ու պայքարի իմաստը արտահայտելու և մասսաներին մարտի տանելու համար։ Նրանք արտահայտել են իրենց ժամանակի շունչը, ձուլվել իրենց դարին։ Այսպես էր մտածում մեծ բանաստեղծ Չարենցը։

Սահուն գրել, քիչ տառասխալներ անել և բառարանից ու գրքերից սերտած բառերով տողեր սարքել՝ դեռ չի նշանակում գրող լինել։

Ահա ես ցիտում եմ քո արձակ բանաստեղծություններից մեկը.

«Ես նախանձում եմ այս կամուրջը սարքողին, ոչ թե նրա վրայով անցնողին։ Ես նախանձում եմ այս հոյակապ վարդակերտ շենքը կառուցողին, ոչ թե մեջը ապրողին։ Ես նախանձում եմ առհասարակ ամեն մի բարիք ստեղծողին, ոչ թե սպառողին։ Նախանձում եմ նույնիսկ այս խնձորի ծառը տնկողին։ Այս գեղանի խնձորենուն, որն այս մեր հինավուրց ճոխ այգու մեջ, սաղարթախիտ ճյուղերով պերճ կռացել է բերքի ներքո ու նազում է քաղցր երգով։ Արդյոք ո՞վ է տնկել նրան, սնուցել, աճեցրել ու ավանդել սերունդներին։ Ամեն անգամ այս ծառը տեսնելիս, ես փառք եմ տալիս նրա տնկողին, այն հողի անխոնջ մշակին։ Փառք եմ տալիս ու իմ սիրտը նորից լցվում է մի բարի, բարի նախանձով այն բոլոր մարդկանց հանդեպ, որոնք հայրենիքից մի բան առած կամ չառած կրկնակին են վերադարձնում»։



Հիրավի, դու կարողացար տեսնել քո բազմահազար հասակակիցների աշխատանքը, մարդիկ, որոնք կառուցում են, շենացնում մեր երկիրը, այգիներ տնկում նույնիսկ մերկ սարալանջերին։ Սակայն ինչո՞ւ «բարի» նախանձով լցվելու փոխարեն քո սիրտը քո հանդեպ չի լցվում չարությամբ, ինչո՞ւ դու ինքդ քեզ չես կարողանում դատափետել այդ աշխարհաշեն գործերին չմասնակցելու և սառն աչքով դիտորդ դառնալուդ համար։ Հիշո՞ւմ ես, քեզ հարցրին նույնիսկ.

— Այգի ունե՞ս։

— Ի՞նչ այգի, իմ տնամերձը քարոտ է, ծառ չի բռնի։

Ո՛չ, դու ճիշտ չասացիր։ Քո բոլոր հարևաններն այգի ունեն, ձեր սովխոզը շուտով այգեգործական կդառնա, մինչդեռ դու կարող ես փառաբանել անծանոթ այգեպանին, իսկ ինքդ նույնիսկ քո սեփական դռանը ոչ մի ծառ չունենալ։ Ո՛չ, ընկեր Մարտիրոսյան, այն մարդը, ով չի զգում աշխատանքի հմայքը, ով չի քրտնում այդ աշխատանքի ծանրությունից, աշխատանքը փառաբանելու իրավունք չունի։

Մի այլ մանրապատումի մեջ դու ասում ես. «Ու թե գարուն կա իմ սրտում պահված, պահված է ոչ քեզ համար, այլ նրա՝ ով իմ տունը զարդարել է գարնան ծաղիկներով, ով իմ տունը լցրել է մանկանց զնգուն կարկաչով, ով իմ տունը օծել է առաքինության լույսով»։

Գեղեցիկ խոսքեր են, ճիշտ է։ Բայց ի՞նչ ես արել դու այն մարդու համար, ով քո տունը զարդարել է գարնան ծաղիկներով, և նրանց համար, որոնց զնգուն կարկաչը լցրել է քո հնամենի, կիսամութ խրճիթը։

Եվ, վերջապես. «Դու ննջում ես այնպես խաղաղ, որ ես կանգնած սնարիդ մոտ, հիացմունքով եմ ունկնդրում քո քաղցրիկ շնչառության ամեն մի ելևէջին... Իմ սիրուն մանկիկ, իմ հոգու մասնիկ, դու կրկօրինակումն իմ ողջ էության...»։

Մենք չէինք ցանկանա, որ քո սիրուն մանկիկը մեծանար և իսկապես դառնար քո «կրկնօրինակումը»։ Հավատացած ենք, որ նրան ավելի լավ ապագա է սպասում։ Որ մեծանալով, նա կշենացնի հայրական օջախը և ոչ թե ձեռքերը ծալած կնստի կամ պարապ օրերը մի բանով լցնելու համար բանաստեղծություններ կգրի, սպասելով, մինչև որ սովխոզում իրեն մի կարգին պաշտոն տան։

Եվ այսպես, հարգելի ընկեր Մարտիրոսյան, ավարտենք գյուղում սկսված մեր զրույցը։

Ցավով ու ափսոսանքով կարելի է հիշել ձեր հրաշալի անցյալը և հիասթափություն ապրել ներկայի համար։ Տարիներ առաջ դու կանգնած էիր լուսավոր մի ճանապարհի վրա և ինքդ էլ չես կարող ժխտել, որ աշխատանքի բերկրանքն էր ողողում ամբողջ էությունդ, որ հպարտ էիր քեզանով, որ այդ հպարտությունը կիսում էին ընկերներդ։ Քո լավ աշխատանքը տեսել են, գնահատել ըստ արժանվույն։ Սակայն բանաստեղծ դառնալու մարմաջը խոտորել է քո ուղիղ ու լուսավոր ճանապարհը։ Քո կարդացած գրքերից դու քիչ բան ես սովորել երևի։ Դու մոռացել ես, որ իսկական բանաստեղծությունը գրվում է քրտնաթոր աշխատանքում և քրտնաթոր աշխատանքով։ Մինչդեռ դու ո՛չ առաջինն ունես, ոչ էլ երկրորդը։

Ոչ ոք չի արդարացնում և քեզ շրջապատողներին։ Ճիշտ է, այն օրը, երբ մենք զրուցում էինք, շատերը կարեկցանքով, բարությամբ, ափսոսանքով էին նայում քեզ։ Սակայն այդ ամենը քիչ է մարդուն վեհացնելու, նրան բարձրացնելու համար։ Չի կարելի արդարացնել ո՛չ սկզբնական պարտիական կազմակերպության պասսիվ դիրքը, ո՛չ էլ սովխոզի դիրեկցիայի երբեմն անբարյացակամ, երբեմն բարյացակամ հանդուրժողականությունը։ Չի կարելի շնորհակալ լինել շրջանային սովետի գործադիր կոմիտեից և ՀԿՊ Մարտունու շրջանային կոմիտեից, որոնք սահմանափակվել են միայն աշխատանքի մի քանի տեղ առաջարկելով, բայց չեն փորձել խորանալ մարդու էության մեջ, չեն փորձել հասկանալ, թե մարդն ինչ խոհեր ու երազանքներ ունի, չեն փորձել նրան Պառնասից իջեցնել Ղարանլուղ և ցույց տալ, որ երջանկությունը պետք է որոնել ոչ թե եկամտաբեր պաշտոնում կամ բանաստեղծության երկնային ոլորտներում, այլ այն հողի վրա, որը դեռևս քիչ բերք է տալիս, բայց պետք է դառնա արգասաբեր և հուռթի։

Դժվար է հաշտվել այս ամենի հետ, բայց այսպես է եղել։ Եվ եթե մեր կյանքում դեռևս հանդիպում են մարդիկ, որոնք չեն կարողանում գտնել իրենց իսկական ճանապարհը, ապա դա միայն Մարտիրոսյանների մեղքը չէ։ Մարդկային ճակատագրերը տարբեր են լինում։ Ոմանք նրա անողոք հարվածների տակ կքում են թուլամորթորեն, ոմանք խիզախորեն ճանապարհ են հարթում իրենց և ուրիշների համար։ Եվ միշտ հաղթանակում են նրանք, ովքեր չեն վախենում կյանքի փոթորիկներից, ովքեր ունեն մաքուր խիղճ և պայծառ երազանքներ։

Բայց ամեն ոք նեցուկ ու սատար պետք է ունենա։ Պարտիայի անդամ Գառնիկ Մարտիրոսյանը վերջին երեք-չորս տարում, հավանաբար, աջակցություն չի ստացել սկզբնական պարտկազմակերպության և շրջանային ղեկավար կազմակերպությունների կողմից։ Եվ նա դարձել է ինքնամփոփ, սահմանափակ, մոլի եսասեր, սկսել է բողոքել, կարծելով, որ ինքն արժանի է ամենայն ուշադրության ու աջակցության, ինքն իրավունք ունի պահանջել և չտալ, ստանալ և չհատուցել։

Երբ մենք հրաժեշտ էինք տալիս, Գառնիկն ասաց.

— Եթե ասածս չանեն, ես նորից կգրեմ։

Այնժամ իմ հայացքի առջև կինոժապավենի պես անցան էլի նման դեմքեր, նման մարդիկ, որոնք, մոլորվելով կյանքի քառուղիներում, փորձում են ապրել հաշտ, ապրել գրագրություններով, սպառնալիքներով, սեփական արժանիքներն ընդհանուրից գերագնահատելու ապարդյուն ճիգերով։

Եվ ահա գրվեց այս փոքրիկ պատմությունը խեղված մի կենսագրության։ Կատարվեց Գառնիկի կամքը։ Ինչ կա որ, թերևս օգնե՞նք նրան։ Թերև՛ս։ Հավատա՛նք։ Սպասե՛նք։

Երկու խոսք էլ խղճի մասին։ Հարկ չկա բառարանները նայելու, այս բառի իմաստը հասկանալու համար։ Այն հասկանալի է առանց բացատրության իսկ։ Խիղճը մարդու էությունն է, նրա վերաբերմունքը մարդկանց և աշխարհի նկատմամբ, խիղճը մարդու քաղաքացիական ու հասարակական պարտքն է, և ով այն լավ է կատարում, նրա ճակատը զարդարված է խղճի լուսապսակով։

Դու ուզում ես վաճառել քո խիղճը։ Այն ոչ մեկին պետք չէ։ Այդպիսի խղճով մարդամեջ դուրս գալն իսկ ամոթ է։ Այն պահիր քեզ, եթե արդեն դեն չես նետել որպես անպետք իր։ Եվ, համոզված եղիր, որ ոչ մի անցորդ այն չի վերցնի։ Սակայն սթափվի՛ր այդ թմրությունից և լա՛վ դիտիր շրջապատդ։ Հիշի՛ր, թե ինչպիսին էիր մի ժամանակ, տե՛ս թե ինչպիսին են քեզ շրջապատող մարդիկ, և ինչ ես դարձել դու։ Վերադարձի՛ր շարք և վստահ եղիր, որ այսքանից հետո էլ քեզ կընդունեն գրկաբաց, հանուն քո ընտանիքի բարօրության և քո խղճի փրկության։

Ռ. ԱՐՍԱՅԱՆ

## ԴԱՍԱԽՈՍԻ ԲԼՈԿՆՈՏՈՒՄ

Սովետական Միության պետական բյուջեի եկամուտները 1965 թվականին կազմում են 99,7 մլդ, ծախսերը՝ 99,5 մլդ ռուբլի: 1965 թվականին, 1964 թվականի համեմատությամբ, ՍՍՌՄ ազգային եկամուտը աճելու է ավելի քան 14 [illegible]լով: 1965 թվականին մեր երկրի բնակչության ռեալ եկամուտները կաճեն 7,[illegible] 1964 թվականի 3,9 տոկոսի դիմաց:

Արդյունաբերության համախառն արտադրանքը կավելանա 8,1 տոկոսով: Մեր երկրում էլեկտրաէներգիայի արտադրությունը 1965 թվականին պլանավորված է 510 միլիարդ կիլովատ-ժամի չափով: Որպեսզի էլեկտրաէներգիայի արտադրությունը հասնի այդ մակարդակին, անհրաժեշտ է գործարկել նոր կարողություններ՝ ավելի քան 11 միլիոն կիլովատ չափի:

Նախատեսված է 1965 թվականին ՍՍՌՄ-ում արտադրել ոչ պակաս 90 միլիոն տոննա պողպատ, մոտ 70 միլիոն տոննա գլանվածք, նավթի հանույթը հասցնել 242 միլիոն տոննայի, իսկ գազինը՝ մինչև 128 միլիարդ խորանարդ մետրի: Նավթի և գազի հանույթի ավելացումը երկրի վառելիքի բալանսում այս խնայողաբեր վառելիքների տեսակարար կշիռը կհասցնի մինչև 53 տոկոսի:

Քիմիական արդյունաբերության արտադրանքը կաճի 15 տոկոսով: 1965 թվականին ՍՍՌՄ-ում կարտադրվեն 33,5 միլիոն տոննա հանքային պարարտանյութեր: Քիմիական թելերի արտադրությունը կհասնի մինչև 416 հազար տոննայի, որը հնարավորություն կտա ավելացնելու էժան ու բարձրորակ գործվածքի արտադրությունը:

Բոլոր տեսակի գործվածքների արտադրանքը 1965 թվականին պետք է հասնի 9220 միլիոն մետրի, տրիկոտաժե գործվածքինը՝ 922 միլիոն հատի, կոշկեղենինը՝ 477 միլիոն զույգի:

1965 թվականին մեր երկրում շաքարի արտադրությունը կաճի 8 միլիոն 610 հազար տոննայով կամ 25 տոկոսով, պետական հումքից բուսական յուղի արտադրությունը՝ 2 միլիոն 147 հազար տոննայով կամ 17 տոկոսով:

### ՈՒՂՂՈՒՄ

*Մեր ամսագրի № 2-ում տպագրված ընկ. Ս. Հարությունյանի հոդվածի վերնագիրը (էջ 93) պետք է լինի* «ՈՐՆ Է ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՔԱՂԱՔԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԱՌԱՐԿԱՆ»:


ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԱՂԱՅԱՆ Ծ. Պ., ԱՆԱՆԻԿՅԱՆ Բ. Հ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ. Ե., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՀԱԿՈԲՅԱՆ Հ. Մ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. Հ.:

Թողարկիչ՝ Ա. ՅԱՎՐՅԱՆ
Սրբագրիչ՝ Լ. ԽՈՒԴՈՅԱՆ

Խմբագրության հասցեն՝ Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք, հեռ. 2—02—24

Адрес редакции: Ереван, здание ЦК КП Армении, тел. 2-02-24

ՎՖ 05211 Պատվեր 808 Տիրաժ 9400 Գինը 25 կոպ.

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 29/III 1965 թ.:

*Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի Պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան, Թումանյան փ. № 51:*




## Ձ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

### ԼՈՒՅՍ ԵՆ ՏԵՍԵԼ ԵՎ ՎԱՃԱՌՎՈՒՄ ԵՆ

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Գաղափարական աշխատանքի մասին *(ժողովածու): Մ., Քաղհրատ, 1964, 435 էջ:*

*Յոթ բաժիններից բաղկացած այս ժողովածուն պարունակում է մամուլին, կինոյին, ռադիոյին, աշխատավորության կոմունիստական դաստիարակությանը և գաղափարական աշխատանքի այլ բնագավառներին նվիրված Լենինի ճառերը, հոդվածները, նամակները և քաղվածքներ տարբեր աշխատություններից:*

Պարտիան քայլում է դեպի ռևոլյուցիան: *Պատմվածքներ Վ. Ի. Լենինի զինակիցների մասին: Մ., Պետքաղհրատ: 1964, 559 էջ:*

*Լենինյաններին նվիրված հինգհատորյակի երկրորդ հատորն է այս, որի միջոցով կարելի է ծանոթանալ Վ. Ի. Լենինի զինակիցներ՝ Արտյոմի, Ալիլուևի, Բուբնովի, Գամառնիկի, Ջափարիձեի, Ձերժինսկու, Կիրովի, Կասիորի, Կույբիշևի Մանուիլսկու, Մյասնիկյանի, Օլմինսկու, Օրջոնիկիձեի, Պոստիշևի, Ռուձուտակի, Սեմաշկոյի, Սկվորցով-Ստեպանովի, Սպանդարյանի, Դ. Մ. Ն. Ուլյանովների, Ֆրունզեի և այլոց կյանքին ու ռևոլյուցիոն գործունեությանը:*

ՍԱՐԳՍՅԱՆ Ե.— Թուրքիան և նրա նվաճողական քաղաքականությունը Անդրկովկասում 1914—1918: *Ե., Հայաստան հրատ. 1964, 539 էջ:*

*Այս ծավալուն աշխատության մեջ արխիվային փաստաթղթերի, արտասահմանյան և, հատկապես, թուրքական աղբյուրների հիման վրա լուսաբանվում է թուրքական կայսրության ներքին դրությունը առաջին համաշխարհային պատերազմի նախօրեին. ցույց է տրվում պանիսլամիզմի ու պանթուրքիզմի գաղափարախոսության ագրեսիվ բնույթը, Թուրքիայի՝ պատերազմի մեջ մտնելու դրդապատճառները, հայ ժողովրդի բնաջնջման՝ երիտթուրքերի քաղաքականությունը և նրանց նվաճողական քաղաքականությունը Անդրկովկասում, 1918 թվականին:*

ՀԱՅ-ՌՈՒՍԱԿԱՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ XVIII ԴԱՐԻ ԱՌԱՋԻՆ ԵՐԵՍՆԱՄՅԱԿՈՒՄ: *Փաստաթղթերի ժողովածու, հատոր երկրորդ, մասն առաջին: Ե., ԳԱ հրատ., 1965, 396:*

*Ժողովածուն ընդգրկում է Իսրայել Օրու գործունեությունը Հայաստանը Թուրքիայի և Պարսկաստանի լծից ազատագրելու ուղղությամբ: Գրքում բերված արխիվային փաստաթղթերը բաժանված են երկու հիմնական բաժինների. Հայերի՝ Ռուսաստանի հետ ունեցած տնտեսական կապերի զարգացումը XVIII դարի առաջին կեսում: Հայերի քաղաքական հարաբերությունները Ռուսաստանի հետ պարսկական արշավանքների նախապատրաստման շրջանում:*

ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ Մ. Ե., ՍՈՒԽԱԴԵՎ Վ. Վ.— Միջազգային հարաբերությունների նոր տիպ: *Մ.,* «Мысль» *հրատ. 1964, 280 էջ:*

*Հեղինակները շարադրել են միջազգային սոցիալիստական հարաբերությունների ծագման, զարգացման պատմությունը, լուսաբանել հարաբերությունների տեսական հիմքերը, տնտեսական կարևորագույն օրինաչափությունները, բացահայտել են սոցիալիստական երկրների համագործակցության ձևերը, միջազգային հարաբերությունների իրագործման նոր մեթոդներն ու ուղիները:*

ՎԱՀԱՆ ՏԵՐՅԱՆԸ ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑՆԵՐԻ ՀՈՒՇԵՐՈՒՄ: *Ե., Պետհրատ: 1964, 584 էջ:*

*Վ. Պարտիզունու կազմած այս գրքում զետեղված են Ավ. Իսահակյանի, Ե. Չարենցի, Ն. Մառի, Ա. Տ. Գրիգորյանի, Ջավախեցու, Ա. Կարինյանի, Հ. Սուրխաթյանի, Ա. Հովհաննիսյանի, Հ. Կոսիկյանի և այլոց հուշերը, որոնցում պատկերված են Վ. Տերյանի կյանքը, գրական-հասարակական գործունեությունը, Տերյանը որպես պետական գործիչ:*

ԳԻՆԸ 25 Կ. 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՀԱՐՅՈՒՐԱԶՔԱՆԻ ԴԻՍՊԵՏՉԵՐԸ

Խիստ բարդ է նավթահանքերի դիսպետչերությունը։ Օրվա ամեն ժամին դիսպետչերը պետք է ամբողջական պատկերացում ունենա յուրաքանչյուր հորանցքի վիճակի մասին։ Սովորաբար այդպիսի տեղեկությունները տալիս են օպերատորները։ Մի հերթափոխում նրանք կտրում են տասնյակ կիլոմետրեր՝ ստուգելով հորանցքերը, բայց և այնպես չեն կարող անընդհատ իրենց տեսադաշտում պահել հանքի յուրաքանչյուր տեղամասը։ Վերջերս Կիրգիզիայի Ջանգիր-Տաշ նավթահանքի դիսպետչերանոցում մոնտաժել են կառավարման էլեկտրոնային պուլտ՝ արդյունաբերական հեռուստատեսությամբ։ Ավտոմատների հատուկ սիստեմն իր «տեսադաշտում» է պահում բոլոր նավթահանքերը՝ ցույց տալով տեխնոլոգիական պրոցեսների ընթացքը։ Դրա շնորհիվ հերթապահ ինժեները կարող է հեռվից ղեկավարել հանքի աշխատանքը։

## ԷԼԵԿՏՐԱԵՌՔԸ ՕԳՆՈՒՄ Է ԿԱՐԵԼՈՒ...

Քիմիական նոր նյութերը պահանջում են մշակման նոր մեթոդներ։ Օրինակ, կապրոնը և լավսանը անհրաժեշտ է հատուկ ձևով մշակել և կարել միայն սինթետիկ թելով։ Իսկ ինչպե՞ս կարել պոլիէթիլենային և պոլիվինիլքլորիդային թաղանթներից պատրաստված մասսայական լայն պահանջարկ ունեցող վերարկուները, վերնաշապիկները և այլն։ Ահա այստեղ օգնության է գալիս էլեկտրաեռքային մեքենան։ Արտաքուստ այն նման է կարի մեքենային, բայց ասեղի փոխարեն ունի հատուկ սարքավորում, որին միացված է էլեկտրական հոսանքը։ Անցնելով այդ սարքավորման տակով, գործվածքը եռքակցվում է խիստ ամուր։

Մեքենան կարող է մեկ վայրկյանում եռքակցել 10 մետր տարբեր հաստության թաղանթ։

Այն ստեղծել են էլեկտրաեռքային սարքավորումների համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի կոնստրուկտորները։

## ԿՈԿՏԵՅԼ... ԹԹՎԱԾՆՈՎ

Երբևիցե թթվածին խմե՞լ եք... Այդպիսի արտասովոր խմիչքով (մրգի ջուր՝ թթվածնով) իր այցելուներին կարող է հյուրասիրել կիևցի գիտնական, ՍՍՌՄ բժշկական գիտությունների ակադեմիայի իսկական անդամ Ն. Սիրոտինինը։ Նրա կարծիքով այն թթվածնի քաղցի դեմ մղվող պայքարի հուսալի մեթոդներից մեկն է։ Մեկ տարի շարունակաբար նա ստուգել է այդ «կոկտեյլի» (տոմատի սոկը՝ թթվածնով) ազդեցությունը և գտնում է, որ խմիչքի մակերեսին առաջացած «թթվածնային փրփուրը» շատ օգտակար է նույնիսկ առողջ մարդկանց, օրինակ՝ տաք ցեխերում աշխատողների, լեռնագործների համար։

## ՇՈԳԻ ԴԵՄ

Դրսում շոգ է՝ 32° ջերմություն, իսկ սենյակում 26° է, չնչին էլ՝ դյուրին։ Այդ նրանից է, որ սենյակում տեղադրված է Խարկովի ժողտնտխորհի կոնդիցիոներների գործարանում պատրաստված աերոկլիմատը։ Ժամում այն «փչում է» 3 հազար խորանարդ մետր օդ, ծախսելով մոտ 200 վատտ էլեկտրաէներգիա։ Այն շուտով կօգտագործվի հանգստյան տներում, հիվանդանոցներում, պոլիկլինիկաներում, ճաշարաններում, սրճարաններում, մանկական և այլ հիմնարկություններում։